# ՊԱՏԿԵՐ

# ԱՇԽԱՐՀԻԿ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ

## ԱՐԵՒՄՏԵԱՆ ՀԱՅՈՑ

## Ի ՎԵՐՋ ԿՈՅՍ ԺԹ. ԴԱՐՈՒ



ԸՆԴ ԽՆԱՄՈՎ

Յ. ԳՈՒՐԳԵՆԻ




Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐ. ԵՒ ՎԻՄԱԳՐ. Գ. ՊԱՂՏԱՏԼԵԱՆ

Սուլթան Համամ փողոց, թիւ 14

1892

ԱՌ

ՆՈՐԻՆ ՎՍԵՄՈՒԹԻՒՆ

# ԲԱՐՍԵՂ ԷՖ. ՀԱԼԱՃԵԱՆ

ՆՈՒԷՐ

ՄԵԾԱՐԱՆԱՑ

ԵՒ

ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԵԱՆ

Ի՛ ՅԻՇԱՏԱԿ

ՀՕՐ ԻՒՐՈՅ ԵՒ ՄՕՐ

ՊԵՏՐՈՍԻ ԵՒ ԵՂԻՍԱԲԵԹԻ

ՀԱԼԱՃԵԱՆ



# ԱԶԴ

Այս հաւաքածոյն, որ նպատակ ունի առաջի առնել Հայոց աշխարհիկ լեզուին արեւմտեան գաւառաբարբառն՝ ամփոփ եւ այն հանգամանաց մէջ զոր ստացած է ի վերջ կոյս դարու, կը բովանդակէ գրական եւ գիտնական եւ այլ պէս պէս նիւթոց վրայ յօրինեալ ընտիր հատուածներ, յատկապէս պատրաստուած ի ձեռն ժամանակակից ծանօթ գրչաց զէթ մեծ մասին, որ յօժարամիտ պատասխանելով մեր խնդրանաց՝ յանձնած են մեզ մի կամ երկու հատուած խնամեալ ոճով եւ բարեհիկ յօրինուածով: Իւրաքանչիւր գրիչ ըստ կամս ընտրած է նիւթ, եւ հետեւած է ոճոյն եւ լեզուական սկզբանց յորս յարած է ըստ իւր ընտրութեան եւ ճաշակին: Գրչաց պէսպիսութեամբ եւ նիւթոց զանազանութեամբ այս հաւաքածոյն ուրեմն եղած է հանդիսական *Պատկեր* տոհմային գրականութեան կամ աշխարհիկ մատենագրութեան արդեաց, եւ այժմու աշխարհաբար լեզուն, զերթէ իւր ամէն գունով եւ երանգաւ, արձակ եւ ոտանաւոր, պատկերացած է աստ իբրեւ ի հայելւոջ:

Այլ մեր դիտաւորութիւնն չէր լոկ ի հանդէս ածել պարզ հաւաքածոյ մը զանազան գրուածոց , որպէս սովոր եղած է ցարդ առ մեզ · — թէ եւ լինէր նշանակելի առաւելութեամբք , այն է՝ գրուածոց նորութեամբ եւ ամբողջական հրատարակութեամբ , առանց բնաւ կամս քաղ հանելու հեղինակաց ծանուցեալ գործերէն , եւ այլն · — մեր առաջադրութիւնն եղած էր , հին հայերէն լեզուին մատենագրութեան համառօտ պատմութեամբն հանդերձ , հարեւանցի տեսութիւն մ'ընել նախ աշխարհիկ բարբառոյ ընթացից վրայ՝ համեմատելով իբր դար մը յառաջ գործածական գրաւոր աշխարհաբարն ընդ այժմու գրաւորին , եւ ապա պարզութեամբ առաջի դնել ուղղութիւնն զոր անհրաժեշտ կը համարիմք արեւելեան եւ արեւմտեան՝ երկու գլխաւոր գաւառաբարբառոց միութեան գէ՛թ ի մատենագրական լեզուի , ի մի բան՝ ցոյց տալ թէ որո՛վ օրինակաւ հնար է մեզ հասնել այդ ի վաղուց բաղձացեալ վախճանին , *լեզուի միութեան եւ կանոնաւորութեան* , այլովքն հանդերձ: Ըստ այսմ՝ մեր խորհրդածութիւնք, դիտողութիւնք , նաեւ ինչ ինչ առաջարկութիւնք , պարզուած են ազգային բանասիրաց եւ գրագիտաց առջեւ առանձինն Յաւելուածով որ ի վերջ հաւաքածոյիս :

Հատուածոց զետեղման համար կարգ սահմանած եմք իւրաքանչիւրին առ մեզ յանձնման թուականն ,

առանց զայնս դատաւորելու ըստ նիւթոց կամ ըստ այլ նկատմանց, որ չէր ի դէպ մեր նպատակին: Դարձեալ, իբրեւ նորութիւն, մէն մի հատուածոյ ներքեւ դրած եմք յօրինչին ձեռագիր ստորագրութեան ճիշդ օրինակն, որ կարէ լինել ապաքէն հետաքրքրական ինչ յաչս ընթերցողաց:

Խորին շնորհակալութիւն կը յայտնեմք մեծարոյ գրչաց, որ հանեցան աշխատութիւն յանձն առնուլ եւ դիւրացնել մեր այս բազմաթախանձ հրատարակութիւնն, յորմէ մանաւանդ կարեն օգտիլ մեծապէս ազգային նոր սերունդք զարդիս եւ առ յապայս:

Յ. Գ.



# ՊԱՏԿԵՐ

## ԱՇԽԱՐՀԻԿ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ



### ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ

ԻՆՉՊԷՍ *գրուածոյ ամէն ազգ, նոյնպէս թարգմանութիւնն, իբրեւ արուեստ, ունի զիւր առանձին օրէնս, յորմէ եթէ խոտորի, լինի ոչ միայն անօգուտ, այլ եւ զզուելի, ինչպէս կը գտնենք մեր մատենագրութեան միջին դարերուն թարգմանութիւններէն շատը։ Թարգմանութեան էութենէն է լինել հաւատարիմ ոչ միայն լեզուին յորմէ կը թարգմանուի, այլ եւ այնմ յոր կը թարգմանուի։ Այս հաւատարմութիւնն կամ ճշդութիւնն հարկաւ կը պահանջէ լի եւ կատարեալ հմտութիւն քերականութեան, բառից եւ դարձուածոց երկու լեզուաց եւս․ հմտութիւնն այնպէս կապեալ է հաւատարմութեան հետ, որ ուր կը տեսնենք այս վերջինը՝ կրնանք հետեւցունել առաջինը։*

Ցրնթացս ութհարիւրամեայ ժամանակին մեր հին դպրութեան, այն է ի Ե. դարէ մինչեւ յԺԳ. դար, երեք ժամանակներ եղած են յորս Հայք մտադիր եղան թարգմանութեան մասնաւորապէս յունարէնէ ի հայ. այն է՝ թարգմանիչք մեր ի Ե. դարու, Սիւնեցիք յԷ. եւ յԸ. դարու, եւ Վկայասէրն ի ԺԱ. ին։ Թողլով զՍիւնեցիս որ թէպէտ քաջ յունարէնագէտք, էին բիրտ յունաբան, եւ Վկայասիրի դարուն թարգմանութիւններն որ արդար եւ չեն խոտելի ըստ հայերէնին եւս, սակայն հեռի են ի հանգամանաց թարգմանութեան Ա. կիսոյ Ե. դարուն, գանք այս վերջնոյն։

Ուր զհայերէն դպրութենէ են բանք, առանց երկբայութեան անհամեմատ առաւելութեամբ ի վեր են մեր թարգմանչաց մատենագրական երկոց մնացորդք քան յաջորդ դարերու որեւիցէ ծնունդ, թէ՛ յօրինուած թէ՛ թարգմանութիւն։ Ցիրաւի արժանի են Սահակ եւ Մեսրոպ իւրեանց գործակից աշակերտօք ԹԱՐԳՄԱՆԻՉ անուան զոր վճռած է տալ նոցա ազգային աւանդութիւնն։ Տեսնելու համար հաւաստեաւ եւ գտակաւ զարուեստ թարգմանչութեան նոցա ըստ կրկին գլխոց զոր վերագոյն յիշեցաք, հաւատարմութիւն առ բնագիր լեզուն եւ հաւատարմութիւն առ հայրենին, բաւական է համեմատել ընդ յոյն բնագրին զառաջին գլուխն Ղուկասու աւետարանին, եւ զսկիզբն մեկնութեանն Մատթէի յՈսկեբերանէ։ Կը թողունք զթարգմանութիւնս մեկնութեանց Պաւղոսի, Եսայեայ եւ Քրոնիկոնին որ են հրաշակերտք արուեստի թարգմանութեան. կը թողունք եւ զթարգմանութիւնս

Վեցօրէից Բարսղի եւ երեցունց Մակաբայեցւոց որ, իբրեւ ազատ թարգմանութիւնք, հեղինակութիւն են մանաւանդ քան թարգմանութիւն ։

Ի համեմատել մեր այսպէս որեւիցէ թարգմանութիւն Ե. դարու ընդ բնագրին, անհնար է չզարմանալ ընդ հմտութիւն թարգմանչին յունարէնի, եւ ընդ առաւելութիւն հայերէնին ճշդութեամբն համերձ անհնարին բեղմնաւոր, մինչեւ կարել հատուցանել բնագրին ընդ միոյ երկուս կամ երիս ։

Որպէս զի չկարծուէր թէ առաւելութիւն թարգմանութեան նոցա յունարէնին է եւ ոչ թարգմանչաց հանճարոյն եւ քաջութեան, իբրեւ հսկայ եղանէ յասպարէզ Եզնիկ իւր ինքնագիր գրուածովն, հանգոյն եւ հաւասար ոչ յոյն հարց բանիբուններուն միայն, այլ բուն հելլէն եւ լատին մատենագրաց, իբրեւ արդարեւ հրաշակերտ մատենագրութեան եւ ոճոյ ։ Եզնիկ կը գրէ իբրեւ միւս եւս Բարսեղ եւ Ոսկեբերան, իբրեւ Դիմոսթենէս եւ Կիկերոն ։ Այսպէս կը պարծի մեր մատենագրութիւնն առընթեր իւր երկու արեւմտեան դրացի մատենագրութեանց ։ Բայց մեր նիւթն հոս Ե. դարու թարգմանութիւնն է ։

Ե. դարէն առ մեզ հասած թարգմանութիւնք, իբրեւ արդարեւ գործ թարգմանչաց, են 1. Հին եւ Նոր կտակարանք, լեզուին կողմանէ հարազատ եւ մաքուր հայերէն ։ Գիրք Հին կտակարանին կը բաժնուին ըստ Հրէից՝ երկու. Ա. Օրէնք, այսինքն՝ Հնգամատեանն որ են գիրք Մովսիսի, եւ կը բովանդակեն գլխաւորապէս Հին կտակարանին օրէնսդրութիւնը, եւ Բ. Մարգարէք, Մնացեալ մատեանք ին կտակարանին, այսպէս կոչուած, իբրեւ գործք

աստուածազդեցիկ (ներշնչեալ) մարդոց, թէպէտ առաջինքն եւս համարուած են նոյնչափ աստուածազդեցիկ։ Այսպէս կ'իմանար Քրիստոս երբ կ'ըսէ. «Օրէնք եւ Մարգարէք մինչեւ ցՅովհաննէս.» եւ այլուր. «Ոչ անցցէ (յովտ մի) յՕրինաց եւ ի Մարգարէից, մինչեւ ամենայն եղիցի։»

Հին Կտակարանն, իբրեւ գրագիտական գործ, կրնայ բաժնուիլ այլազդ եւս, այսինքն՝ 1. Պատմական, 2. Արուեստագիտական, 3. Օրէնսդրական, 4. Խրատական կամ վարդապետական, 5. Բանաստեղծական կամ վիպասանական։

Պատմական են գիրք Ծննդոց, Ելից կէսը, Յեսու, Դատաւորք, Չորեքին գիրք Թագաւորաց, Երկու Մնացորդք, Եսթեր, գիրք Նէեմեայ եւ Եզրայ։

Արուեստագիտական են, այսինքն արուեստագիտական յօրինուածութեանց վրայ կը խօսին, Ելից, Ղեւտացւոց, Թուոց այն գլուխներն յորս կը նկարագրուին շինուած եւ զարդք վկայութեան խորանին, տապանակին, քահանայից զգեստներուն, եւ ուրիշ արուեստական գործուածոց։ Արուեստագիտական են նաեւ Գ. Թագաւորութեան Զ.—Ժ. գլուխներն, եւ Բ. Մնացորդաց Բ.—Ե. գլուխներն, յորս կը նկարագրուին Սողոմոնի տաճարին եւ տան շինութիւնք եւ զարդք։ Օրէնսդրական են Ելից, Ղեւտացւոց, Թուոց, Երկրորդման օրինաց այն գլուխներն յորս կ'աւանդուին Մովսիսական օրինաց այլեւայլ պատուէրներն։ Խրատական կամ վարդապետական են Հին Կտակարանին շատ մասերն, Առակաց եւ Ժողովողի գիրքը մանաւորապէս։ Բանաստեղծական կամ վիպասանական են, 1. Յոբ որ

է ազգ մինչ դիւցազնական ողբերգութեան լի փիլիսոփայական մտածութիւններով. 2. Սաղմոսք, որ են քնարական երգեր, ծնունդք հոյակապ կրօնական ազգմանց. 3. Մարգարէութիւնք որ գուշակաւոր պատմութիւններ են սքանչելի գոյներով նկարագրուած։ Այս գրուածոց մէջ առաջին տեղին ունի Եզեկիելի գիրքը։ Գեղեցիկ հովուերգութեան օրինակ են Երգ երգոցն եւ Հռութայ փոքր գիրքը։

Նոր Կտակարանը կրնայ բաժնուիլ, 1. Պատմական, 2. Խրատական կամ Վարդապետական եւ 3. Նամակներ։ Պատմական մասերն են, Ա. Չորս Աւետարանք եւ Գործք առաքելոց որ վայելուչ պատմագրութեան գեղեցիկ օրինակ է։

Գրեթէ ամբողջ Նոր կտակարանն ունի խրատ կամ վարդապետութիւն, մանաւանդ Աւետարանք եւ Թուղթք Պաւղոսի։

Ընտիր նամակներ են Կաթողիկէ թուղթք Յակոբայ, Պետրոսի, Յովհաննու եւ Յուդայի. բայց քան զայլս առաւել են իբրեւ օրինակ նամակի՝ Թուղթք Պաւղոսի առաքելոյն։

Ոճով եւ նիւթով այսպէս զանազանեալ մեծ մատենագրութեան մէջ, որպիսի են Հին եւ Նոր կտակարանք, ապաքէն կը պահանջուէր ընտիր եւ հոյակապ հայերէն։ Բարեբախտութեամբ Հին եւ Նոր կտակարանաց թարգմանութիւնն եղաւ այնպիսի ժամանակ, երբ Հայերէն լեզուն կը գտնուէր յիւր ետին պայծառութեան, եւ թարգմանիչք մեր Սահակ եւ Մեսրոպ իւրեանց աշակերտօք կը փայլեցունէին հայ լեզուին դպրութիւնը։

Սուրբ գրոց հայերէնին համար եւս կրնամք ըսել

դշխոյ հայերէնին, ինչպէս Թարգմանութեան կողմանէ կոչած են Եւրոպացի գիտունք մեր Թարգմանութիւնը դշխոյ Թարգմանութեանց։ Կրնայ ըսուիլ իրաւամբ թէ Սուրբ գիրք ի հայերէն Թարգմանութեան գտած է իրեն վայելուչ լեզուն։ Եւրոպացի գիտունք չլինելով հմուտ մեր լեզուին պատմութեան որ իւր բարձրութեան եւ անկման դարերն ունի, մեր Թարգմանութեան առաւելութեան պատճառ կարծեցին Թերեւս Թարգմանութեան ճշդութիւնը. սակայն մեք գիտեմք թէ այն առաւելութեան բուն պատճառ լեզուին բարձրութիւնը եւ գեղեցկութիւնն է։ Այսմ ապացոյց է Յայտնութեան գրոց Թարգմանութիւնը, որ լեզուին անկածութեան պատճառաւ առ այլովք մասամբք Նոր կտակարանին է իբրեւ ապակեղէն ուլն (աղրչա) առ ադամանդիւք։ Եթէ Սաղմոսք կամ Պաւղոսի Թուղթերն էին Թարգմանուած հարիւր ամօք յետոյ, կարծեմ հազիւ արժանի պիտի համարուէին ընթերցման, զէթ ոսկեղէն դարուն լեզուին հմուտներուն։ Պետրոսի Բ. եւ Յուդայի Թուղթերն հասուցած է հայերէն Թարգմանութիւնն ի հոյակապ բարձրութիւն զոր չունի բնագիրն։

Ի Թարգմանութեան Հին եւ Նոր կտակարանաց հայերէն լեզուն, առանց կորուսանելոյ զիւր հարազատութիւն եւ զհոյակապ բարձրութիւն, կը տեսնուի հասած կատարեալ փիլիսոփայական պարզութեան։ Այս պարզութեամբ հայերէնը կը տարբերի ոչ միայն հին արեւմտեան լեզուաց, ինչպէս, յունին եւ լատինին, այլ եւ բնիկ հին հայերէնի ընտանի կարգէն։

Ինչպէս լեզուն ընդհանրապէս, նոյնպէս հայերէնն չէր կարող ի սկզբան միտ դնել քերականութեան եւ ոճոյ. բաւական կը համարէր յայտնել վարկպարագի խորհուրդ եւ ազդումն։ Քերականութիւնն յետոյ է քան զլեզուն, եւ ոչ լեզուն քան զքերականութիւն. ինչպէս ամէն բնական ծնունդ՝ նոյնպէս լեզուն տակաւ կը հասնի յարբունս։ Մեր լեզուին տխեղծութեան ժամանակէն չունինք եւ չէինք կըրնար ունենալ օրինակներ։ Միջին զարգացման միայն օրինակներ, առնլով իւր ժամանակին ժողովրդական լեզուէն, կուտայ մեզ Բուզանդայ մատեանն ուրեք ուրեք, երբ կուտայ խօսել ոմանց ժողովրդեան ընտանի լեզուին կիրթ ձեւով։ Այսպէս գրեթէ առանց քերականութեան բնական ընտանի լեզուի ձեւ ունի Բուզանդայ մատեանն։

Այն պարզ ընտանի լեզուն, գրեթէ առանց քերականութեան եւ ոճոյ, կը գտնենք փոխուած, կամ մանաւանդ կանոնաւորուած, բերուած ի յարդ եւ ի զարդ յերգս վիպասանաց, եւ Ե. դարու մնացորդներէն առ Եզնկայ եւ ի թարգմանութիւնս Հարց, մանաւանդ ի թարգմանութիւնս գործոց Ոսկեբերանի, յանուանէ՝ ի մեկնութիւնս Մատթէի, Պաւղոսի թուղթերուն եւ Եսայեայ։

Բնիկ պարզ ընտանի հայերէնին վերջին կարեւոր փոփոխութիւնն եղած է ի թարգմանութեան Հին եւ Նոր կտակարանաց, փոփոխութիւն՝ որ կ'ընէ զհայերէնն ոչ միայն դիւրին եւ գիտնական, այլ եւ կը մերձեցունէ զնա արդի Եւրոպական լեզուաց ըստ պարզութեան եւ ըստ կարգաւորութեան. աւելի պարզ խօսելով՝ այս նոր փոփոխութեամբ հայերէնն

տուած է քերականական կամ վերլուծական կարգ։

Ինչպէս կը տեսնենք՝ համեմատելով Հին եւ Նոր կտակարանաց հայերէնն հին ընտանի բնիկ հայերէնին եւ վիպասանաց հայերէնին հետ, այս փոփոխութիւնը քայքայած չէ ամենեւին հայերէնը. քանզի չ'եղծանէր նորա ոչ քերականութիւնը եւ ոչ բառերն, ինչպէս ըրին յետոյ յունաբանութիւնն եւ լատինաբանութիւնը։

Քերականական կամ վերլուծական կարգն որ արդի Եւրոպական լեզուաց այնպէս յատուկ է՝ մուծուած կ'երեւի հայերէնի մէջ Ասորերէնի ազդեցութեամբ։ Արդարեւ Սեմական լեզուաց մէջ որոց գլխաւորն է Եբրայերէնն, կը գտնենք մասնաւորապէս տիրող այս կարգը։ Շատ հաւանական է թէ մեր նախնիք յատկապէս ի շնորհս Ս. գրոց տուած են կատարեալ վերլուծական կարգ հայերէնի որ ի բնէ ունէր յարմարութիւն այն կարգն ընդունելու։ Կրօնական գրուածներու մէջ մանաւանդ, ինչպէս վարդապետութիւն, խրատ, աղօթք, կ'ընտրեն նախնիք մեր այս կարգը։ Առ Բուզանդայ եւ Ագաթանգեղոսի, որոց առաջնոյն լեզուն է առ հասարակ հին ընտանի ժողովրդական, եւ երկրորդին՝ բարձր ատենական, կը գտնենք գրեթէ միշտ վերլուծական կարգ, ուր նիւթը խրատական է կամ աղօթք։

Յետ թարգմանութեան Հին եւ Նոր կտակարանաց պատուականագոյն թարգմանութիւնն է թարգմանութիւն մեկնութեանց Ոսկեբերանի ի Մատթէոս, ի թուղթսն Պաւղոսի եւ յԵսայի, ինչպէս նաեւ Սեբերիանոս անուն Եմեսացւոց եպիսկոպոսի ուրումն ճառերուն թարգմանութիւնը։ Ամենեքին սոքա են

ընտիր օրինակ ուսման հայերէն հարազատ լեզուի ։

Մեր նախնիք իմաստութեամբ, թերեւս նաեւ խորհրդով, ընտրած են տալ ազգին հարազատ հայ լեզուաւ Ոսկեբերանի գրուածներուն ընտիրներէն ։ Թերեւս այնչափ օգուտ պիտի չմատուցանէին ազգին յոյն հեթանոս մատենագրաց, ինչպէս Հոմերոսի, Հերոդոտոսի, Քսենոփոնի, Դեմոսթենեսի թարգմանութիւնք, որչափ մատուցին յոյն հարց, Ոսկեբերանի, Բարսղի, Կիւրղի թարգմանութիւնք ։

Այս գրուածք են ընդհանրապէս մեկնութիւնք այլ եւ այլ մասանց Ս. գրոց, արդարեւ ինքնին ցամաք կրօնական, բայց Ոսկեբերանի ճարտար գրիչն այնպիսի նուրբ եւ վայելուչ դարձուածներով կ'ընծայեցունէ զնոսա, որ կ'առնուն կատարեալ հռետորական գրուածոյ բնութիւն եւ ձեւ. մանաւանդ որ Ոսկեբերան կը յաւելու իւր մեկնութեանց իւրաքանչիւր ճառին վերջը բարոյական յորդորակներ զանազան նիւթոց վրայ, կատարեալ հռետորական արուեստիւ ։ Ոսկեբերան է քաջ ատենախօս, ինչպէս հմուտ մեկնիչ ։ Մատթէի մեկնութեան հայերէնն ունի 53 ճառ, եւ իւրաքանչիւր ճառ առանձին յորդորակ այլ եւ այլ բարոյական եւ գործնական կենաց վերաբերեալ խրատներով. զոր օրինակ՝ թէ չէ պարտ հպարտանալ ի նախնիս, խեղկատակութեան եւ անպարկեշտ թատերաց դէմ, ընդդէմ ընչասիրութեան, ագահութեան, պագշոտութեան, խրատ ի համբերութիւն, յողորմածութիւն, եւ ուրիշ կարեւոր ·րաց վրայ, աքանչելի հայերէնիւ ։

Պաւղոսի թուղթերուն հայերէնն ունի աւելի քան իսուն ճառ լի հանճարեղ խրատներով, անհամեմատ

*ընտիր հայերէն։ Եսայեայ մեկնութիւնն ունի Եսայեայ սքանչելի մարգարէութեան վրայ ընտիր ճառեր, վսեմ ոճով, հայերէն լեզուին ընտրութեան մասին գրեթէ աննման։*

*Սեբերիանոսի գիրքն է հաւաքածոյ աստուածաբանական ճառերու, ընտիր ճարտարխօսութեամբ. ունի գեղեցիկ նկարագիրներ Ոսկեբերանի մեկնութեանց հայերէնով։ Հեղինակն է քաջ հռետոր։*

*Ոսկեբերանի եւ Սեբերիանոսի թարգմանութիւնք կը թուին հասուն եւ հանդարտ հասակի գործ, հաւանականապէս աշխատութիւն Մեծին Սահակայ։*

*Ունինք յՈսկեբերանէ նաեւ Յովհաննու աւետարանին վրայ մեկնութիւն, որոյ առաջին երեքտասան ճառք միայն են անստգիւտ գործ թարգմանչաց, թէեւ Մատթէի Պաւղոսի թուղթերուն եւ Եսայեայ մեկնութեան ոճէն տարբեր, ուստի յայտնապէս այլոյ գրչի գործ։ Այս երեքտասան ճառք կարծեցան յոմանց թարգմանեալ ասորերէնէ. այլ չէ այնպէս։*

*Եւսեբեայ քրոնիկոնն, այն է ժամանակագրութիւնն, ինչպէս յայտնի յանունանէն, է համառօտութիւն ընդհանուր ազգաց պատմութեան, ոչ Հրէից միայն, այլ եւ Եգիպտացւոց, Քաղդէացւոց, Յունաց եւ Հռոմայեցւոց։ Հեղինակը կը բերէ խիտ առ խիտ հատակոտորներ հին հեթանոս հեղինակներէ. ուստի եւ միւս հարց գրուածներուն պէս չէ լոկ կրօնական կամ վարդապետական։*

*Թէպէտ մեկնութիւն, բայց գրեթէ մեծաւ մասամբ գիտնական եւ պատմական են Բարսղի Վեցօրեայ արարչութեան եւ Կիւրղի Երուսաղեմացւոյ Կոչումն ընծայութեան կոչուած ճառք։ Բարսղի գր-*

րուածն է լի բնական պատմութեան վերաբերեալ հարուստ նկարագիրներով. իսկ Կիւրղինն է վարդապետական, եւ ունի գեղեցիկ օրինակներ բնական աշխարհէ առնուած ։

Ընտիր հայերէն թարգմանութիւններ են Կիւրղի Աղեքսանդրացւոյ մեկնութիւնք եւ ճառք Եւագրի, որոց վրայ մասնաւոր տեղեկութիւն չունինք, վասն զի սոքա դեռ ի լոյս ընծայուած չեն տպագրութեամբ։ Չէ պարտ մոռնալ նաեւ Եւսեբեայ Կեսարացւոյ եկեղեցական պատմութիւնն, ընտիր հայերէն, թէպէտ տարբեր յոճոյ քրոնիկոնին ։

Ե. դարու ընտիր թարգմանութեանց ցանկին մէջ են նաեւ Ասորի հարց ոմանց, ինչպէս Եփրեմայ եւ Զգօնի, մեկնութիւնք եւ ճառք, թէպէտ ոչ ամէն գործ որ Եփրեմայ անունը կը կրէ՝ արժանի ընթերցման նոցա որ կամին լինել մասնագէտք յուսման հարազատ հայերէնի ։

Ա. Ն. Գարագաշեան



## ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ ԱՇԽԱՐՀ



Թագուհին քաղաքաց մերկացած էր իւր փառքերէն, ու Անտոնինեանք ջանացեր էին յուշիկ զայն սփոփելու. Լիւժիկեցի կայսերք Արեւմուտքն Արեւելքէն կը բաժնէին Հռոմէական ծովածաւալ պետութիւնը յանդորրու պահելու համար։ Յորդանանէն մինչեւ Տիբերեայ դեղնորակ ջրերն նոր կրօնք մը կը քարոզուէր։ Նոր կրօնքին Աստուածը տարբեր էր Կապիտոլիոնի Արամազդէն եւ Նորա անունն Համայնադիրց մեհենին մէջ չէր տեսներ Հռոմէական ժողովուրդն, արմացած զարմացած։ Խանդավառ հոգի մը կայսրութեան գլխաւոր կեդրոններուն մէջ Մարդկութեան (Humanitatem) ԳԵՂԵՑԻԿ բառն կը հռչակէր ու մատնանիշ կընէր նոր կրօնքին եղբայրական վարդապետութիւնը, զոր Աստուածորդին, Խաչի վերայ բեւեռած, իւր լոյս արեամբ նուիրագործեր էր։ Արդէն, Հեթանոս աշխարհի մէջ, Տերինտիանոս, Կիկերոն ու Սենեկա բարձրագոյն հռչակած էին համաշխարհիկ գաղափարը, մարդկութիւն,

Քրիստոնէական եկեղեցին հիմնուած էր. ցիրուցան այլազան ժողովուրդք միեւնոյն դաւանանք ունէին։ Հոգեւորական դասն ընկերութեան բարձրագոյն պաշտօնը ստանձնած էր, այսինքն դաստիարակութիւնը։ Բարոյականի յաղթանակը նիւթականին վերայ հրատարակուած էր։

Այս էր Նոր կրօնքին մեծ վարդապետութիւնն։ Ու անարծաթն ու ընչեղ, մեծ ու փոքր, կոչուած էին մասնակցելու՝ անխտիր՝ Հաղորդութեան խորհրդին։ Ապականեալ աշխարհի ու բարբարոսութեան բիրտ բայց կենսախայտ ընկերութեան միջեւ իմաստուն միջնորդ մը հանդիսացած էր Եկեղեցին ու ծնած խանդաղատանօք՝ արդի ընկերութիւնը։ Հնութիւնն ու բարբարոսութիւն իրարու, հանդիպած էին ու բարբարիկք երկու դար անընդհատ Հռոմէական ամրակուռ պատնէշներուն հետ մարտնչելով՝ ուր ուրեմն կը խորտակեն այս ամրութիւնք ու կը հաստատուին կեսարաց երկիրներուն մէջ։ Ցաղթօղը պարտելոյն քաղաքակրթութեան գիրկը կը մտնէր։ Հռոմէական աշխարհի կը յաջորդէր Միջին դարը, ԱՋՆԻԻ չրջանն, լիր գեղարուեստից ու գեղեցիկ դպրութեանց ինքնատիպ հիանալի արտայայտութեամբք։

Գերմանք եւ սոցա ազգեցութեամբ Սլաւք ըստ մեծի մասին կը փոխեն իրենց բարոյքն ու լեզուն։ Գերմանաց բաժին կիյնան Հռոմէական արեւմտեան գեղազուարճ գաւառք, ուր դեռ կը կայծակէր հին հասարակուրդներու յիշատակը եւ Թերեւս հնար լինէր Գերման դաշնակցային կայսրութեան մը կազմուիլը։ Բայց Գերման ժողովուրդք հետզհետէ հեռացան։ Բոյր դաշտագետնին Լոմբարտացիք Իտալացի դարձան։ Պիրենեան ցամաքակղզւոյն Վիսիգոթք ու Սուէվք՝ Սպանիացի, ու Փրանկք կընդունին գաղիական լեզուն ու քաղաքակրթութիւնը։ Եւ հուսկ ապա մանր տէրութեանց կը բաժնուին բարբարիկք։ Անգլօ-Սաքսոնք ի Բրիտանիա 3 Գաղիական ու 4 Գերման տէրութիւն կը կազմեն, եւ անդ գերման լեզուն,

տիրութիւնք ու կրօնք կը պատուաստին Հռոմէականին վրայ։ Վանտալք ու Ոստրոգոթք Բելիսարեայ յաղթական սուրին կը հպատակին։

Հին աշխարհի հարաւակողմէն Արաբացիք՝ իրենց կրօնական ու քերթողական աւիւնով՝ կը սփռեն Հիմալայայ ստորոտէն մինչեւ յայնկոյս Պիրենեանց։ Կը փայլին Արաբական գիտութիւնն, Արաբական արուեստք ու Իսլամական քաղաքակրթութիւն եւ Աբու-Նազր-Պին-Ճերմառ-էլ-Ֆարապ, Աբուլ-Գասիմ-Մանսուր (Ֆէրտուզի, Դրախտային) Սա'ատի, Ֆէյիզի, Մուհամմէտ-Իպն-Զաքարիա, Աբու-Ալի-Հիւսէյին-Պին-Աբտ-Ալլահ-Իպն-Սինա (Ավիսինա), Իպն-Ռօշտ (Ավէրոյէս), Աբու-Ֆէրաճ, Իպն-Պանճա, Իպն-Սոֆայլ եւ այլք, որք մինչեւ ցարդ գիտական աշխարհի հիացումն կազդեն։ Ցոյն ու Լատին հանճարներու արտադրութիւնք յԱրաբերէն կը թարգմանուին։

Արեւելեան կայսրութիւնն իւր փառամոլ եւ ցոփ իշխաններով վատթարացեալ ընկերութեան պատկերն ի հանդէս կը բերէր։ Թէեւ կը պահէր հին քաղաքակրթութիւնն իւր ծոցոյն մէջ մինչեւ այն ժամանակ յորում արեւմուտք արթնցաւ եւ զանոնք հիւրընկալեց։

Բիրտ ու բարկասիրտ ասպետաց հոգւոյն մէջ կը ծնանէր այնպիսի արժանապատուութեան զգացում զոր չունէին այնչափ բուռն Ցոյնք եւ Հռոմայեցիք։ Սկանտինաւեան երկիրք եւ Պոհեմիա, Հունգարիա, Բոլոնիա կը տարամերժին այս ընկերութենէն. իսկ Ռուսաստան դեռ բարբարիկ էր եւ Սպանիա Արաբացւոց էմիրներուն հպատակ։

Պապութիւնն կ՚իշխէր համակրօն Եւրոպիոյ վերայ, կը վարէր ընկերութիւնն ու քաղաքական իշխանութիւնը կը դողացնէր։ Յարեւելս քրիստոնէութեան թշնամեաց դէմ կը մարտնչի ուխտ խաչակրութեամբ։ Եւ ի Բիւզանդիոն Լատինական կայսրութիւն մը ու ի Սիւրիա աւատական թագաւորներ ու բրինձներ (prince) կը կարգէ խաչակրութիւնը։ Արեւմուտք մշակեալ, ընչաւէտ ու ճարտարարուեստ Արեւելքի հետ հաղորդակցութեան կը մտնէ։ Եւ Վենետիկ ու Ճենովա Արեւելքի արտադրութիւնն Արեւմուտքին հետ կը փոխանակեն անդուլ գործունէութեամբ։ Պապութիւնն ոգեսպառ կը լինէր ապա, ու Յաւիտենական քաղաքէն յԱւինոն կ՚ապաւինի, 70 ամ (գերութիւն Բաբելոնի,) Ֆրանսայի արքունեաց ազդեցութեան ներքեւ։

Անգլիոյ ու Ֆրանսայի միջեւ կը բորբոքէր Հարիւրամեայ պատերազմն ու Ժան տ՚Արք ողջակէզ կը լինի։ Գերմանիոյ ծոցէն երկու Պաշտպանողական միութիւնք կ՚ընծիւղին ու Հելուետական դաշնակրութիւնը կը հիմնուի Հելուետացի գեղջուկներէ, Գուլիէլմոս Թէլի առաջնորդութեամբ։ Եկեղեցւոյ մէջ հերձուածներ կը ծագին, Վիկլիֆ ու Ժան Հիւս արմատական փոփոխութիւններ կը պահանջեն։ Ի Գոստանցա ու ի Պալ եկեղեցական ժողովներ կը գումարուին հերետիկոսութիւնը բառնալու համար։

Միջնականութիւնը (bourgeoisie) կը զօրանայ, ու կ՚ոգեւորի քաղաքային առաքինութիւնը։ Ու քաղաքք՝ կենդանի նշանք քաղաքակրթութեան՝ կը դառնան կեդրոն բարոյական եւ իմացական զօրութեանց։

*Օսմանցիք կը տիրեն Արեւելեան միջերկրականի ու Սեւ Ծովու աւազանաց ։*

*Ու Միջին դարն Նոր ժամանակաց կը կտակէ այն վսեմ նկարագիրն որ Հին աշխարհը Նոր աշխարհէն կորոշէ ։*



## ՔԱՂԱՔԱԿՐԹՈՒԹԻՒՆԸ ԳԱՒԱՌԱՑԻ ԱՂՋԿԱՆՑ ՀԱՄԱՐ



*Ինչո՞ւ կաշխատիք գաւառացի աղջիկներուն ուսմունք սորվեցնել, ինչո՞ւ կուզէք նրբացնել ու դժբաղդ ընել զանոնք. դուք չա՞տ գոհ էք ձեր վիճակէն ։*

*Այս հարցումը կամ մանաւանդ այս պատասխանը կստանայինք ձմեռը մէկ քանի հայերէ, որոնց կը դիմէինք Ազգանուէր Հայուհեաց պարահանդէսին առթիւ նպաստ մը խնդրելու ։ Եւ սակայն մտքերնուս անգամ չէինք անցներ ետ կենալ մեր գործէն, զոր խղճի պարտքը կը թելադրէր մեզի ։*

*Յետոյ ընկերներս խնդրեցին ինձմէ որ գրեմ այս խնդրոյն վրայ, եւ ես որ ութը տարուան կենակցութեամբս գաւառի կանանց հետ նոյն իսկ իրենց բնավայրին մէջ՝ քիչ մը բան գիտէի անոնց կեանքէն ու պիտոյքէն, խոստացայ գրել ինչ որ կը մտածէի այս մասին ։*

*Նախ յիշեմ թէ գաւառացի աղջկանց աւանդուած ուսումը առ այժմ այնքան քիչ բան է, որ հազիւ կրնայ բաւել իրենց զատուելու ընտանի անասուններէն, որոնց ապրելու եւ վարուելու կերպերն ուին ընդհանրապէս, աւելի կատարեալ կազմաւորութեան մը եւ իմացական գերազանց կարողութեան մը պատճառաւ անշուշտ դժբաղդ ըլլալով նոնցմէ. եւ կարծեմ մարդուն ու անասուններին նիւ-*

թական համահաւասար կացութիւնը ամենէն արգահատելի տեսարանն է, որուն կարենանք հանդիպիլ. հետեւաբար ձեռք տալ քիչ մը վեր բարձրացնելու համար զայն, աղքատին հաց տալէ աւելի մարդասիրական է ըստ իս։

Բարձր դաստիարակութիւն մը կամ տարաշխարհիկ կրթութիւն մը՝ ինչպէս կուզէք, կրնայ մեծապէս միանալ այդ սկզբնական մարդոց անոնց կեանքի արդի պայմաններուն մէջ. իսկ պէտքերն ու միջավայրին համեմատ տրուած ուսումը, ապրելու չափ մը կանոններու վարժութիւնը կազատէ զանոնք այն նուաստ վիճակէն, ուրկէ պիտի ամչնայինք անտարակոյս, եթէ մէկը մանրամասնօրէն նկարագրէր մեզի։

Գաւառաց մէջ մասնաւորապէս ինծի ցաւ ազդող բանը մաքրութեան պակասը եղած է. այդ ամենակարեւոր ոչինչը, որ բնական պէտք մը դարձած ըլլալուն մեզի՝ ուսումներու կարգը դասելու հոգ չենք տաներ, բացարձակապէս կը պակսի գիւղացւոց։ Կան որ նախապաշարում մը ունին խնամոտ մաքրութեան դէմ, եւ իրենց նորածին մանուկները աղտոտ կը թողուն, փախնալով որ Աստուած կը նեղանայ, Աստուծոյ սրտին ծանր կուգայ այդ փոքրիկ մարմնոյն վրայ այդքան գուրգուրալը, զայն պաշտելը, եւ տուներնին տաճարի մը պէս մաքուր պահելը սրբապղծութիւն կը համարին։

Գաւառացի աղջկանց ուսում աւանդել՝ ահա այս անտեղի գաղափարները ջնջել, անոնց խղճմտանքի պարտքն ու իրաւունքը ճշդել, եւ ուղիղ ու պարզ կեանքի ճամբուն մէջ դնել է զանոնք. եւ անոնք չեն որ դժբաղդ կընեն մարդը։

Անբնական չէ անշուշտ որ այս նախնական բարւոքումները քիչ քիչ տանին զանոնք աւելի նուրբ աւելի գերազանց գաղափարներու. երբ տղու մը քալել կը սորվեցնենք, ապահով ենք որ մեր անցած ճամբաներէն պիտի քալէ օր մը. ի՞նչ փոյթ, բաւական է որ իւր ծունգերը բաւական ոյժ առնեն զինքը բռնելու համար։

Եւ իրաւունք չունինք մենք արգիլելու յառաջադիմութիւնը որ բնութեան օրէնքն է։ Մարդկութիւնը աշխարհի մեծ տղան է, իւր ճակատագիրն է քալել, միշտ քալել. այր եւ կնոջ մէջ խտիր չը դներ բնութիւնը, եւ կուզէ որ երկուքն ալ քալեն։

Կինը ամեն տեղ նոյնն է գրեթէ. միշտ իր երկրին այրերէն աւելի փափկասիրտ, աւելի ըղձատանջ, ունենալով յղկուելու, ազնուանալու յատուկ կակուղ խմոր մը, որ քաղաքակրթութեան նրբութեանց մէջ թափուելու ընդունակ կընէ զինքը։ Բարակ հոտառութիւն մը, որ ճաշակի տեղ կը ծառայէ իր անմշակ մտքին գերազանց բաները գուշակելու, զանոնք զգալու եւ անոնց գրկումէն տառապելու համար։ Լեռնցի կինն ալ սալօնի կնոջ մը չափ կը սիրէ ծաղիկները, կը փնտռէ եւ կը գտնայ իր դաշտերուն ամենէն գունագեղ, ամենէն անուշահոտ տունկերը, որոնց վրայէն այր մը պիտի կոխէր անցնէր։ Գեղեցիկ երեւնալու իղձը, պզտիկ պըչրանքները, երազներով տառապելու միտումը անընդհատ կընեն ամեն երկրի եւ ամեն դասակարգի աղջիկները Եւային։ Բայց այդ կանացի զգացումները, ըղձանքը, նոյն իսկ քմահաճոյքները մշակուելով՝ մարդկային յառաջադիմութեան օգտակար

ձիրքեր կը դառնան օր մը, վասն զի կարողութիւններ են անոնք, եւ կարողութիւն մը միշտ կրնայ ծառայել բանի մը։

Արդէն բնութիւնը իր բոլոր տարրերով կը նրբանայ, կազմուանայ հետզհետէ. կապիկը մարդ կը դառնայ, եւ մարդը այնքան կը բարձրանայ մտքով, որ իր նախնիքէն տարբեր դասակարգ մը կրնայ կազմել կենդանեաց սանդուխին վրայ։ Այս օրէնքը անբան կենդանեաց մէջ ալ կը տեսնուի ամեն օր, եւ քաղաքակրթութիւնը բոյսերուն ու տունկերուն մէջ ալ ի գործ կը դնէ իր ազդեցութիւնը. լեռները, չէնքերը, ճամբաները կը յղկուին, կը շքեղնան, կը գեղազարդուին, եւ պէ՞տք է որ գաւառացի կինը զուրկ մնայ այդ բարեշրջութեան օրէնքէն։

Ի՞նչ չահ, ի՞նչ օգուտ իրեն այդ զրկանքէն. միշտ իր տանը անկիւնը, իր արտերուն ակօսին վերեւ պիտի կրնա՞յ ապրիլ ան, երբ հաղորդակցութեան եւ յարաբերութեան միջոցները կը դիւրանան հետզհետէ, երբ շոգեկառքը քաղաքակրթութեան ամբողջ կենդանի պատկերը կը տանի պտըտցնել այդ մոռցուած գիւղերուն խորը. անտարբեր աչքո՞վ պիտի նայի գաւառացի կինը իր կրթուած քրոջը, եւ անոր նմանելու անհանգստութիւնը նո՞ւազ պիտի տառապեցնէ, նուա՞զ դժբաղդ պիտի ընէ զինքը։

Ասկէ զատ, երբ յարաբերութեանց պատճառաւ մտքի մշակութենէն առաջ կսկսին ընդօրինակել կանայք քաղաքակրթեալ ժողովրդոց արտաքին ձեւերը, անոնց զգեստները, անոնց արդուզարդը, անոնց մոլութիւնները, ի՞նչ կըլլայ իրենց տունը, իրենց ընտանիքը։

Սխալ չէ՞ արդեօք կարծել թէ դժբաղդութիւնը ուսմունքէն կարտադրի. մարդկային անյագ սիրտը նոյն իսկ իր վայրենի վիճակին մէջ չունի՞ արդեօք իր փլած յոյսերը, տարտղնած երազները: Իրաւ է որ մտքի զարգացումը նոր տառապանքներ կստեղծէ. այդ նրբազգած հոգւոյն չարչարանքին մէջ սակայն անքացատրելի վայելք մը կայ, ուրկէ զուրկ է հասարակ մարդը: Մենք կը սնանինք վիշտերով, կապրինք յուզմունքով, եւ մեր հոգւոյ այս ըկանքին մէջ պարտքի մը զոհուելու կամ անիրաւութիւն մը կործանելու գաղափարը գերազանց հաճոյք մը կուտայ մեզի. վասն զի մենք չենք հաւատար երջանկութեան, ու կը հալածենք զայն մեր ստուերին ետեւէն վազելու խօլ յամառութեամբ մը, զոր գիտենք թէ չը պիտի յաջողինք բռնել. զբաղում մը, հաճոյք մը, նոյն իսկ վայելք մըն է այդ մեզի համար. մինչդեռ կեանքի կապուած, կեանքի վրայ հաւատք ունեցող միամիտ մարդիկ՝ սպասող, ջլացող յուսահատութիւններ ունին պատրանքի մը առջեւ, եւ յոյս մը որ կը խորտակի, հաշիւ մը որ սխալ կելնէ, խուլ, անգութ ցաւերու կը մատնէ զիրենք: Մենք ամեն օր մեր սրտին ու մտքին պզտիկ վէրքերուն հետ խաղալով կը վարժուինք, կընտելանանք ցաւոց հետ, որոնց առջեւէն դատարկ միտքը զարհուրած՝ ետ ետ կը փախչի:

Քաղաքակրթութիւնը դժբաղդութիւն չը բերեր. եթէ չը մեղմացներ, կը սորվեցնէ զայն մեզի, կը վարժեցնէ անոր, համ մը կուտայ թոյնին զմեզ անով զինովցնելու համար, հեշտութիւն մը, զոր կը սիրենք, եւ որ կը կապէ զմեզ մեր ներքին ցաւերուն,

ինչպէս մայր մը իր հիւանդ զաւկին . ու մեր ամենէն դժբաղդ օրերուն մէջ՝ չենք մոռցեր վայրկեան մը միջօրէն փոխել վիճակնիս լեռան մարդուն հետ , եթէ ուզէ առնել մեր բոլոր տառապանքը մեր երազանքի ու տենչանքի հմայող կարողութեան հետ ։

Գոհ ենք ուրեմն մեր վիճակէն. եւ պէտք է փափաքինք որ մեզի պէս ըլլան գաւառացի կիներն ալ, եւ մեզի հետ աւելի առաջ քալեն մինչեւ զէնիթը քաղաքակրթութեան , ուր կը դիմէ ամբողջ մարդկութիւնը ։



## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ



*Ի սկզբանէ աշխարհի մինչեւ ցայսօր մարդկային ազգի կենաց դէպքերն անջնջելի կերպիւ արձանագրուած են ։ Ամենուրեք կը գտնուին մարդկային գործունէութեան հետքերն․ է՛ր երբեմն հողին վրայ կ'երեւէին, եւ հողին ներքեւ այսօր կը յայտնուին ։ Առ՝ թղթագիր պատմութեան՝ կայ վիմագիր պատմութիւնն․ կայ պատմութիւնն ստորերկրեայ, եւ կայ պատմութիւնն ստորերկնեայ, — եթէ կրնայ այսպէս բացատրուիլ ։ Այդու պատճառաւ՝ պատմութեան սահմանն յար կ'ընդարձակի, — որպէս իր նկարագիրն յաւէտ կը փոփոխի ։ Եւ ո՛չ ազգի մը կրնայ զլացուիլ իրաւունքներ պատմութեան․ քանզի թուղթերն եթէ լռէին, քարերն յայնժամ պիտ՝ աղաղակէին․ եւ յիշատակարանաց եթէ քարերն ալ՝ բացօթեայ բարձրաբարբառ պատմութիւն՝ ոչ եւս այլ ինչ նախահարց վրայ պատմէին, ձայն մը պիտի լսուէր երկրիս խորէն ։ — Գործաւորներ, չինութեան մ'առթիւ, կը փորէին հողն․ եւ ահա վէմ մը, վիմահատոր մը փորագրեալ կամ քանդակագործեալ, բրիչի հարուածներուն կ'ընդդիմանայ․ յափշտակութեան կամ ահաբեկութեան աղաղակ մը կը բառնան ործաւորք միաբերան ։ Կուգայ հնագէտն, երկիւածութեամբ կը մօտենայ, եւ ճառագայթում մ'իւր հմաց վրայ ։ Ի՞նչ էր այդ քարն․ արեգական պաա՞ռ մը․ հնագիտին դիմաց ու մտաց ընդմէջէն իւր*

ճառագայթք կը տարածուին ընդհանուր պատմու-
թեան վրայ. դիպաց վրայ նոր լոյս կը սփռեն, ու
դիմաց կ'ընծայեն նոր բացատրութիւն։ Արեգական
դէմ ո՞վ կրնայ հայհոյել. ո՞վ կը համարձակի պատ-
մութեան վրայ իշխել։

Պատմութիւն յանցելումն ալ ունեցանք, ներ-
կային մէջ ալ ունինք, ապագային մէջ ալ պիտի
ունենանք։ Սակայն մեր ներկայ պատմութիւնն այն
չէ ինչ որ էր անցեալն, եւ ապագայ պատմութիւնն
ա՛յն չը պիտի լինի ինչ որ ներկայն է։ Ընդհանուր
ազգաց պատմութեան մէջ արդէն ատրճանական
խաւարում մը տեղի կ'ունենայ։ Դիւցազանց համե-
մատութիւնք եւս քան զեւս կը վերածուին. արիւնն
եւս քան զեւս պժգանք կ'ազդէ մարդուն, արիւնն՝
որ այնքան թանձր ու վառ գոյն մ'ունի, արիւնն՝
որ այնքան սքանչելապէս կը գունաւորէր հին պատ-
մութիւնն. այլ եւս զմարդիկ չը վառեր ու չը սպա-
ռազիներ կոյր հաւատքն. ո՛չ եւս այսօր քաջութեան
սահմանն է զէնքն, այլ հանրային կարծեաց յար-
գանքն։ Ապա ուրեմն ո՛չ եւս այլ պատերազմ, ա-
րիւն, աւեր եւ աւար։ Լո՛յս կը պահանջէ նոր
մարդն, — եւ ոչ խաւար։

Սակայն ի՛նչ տարօրինակ հակասութիւն կը գոր-
ծեմ, մէկ կողմանէ պատմութեան մէջ հաստատե-
լով ատրճանական խաւարում եւ միւս կողմանէ
մարդկութեան մէջ հաստատելով ատրճանական
լուսաւորում։ Լաւագոյն չէ՞ր միթէ ղոյս բառն հա-
ւասարապէս ընդունիլ հին պատմութեան ա՛լ, նոր
պատմութեան համար ա՛լ, յայտնելով թէ լոյսն հին
պատմութեան սուրէն կուգար մանաւանդ, արեան

վտակներէն, ոսկւոյ եւ արծաթի աւարներէ, մինչ նոր պատմութեան կուգայ լոյսն իմացականութենէն՝ որ գործիքներն են գրիչ, կարկին, մանրացոյց, հեռադէտ. լոյսն այսօր կուգայ պատմութեան քըրտանց առուակներէն՝ որովք հողագործք կ՚ոռոգեն արտերն, ու մելանի վտակներէն՝ զորս կը հեղուն գրագէտ ու գիտուն. լոյսն այսօր կուգայ երկրիս ծոցէն՝ ուր հնոց մը գտաւ երկրաբանն, եւ երկնից բարձո՛ւնքէն՝ ուր նորանոր լուսագունտեր կը գտնէ յար աստեղագէտն։

Այսպէս ահա պիտի լինի յետ այսորիկ պատմութիւնն։ Այսուհետեւ պատմութեան դիւցազունք պիտի համարուին մանաւանդ անո՛նք, որ ամենէն աւելի լոյս ընդունին, որ ամենէն աւելի լոյս ծաւալեն։ Գտնելու աշխարհներն հատան, այլ դեռ ո՛րքան աշխարհներ լուսաւորելու. մարդկային ազգի բոլոր ցեղերն ալ ճանչցուեցան, այլ դեռ ո՛րքան ցեղեր քաղաքակրթելու. ընկերութեան բոլոր խաւերն ալ ուսումնասիրուեցան, այլ յետին խաւերուն, ստուարագոյն խաւերուն մէջ դեռ որքա՜ն մթութիւն, որքա՜ն մերկութիւն, որքա՜ն թշուառութիւն նիւթական ու բարոյական։ Դիւցազն անո՛նք պիտի կոչուին, որք ընթանան ջահ ի ձեռին, եւ ո՛չ անոնք որք արշաւեն սուր ի ձեռին։ Անո՛նք դիւցազն, որք՝ բարձր իմացականութեամբ ու դրիւք՝ խոնարհ դասերուն համակրելն, որ գթութեամբ դարմանեն նիւթական աղքատութիւնն, ու գիտութեամբ մտաւոր աղքատութիւնն։

---

## ՄԻՆԱ՛Կ



*Տարիներն որոնք ետիս են՝*
*Իրենց զուարթութեան դառն յիշատակով*
*Զիս կը չարչարեն .*
*Տարիներն որոնք առջիս են՝*
*Խելագարութեան ահռելի հեռապատկերով*
*Զիս կը քարացնեն ։*

*Հին տարիներն՝ որոնց լիալոյս պայծառութիւնն*
*Աստիճանաւ կը նուաղի .*
*Նոր տարիներն՝ որոնց դեռաբոյս մթութիւնն*
*Տենդերու սաստկութեան հետ կ'աճի ։*
*Հին տարիներն, հնագոյններն, ի՛նչ քաղցր կը ժպտին .*
*Նոր տարիներն, նորագոյններն, ի՛նչ ծամածռութիւններ ունին ։*

*Հին տարիներն իրենց հետ ամեն բան,*
*Հին բարի՛ տարիներն անգութ*
*Տարին ամեն բան իրենց հետ,*
*Ամենքն ու ամեն բան անդարձ յաւիտեան .*
*Մայրս, հայրս, եղբայրս .*
*Սէրս, յոյսս, հաւատքս ։*

*Նոր տարիներն ոչի՞նչ պիտի բերեն ինծի .*
*— Նոր տարակոյսներ պիտի բերեն մտքիս,*
*Նոր յուսախաբութիւններ սրտիս,*
*Ու նոր մշուշներ հոգիիս ։*
*Արագ արագ կուգան՝ որպէս գուժկան .*
*Ու յամր յամր կ'երթան,*

Ձի ծանրաբեռնեալ միշտ կ'երթան
Նոր տարիներն՝ որոնք հի՜ն են այժմ։
Անկողինները մէկիկ մէկիկ ծրարեցան.
Պնակները մէկիկ մէկիկ վերցան.
Ու ձայները մէկիկ մէկիկ մարեցան։
Ու տունս հիմայ մէկ անկողնեակ.
Ու սեղանս հիմայ մէկ պնակ.
Ու բնա՛ւ կենդանի ձայնի մ'արձագանգ։

Ես կերակուրս կ'ուտեմ, ու կերակուրս զիս կ'ուտէ.
Ես սենեակներս կը պտտիմ, եւ ուրուականք դան-
կիս սենեակները կը պտտին.
Եւ պատերուն վրայ պատանքի պէս ճերմակ՝
Կը պտտին գիրկընդխառն իմ սիրելեացս ստուերները,
Կը պտտին գիրկընդխառն հի՜ն տարիներուն
ստուերները։

Հին բարի տարիներն անգութ
Երջանկութեան պայծառաշող պատկերներ
Աչքիս տակ միշտ կը պտտցնեն։
Ու տարիներն որ պիտի գան,
Սեւ սեւ սարսուռներ
Հոգիիս մէջ կը պտտցնեն . . . ։

## ՊԱՏԱՆԵԿՈՒԹԵԱՆ ՅԻՇԱՏԱԿՆԵՐ. — ԵՐԱԶ ՄԸ· — ԱՆՑՔ ԸՆԴ ԳԱԶԱՆ ԳԱՑԱ



*Անցելոյն յիշատակներն կը հրահանգեն զմարդ իւր ներկայ կենաց մէջ, եւ կը պատրաստեն զնա առ յապայս լինելու եւս առաւել զգուշաւոր, շրջահայեաց եւ խելամուտ։ Եւ կայ արդեօ՞ք ոք՝ որ օգուտ չը քաղէ պահ մի իւր առանձին ժամերէն եւ ակնարկ մը չձգէ յետկոյս այն զառիվայրին վրայ ուստի մագլած էր ի վեր մերթ ի ժպիտ եւ մերթ յարտօսր, մերթ առողջ եւ մերթ տկար, մերթ պաշտպանեալ եւ մերթ ըլկեալ։ Հովիւն, որ իւր թափառ կեանքէն պարտասեալ եւ խոնջեալ, ծառոյ մը հովանւոյն ներքեւ արեգական ճառագայթներէն կը պատսպարուի ցերեկին՝ իւր անմեղ հօտին հետ կ'որոճայ իւր անցեալ կենաց արարքներով, որոց յիշատակներն մերթ ժպիտ մը կը բերեն իւր դիմաց վրայ եւ մերթ հառաչք մը կը խլեն իւր սրտէն։ Վաճառականն որ այնքան վարժ է առեւտրոյ ժխորին, իւր բազմազբաղ օրերէն կը զիջանի յաճախ մի քանի ժամեր զոհել՝ իւր անցեալ գործառնութեանց վրայ ակնարկ մը ձգելու, եւ ըստ այնմ գծելու իւր ապագայ ուղին։ Վերջապէս ամէն դասակարգի մարդ իւր մենութեան ժամուց մէջ չվարանիր հարցնել իւրովի. «Ի՞նչ ըրի ցարդ», զի առանց այդ հարցման չպիտի գտնէր մի այլ հարցում թէ «Ի՞նչ պիտի ընեմ յայմհետէ»։ Անցելոյն յիշատակն կը յարու-*

ցանէ ապագայի խնդիրն. այդ յիշատակ՝ նսեմ թէ փայլուն՝ դաս մ'է անզուգական զոր կ'արժէ սերտել։ Ո՞չ ապաքէն դիւանագիտաց ուեստարանն՝ այլ եւ այլ ազգաց պատմութիւնն է, պատմութի՛ւն դարաւոր զոր սերտելով՝ կ'առաջնորդեն միլիոնաւոր ժողովուրդներն. զի փորձն փնտռելու է անցելոյն մէջ։

Անցեալն միշտ քաղցր է որչափ եւս դա խառնուած լինի տխուր արկածիւք, քանի որ յիմարութիւն է ակնկալել յաստիս անխառն ապագայի մը։ Մարդկութիւնն որ իւր քաղաքակրթութեան գագաթնակէտն հասած կը համարուի այժմ՝ անձկանօք կը փնտռէ նահապետական օրերն, եւ կը նախանձի իւր նախահարց պարզ, անշուք եւ անպաճոյճ այսու հանդերձ կէս վայրենի կենցաղոյն։ Պատանի՞ է, կը փնտռէ իւր ամբողջ մանկութիւն։ Երիտասա՞րդ է, կը փնտռէ իւր ժիր պատանեկութիւն։ Ծե՞ր է, կը փնտռէ իւր չափահաս երիտասարդութիւն։

Երիտասարդութեան այժմեան հասակիս մէջ միշտ ժպտելով կը յիշեմ պատանեկութեանս օրերն, թէպէտ եւ դոքա եղած լինին նուազ անդորր եւ բարեկեցիկ. զի ո՞ւր են այն աւիւն եւ եռանդ որ առ ոչինչ գրել կու տային ամէն վտանգ, ո՞ւր է այն սիրտ փափուկ եւ զգայուն որ սոխակին դայլայլկաւ եւ կուսին երգովը անմեղօրէն կը բաբախէր, ո՞ւր է այն միտք ողջ որ չէր գիտեր սեթեւեթիւ արտայայտել իւր գաղափարներ։ Ցայնմհետէ երկոտասան տարիներ սահած են, եւ չէ անցած օր մը յորում չյիշեմ պատանեկութեանս անմեղ եւ անհոգ օրերն, այլ ոչ անդորր եւ անվրդով։

Ցունուարի ցուրտ գիշեր մը յորում հիւսիսային

բքաբեր քամին ուժգին կը փչէր, վառարանի մը ճարճատող խարուկին դիմաց թիկնաթոռի մը մէջ թաղեալ կ'երազէի։ Գուրգուրացող քնքոյշ ձեռք մը նոյն հետայն ուսիս հպելով կը սթափեցնէր զիս իմ քաղցր անուրջէն. ամբարձի աչերս եւ տեսայ ընկերուհիս Նազելի որ ժպիտով մը կը վարձատրէր քնոյս խանգարումն։

— Քունդ անո՜յշ, փութաց ըսել ինձ, ի՞նչ երազեցիր, պատմէ՛, տեսնեմք։

Համբոյր մը դրոշմելէ յետոյ իւր սպիտակ եւ փափուկ ձեռքին՝ նստուցի ընկերուհիս առ ընթեր ինձ եւ սկսայ պատմել հետեւեալն.

— 1882 տարւոյ յունիսի երեկոյ մը մեր կարաւանն կը հասնէր Ճանիկու Կումպէթ գիւղին բարձունքն, որում հանդէպ կը բարձրանայ Գազան Գայայի ամպածրար գագաթն. վերջապէս հասած էինք այդ լերին մօտ, որոյ մասին ընկերացս չռայլած չափազանցութիւնք թէ հետաքրքրութիւն եւ թէ անձկանք պատճառած էին ինձ։ Այո՛, կը տեսնէի ի հեռուստ նորա ձիւնապատ գագաթն որ ճաղատ գլխոյ մը նման՝ արեգական ճառագայթից ներքեւ կը ցոլայր. սակայն կարծեցեալ Ատամասաթորն չունէր ինչ երեւոյթ սպառնական, եւ ես ընդ երկար դիտելէ յետոյ իւր երկար եւ բարեձեւ հասակ՝ մտայ հիւղակն ուր կը գտնուէին ընկերքս ծիծաղելով նոցա երկչոտութեան վրայ։ Ժամ մը հազիւ անցած էր, երբ դուրսը լսեցի աղմուկ մը եւ ձայներ որք կը գոչէին «Կուգա՜յ, կուգա՜յ», եւ նոյն հետայն աչերս յառելով այն կողմն զոր ինձ մատնացոյց կ'ընէին՝ արդարեւ տեսայ Գազան Գայայի կատարն՝ մշուշի

եւ ձեան խառնուրդի մէջ ի լիւղ։ Այս անգամ անշուշտ հսկայն սթափած էր իւր քունէն բարկացոտ, եւ չէր ներեր, ի տես մեր կարաւանին, զի մարդկային պիղծ ոտքեր կոխոտէին իւր ալեւոր գլուխն։ Սոսկացի ի տես այդպիսի յանկարծական կատակի մը, եւ մանաւանդ երբ մտածեցի թէ ի վաղիւ անդր, այգ լերին գագաթն պիտի լինէր գուցէ իմ գերեզման անշուք եւ անտապան, երբ չարաչար մահն բաժնէր զիս յաստեաց հեռի սիրելիներէ եւ բարեկամներէ, Տան եւ եօթն գարուններ այն ինչ բոլորած էի. այս միջոցիս միտքս բերի ընտանեկան յարկն եւ սիրելի մայրս որ մեկնման պահուն իւր լայնալիճ բազկօք աքծանելով մատաղ կուրծքս՝ չէր ուզած որ բաժնուիմ իւր գիրգ ծոցէն։ Առաջին անգամ յիշեցի այն երեւայական կոյսն որ նախասահմանեալ էր օր մը սրբել ճակատուս քրտինքն եւ հոն դրոշմել մի սուրբ համբոյր։ Խուլ պայքար մը տեղի կ'ունենայր յիս. լինե՞լ թէ չլինել։ Սակայն արժանապատուութիւն եւ փառասիրութիւն կը վարէին զիս յառաջ. արդէն հասած էինք Գազան Գայայի ստորոտն ուր եւ ագանք գիշերն։

Գազան Գայա փոքր Ասիոյ Սէն Պէրնարն է իւր յանկարծական փոթորկաց նմանողութեամբ. սակայն զուրկ այն մարդասիրական հաստատութիւններէն, որք մոլորեալ եւ կիսամեռ ուղեւորն վաղահաս մահէն կ'ապրեցնեն։ Չկան նաեւ այն մարդասէր չորքոտանիք զորս նախախնամական ձեռք մը գոգցես օժտած լինի ազատարարի յատկութեամբք։ Գազան Գայայի լերկ եւ ամայի գագաթան վրայ՝ հաւատացեալն իւր պաշտած Աստուծոյն, եւ անհաւատն

իւր չպաշտած (այլ նոյն միջոցին պաշտել խոստացած) Աստուծոյն եւեթ կ'ապաստանի։

Առաւօտուն կանուխ, մինչ արեգակն դայր յերեւան լերանցն ի ծիրս, սկսանք Գաղան Գայայի զառ ի վեր կողէն ելնել. միշտ ե՛լ, միշտ վեր, ցուրտն եւս քան զեւս սառուցիչ. բիւր ակունք եւ աղբերակունք զով եւ ականակիտ ջրեր կը բղխեցնեն՝. Թրջելով զրաստուց բիրտ սմբակներն եւ ջորեպանաց պինդ տրեխներն։ Ջորիք կը հեծեն եւ ձիք կը սայթաքին. զառ ի վերն եւս քան զեւս կը դժուարանայ, եւ այս պահուս ջորեպանս աղու եւ մելամաղձոտ ձայնով եւ լեռնական եղանակաւ կ'երգէ Սիմելայի երգն։ Սիմելայ իւր գեղով եւ շնորհով համբաւաւոր աղջիկ մ'է, որոյ կորուստն կ'ողբայ իւր սիրահար։ Վաշխառուն Նիկոլայ կորզած է զնա իւր հօրմէն ի գին նորա պարտուց եւ ի հեծուկս իւր պաղատանաց. իւր սիրահար ի զուր կը կոչէ իւր ընկերներ յօգնութիւն, եւ ապա յուսահատ փոխանակ իւր սիրելւոյն ցուրտ հողն կը գրկէ։ Դրամն այս կոյս լերանց մէջ իսկ ցոյց կուտայ իւր անգութ եւ ապօրէն զօրութիւն տիրելով անառիկ սրտերուն իսկ։ Այս երգէն գոգցես գրաստք նոր ուժով ոգեւորեալ՝ ընդ հուպ հասուցին զմեզ լերին գագաթն։ Ընդարձակ սարահարթ մը կը տարածուի աստ, տեղ տեղ ձիւնապատ։ Ձիաւորք կ'իջնեն նոյնհետայն եւ հետի քալել կը սկսին ջեռնլոյ՝ համար. եւ մինչ ջորեպանս միամտաբար ինձ ցոյց կուտայ Սեւածովն որ երկու աւուր ճանապարհաւ հեռի է, ես, մոռնալով պահ մը իմ երկիւղներս, կը սկսիմ Թըղթատել պատմութեան էջերն։ Կ'երեւակայեմ տես-

նել դեռ Քսենոփոնի Բիւրուց հետքերն եւ լսել նոցա աղաղակն ի տես Եւքսինեանին «Ծո՜վ, ծո՜վ»։ Կը յիշեմ աստանօր Պոնտացւոյն եւ Հռովմայեցւոյն պատերազմներն, եւ լսել կը կարծեմ նոցա զինուց շաչիւնն։ Միհրդատ իւր ջոկատներով եւ Լուկուլլոս իւր լէգէոններով քանի՜ քանի՜ անգամներ արդեօք չափուած են այս բարձանց վրայ։ Այս պահուս Ջորեպանացս աղաղակներն կը սթափեցնեն զիս իմ քաղցր խոկմունքէս, եւ կը տեսնեմ ջորի մը որ ձեան մէջ թաղեալ հազիւ իմն կը ճողոպրի անդունդն գլորելէ։ Ժամ մ'է յորմէ հետէ ձեան վրայէն կը քայլեմք եւ մեր ոտքերն արդէն ընդարմանալ կը սկսին։ Հեշտ զառ ի վայրէ մը սակայն կը սկսիմք իջնել եւ արդէն բոլորած եմք Գազան Գայայի գագաթն. վտանգն անցած է այլ եւս։»

— . Ա՞յս էր տեսած երազդ, ըսաւ ընկերուհիս տխրած. ի՜նչ անախորժ երազ։

— . Արդարեւ, պատասխանեցի, պատկեր տխուր եւ մելամաղձիկ, այլ յիշատակն՝ քաղցր։ Անցելոյն դէպքերն եւ պատահարք, ո՛րքան եւ դժպհի եւ խռովեալ եղած լինին, լաւ դասեր են ապագային համար, զորս ձրի աւանդած է բախտն երկդիմի։

## ՍՐԲՈՑ ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ ՏՕՆ Ի ՍՈՒՐԲ ԷՋՄԻԱԾԻՆ



Զանգակները կը հնչեն քաղցր ներդաշնակութեամբ․ երկարօրէն կը հնչեն ինն ձայն զանգակաց։

Արձագանգը կը բարձրանայ զանգակատան գըմբէթը, եւ կ'անդրադառնայ խորանին կամարները։ Կամարներէն 'ի վեր կը ծաւալի արձագանգն ընդարձակ հորիզոնին մէջ․ Վաղարշապատին, շրջապատին, անտառին, այգեաց, հրապարակին։

Կը սկսին շարժիլ թռչունք, որ թեւածալիկ երամ երամ կ'սպասէին, ծառոց թաւերէն, կտուրներէն, եկեղեցւոյ տանիքէն, գմբեթաց եզերքներէն։ Վարժուած էին․ կը խառնէին իրենց այլայլիկ ձայնիկը զանգակաց ղօղանջին։

Ընդհանուր շարժումն կը սկսի։ Ուխտաւորք կը հաւաքուին մեծ բակը, խառնիխուռն, գոյնզգոյն իրենց տարազներով․ գունդագունդ, սեռով, սերընդով, հասակով, գեղով․ ալեւորն ու մանկտին, տղամարդն ու մատղաշ աղջիկն, մայրն ու այրը, գիտունն ու ռամիկը, դաշտի զաւակն ու քաղքի պարոնը, ամենքն Հայ, ջերմագին եռանդով լի։ Կը շարժին ալէծուփ, կը մրմնջեն, եւ իրենց ձայն իբրեւ ձայն ընթացից ջուրց։ Զովագին կը շնչէ հովիկն առաւօտուն, շարիշար կ'երեւին դասք քահանայից, կը ծածանին վեղարք աբեղայից, կը խշխշան ծաղկեայ վերարկուք սրբազանից։ Թափօրը կը կազմուի։

Սարկաւագունք, դպիրք եւ հարիւրաւորք ծե-

մարանին երգարան 'ի ձեռին ։ Կը հնչեն զանգակներ միեւնոյն քաղցրաձայնութեամբ, եւ ճեմարանականք կ'երգեն մեղմագին «Անձինք նուիրեալք սիրոյն Քրիստոսի . . .» Կոմիտաս կաթողիկոսի հոգեւորիղ տաղն ու քնարը ։

Կ'ընթանայ թափօրն չքեղ հանդիսաւորութեամբ, անցնելով Տրդատայ դռնէն, վեհարանի հովանեացներքեւէն, Վաղարշապատի հրապարակէն, ճեմարանի հոյակապ ճակատուն առջեւէն, պարտիզի քովէն, մեծ պողոտայէն մտնելով դաշտի ընդարձակութեան մէջ ։ Զանգակները կը հնչուին, շարականը կ'երգուի . «Բարբառք երկնաւորք լցին զերկիր . . .» Թափօրը կը ստուարանայ հետզհետէ ։ Այգեգործն, հնձողն, ջրուորն, նախրորդն, հովիւն, գառնարածն, իրենց լաճերն ու աղջիկները միասին կայնած, խորին երկիւղածութեամբ կը խաչակնքեն, գտակները բացած, զմայլած թափօրին կը նային, կրօնից, հաւատալեաց, երգելեաց տպաւորութեան տակ, եւ որոնք եւ գառինք իրենց քաղցր աչերը յառած կը բառաչեն ու կը մայեն ։ Կ'ընթանայ թափօրն ։

Հնձաններուն մօտ ենք ։ Ահա Շողակաթ . վանքն ու տաճարն ։ Իւր չուրջ կանանչաթուփ այգեստանք, դալարաւէտ մարգ, եւ հասկաթուռ արտորայք ։ Օրհնութիւն երկրին . գեղեցկութիւն հովտին, եւ մարդն քանի՛ գեղեցիկ 'ի մէջ այնքան պարարտութեանց եւ գեղոց ։ Աստ հաստատուած էր 'աղագեղն Հռիփսիմէ երեսուն եւ եօթն չքնաղ սուրբ կոյս ընկերօք . ա՛ստ երկնային ողկոյզն 'ի ջ ողկուզաց որթոց . աստի « Հոտ անուշից բու- 'ցան 'ի Քրիստոս . . . » ։

Կը յառաջէ Թափօրն. Միշտ այգեստանք, միշտ արտորայք մեր շուրջն ու առաջ, եւ անդէոց ու խաչանց երեմակք, եւ 'ի ձայն, եւ 'ի փայլ, եւ 'ի կերպս զանազան հաւք Թռուցեալք: Արդարեւ «Եդեմ Աստուածատունկ զարդարեալ...,»: Ցափըշտակութի՞ւն յանկարծ, հիացումն. «Զօրք հրեշտակաց ընդ մարդկան ... եւ կանայք 'ի յերկինս զինուորք ... Էնն Աստուած ամենազօր զօրութեամբ խոնարհեալ տեսանել զհանդէս կուսանացն ...»:

Հասած ենք հանդիսավայրն: Ահա ապարէզ նահատակ կուսին. հսկայակերտ վկայարանն Սրբոյն Հռիփսիմեայ: Հոյակապ գմբէթն արձակեց իւր ցընծութեան նշանն. հնչեցին զանգակներ տաճարին, սխրագին ոգեւորութեամբ Թափօրն մտաւ 'ի տաճարն. եւ բոլորեցաւ Կոմիտասայ շիրմին շուրջն: Անդ լռեցին երգողք. բայց մի սխրալի եղանակ լսելի կը լինէր դեռ ընդ երկար. արձագանգն էր տաճարին. արձագանգ քնարերգակ ոսկերաց սուրբ կաթողիկոսին:

Եւ սկսան պատարագը: Դուրս մատաղները կը զենուն, աղաղակ խաչանց: Ներսը բուրումն խնկոց, եղանակք դպրաց. «Քրիստոս պատարագեալ ի միջի մերում, Ալէլուիա»:

Բայց ո՞ւր է սուրբ կոյսն ...:

Աւագ սեղանոյն տակ դուռ մը կայ բացուած. ներս կը մտնեմ 'ի խոր, խոնաւ, անձուկ անցքէ մը ներս, յաջակողմն 'ի ներքոյ սեղանոյն, անուշահոտութեամբ լի վայր. դամբարան մը կայ լուսաթաթախ, խնկաւէտիկ, եւ երեք սրբանեալ անձինք, Ս. Լուսաւորիչ, Ս. Սահակ Պարթեւ եւ Ս. Կոմի-

տաս կ'սպասաւորեն անդ, հակելով իրենց կնքեալ գանձուն ։ Անդ, այդ մթնաշողին մէջ կը փայլի լուսեղէն Թագուհին, Ս. Հռիփսիմէն ։ Կ'երկրպագեմ ։ Ինկած եմ հողոյն վրայ, փարած եմ շիրմին . . . ։

Թողէ՛ք զիս այստեղ ։



## ԿԱՐԵՒՈՐՈՒԹԻՒՆ ԼԵԶՈՒԻ



*Ամէն ազգ իւր նախնական, այսինքն բարբարոսիկ վիճակէն աստիճան աստիճան հեռանալով՝ հասած է ա՛յն վիճակին յորում կը գտնուի այսօր ։ Մարդկային ցեղին այս աստիճանաւոր եւ անընդհատ փոփոխութեանց պատճառ՝ իւր պիտոյից եւ կարօտութեանց օրըստօրեայ աճումն է . շատ նախնական պէտքերն գոհացում կը գտնէին առանց ճգի , առանց խոնջութեան , բնութեան թելադրած միջոցներով . սակայն հարկ կը լինէր երբեմն այդ նախնական պէտքերու սահմանէն դուրս ելնել . այն ժամանակ մարդիկ կ'ըստիպուէին հնարքներու դիմել ։ Այդ հնարքներու ծնունդ տուողն ուրիշ բան չէր , բայց բանաւորութիւնն , որոյ անբաժին ընկեր է խօսողութիւնն . մին մայր է եւ միւսն զաւակ . ինչ որ բանաւորութիւնն կը յղանայ , խօսողութիւնն անմիջապէս ի լոյս կը հանէ զայն ։ Աւասիկ այս երկու էական սքանչելի յատկութիւններով է որ մարդ խօսուն է եւ յանբաւս կը տարբերի անասուններէ ։ Ուրեմն պէտք չկայ ապացուցանելու թէ մարդուս կատարելութեան վիճակին , այսինքն քաղաքակրթութեան առաջին եւ գլխաւոր միջոց լեզուն է . առանց լեզուի կենաց առուտուրն շատ դժուար եւ գրեթէ անկարելի է եւ հաղորդակցութիւնք որ պիտոյ են գիտութեանց ծաւալման եւ արուեստից յառաջադիմութեան՝ բնաւ*

տեղի չեն ունենար. եւ այն ժամանակ մարդ՝ մունջ եւ անխօս, անասուններէ չտարբերիր։

Հայերն, ինչպէս ուրիշ ազգեր, ունէին լեզու մի(*), որոյ նախնական վիճակն Թէպէտ եւ մեզ անծանօԹ, սակայն մեր նախնեաց Թողած նշխարներէն դատելով՝ Քրիստոսէ գոնէ 8-10 դար յառաջ սկսելով մինչեւ հինգերորդ դարու կէսն՝ կատարեալ, ընտիր լեզու մ'էր. եւ այնչափ անզուգական եւ սքանչելի յատկուԹիւններով օժտուած, որ հին եւ նոր աշխարհի լեզուներուն գրեԹէ ամէնէն կատարեալն համարել անտեղի չէ։ Եւ ահա, այս լեզու որ յաւիտենական տեւողուԹեան արժանի լեզու է, դժբախտաբար շատ շուտ աղաւաղեցաւ. Թերեւս իւր կատարելուԹիւններն եւ անգիւտ նրբուԹիւններն եղան պատճառ այնչափ դիւրաւ խանգարուելուն. ինչպէս նուրբ, ազնիւ անօԹ մի որ ամենաԹեԹեւ արկածէ կը կոտրի, կ'ոչընչանայ։

Ս. Թարգմանչաց երկրորդ աշակերտներուն ձախող փորձերն(**), որ անշուշտ հեռաւորուԹեանց պատճառաւ, առանց խորհուրդ եւ խրատ խնդրելու իրենց վարդապետներէն, յունական փիլիսոփայու-

---

(*) Ըստ Ա. Հ. Գ հնչումն խլացուցիչ է. պատճ՞առ. վասն զի գրաբա՞ր է։ Յունարէնին և ուրիշ եւրոպական լեզուներու, մանա- …նդ սպաներէնին Գ հնչումներն ին՞չպէս գիրենք չեն խլացուցած. …մա՞նք։

(**) Այս խնդրոյ վրայ ունինք գրուԹիւններ գրաբար լեզուաւ, …նք եԹէ օր մի՝ մասամբ կամ ամբողջովին լոյս տեսնեն, կրնան …ւական հետաքրքրական տեղեկուԹիւններ մատուցանել։

թեան գրեանը թարգմանելու ձեռք զարկին, պատճառ եղան որ հելլենաբանութիւնն կատարելապէս մուտ գտաւ հայ լեզուին մէջ։ Այս ենթադրութիւն չէ, այլ կատարեալ ստուգութիւն է։ Թէպէտ եւ այդ օտարամուտ խանգարումէն յառաջ կը տեսնենք ժամանակին հեղինակներէն մի քանին որ այն սահուն, պերճ ու ճոխ լեզուն չունին. խանդ, ոյժ, կորով, չքեղութիւն որ լիուլի կը զեղուն ընտիր հեղինակաց մէջ, կարելի չէ գտնել այդ դասի հեղինակներու քով. սակայն իրենց անզարդ, անպաճոյճ պարզութեան մէջ լեզուին իսկութիւնն չեն կորուսած. հայ լեզուի դրոշմն կը պահեն։ Չունին զարդ, հրապոյր, փափկութիւն, չքեղութիւն. սակայն չունին նաեւ խորթութիւն եւ ոչ իսկ օտարոտի այլանդակ բացատրութիւններ։

Միանգամ սկսելէ յետոյ՝ խանգարումը կանգ չառաւ, չդադարեցաւ. միշտ յառաջ կ'երթար, միշտ դէպ ի խոր անդունդս կորստեան. մանաւանդ այն պատճառաւ որ ժամանակին յուզեալ եւ խառնակ վիճակն շատ նպաստաւոր էր՝ նոյն միջոցին, ինչպէս նաեւ շատ դարեր յետոյ։ Տարուէ տարի, ամսէ ամիս եւ գրեթէ օրէ օր՝ լեզուին կերպարանքը կը փոխուէր, նորանոր անհամար խորթութիւններ մուտ կը գտնէին, այնպէս որ բոլորովին անճանաչելի (Դաւիթ Անյաղթ) եղած էր լեզուն։ Եթէ յաւելումք այդ վիճակին վրայ լատինաբանութեան հրէշն, այն ժամանակ կարելի չէ ժամանակիս մարդոց երեւակայել թէ որպիսի՛ այլանդակութեանց բոյն դարձած էր հայ լեզուն։ Վերջապէս այն ազետալի դարերու շրջանին մէջ հետզհետէ խանգարուելով եւ իւրա-

քանչիւր դարու ռամկական լեզուին խառնուելով՝ եղաւ հայ լեզուն կղկղանք լեզուներու(*)։

ԺԸ. դարու վերջերը գրաբարն սկսաւ քիչ մը մշակուելու, երբ Մխիթարայ դպրոցը վերջին հարուածը տուաւ լատինաբանութեան։ Պաշտօնական (կոնդակ, հրահանգ, հրամանագիր, եւայլն) գրութիւններու մէջ՝ ի հնուց հետէ աղճատեալ եւ տգեղ գրաբար մը կը տիրէր, ինչպէս այսօր իսկ արձանագրութիւններէ քաղել եւ տեղեկանալ կարելի է։

Ներկայ դարուս գրեթէ երեք քառորդն անցած էր, երբ գրաբարեանց եւ աշխարհաբարեանց վէճերն սկսան։ Մի կողմանէ գրաբարին դժուարութիւնն որ ամէնէն համարձակներն անգամ լքեցուց, ինչպէս շատ յայտնի եղաւ վերջին ժամանակներս, եւ միւս կողմանէ ռամկօրէնին կարծեցեալ դիւրութիւնն մէտ տալ տուին գրեթէ առ հասարակ ռամիկ լեզուին։ Այս վէճերու մէջ ոչ հիմ կար, ոչ սկզբունք. որովհետեւ մին միւսին խօսքը չէր հասկանար. ոչ մին գիտէր իւր պաշտպանած դատն եւ ոչ միւսն։

Գրաբարեանք թէպէտ եւ չէն պնդեր գրաբարն իբրեւ ընդհանուր լեզու հաստատել, բայց եւ արդի լեզուն ա՛յնպէս, ինչպէս է, առանց բարւոքման հաստատել չեն ուզեր եւ մանաւանդ թէ սաստիկ հակառակ են։ Մէջերնին կան նաեւ արմատական-ներ, կամ կարմիր կոչուածներ, որ բացարձակապէս

---

(*) Լեզուի մի՝ 14-15 դարու միջոցի մէջ կրած փոփոխութիւնները փոքրիկ և մի՛ լոկ պատկերով նկարագրել կամ ըմբռնել՝ դըժուարին է. բայց մեր գրութեան չափն աւելի երկար պատմութիւններ տողել չներեր։

գրաբարին հաստատուիլը կը պահանջեն ։ «Ի՛նչ նա-
«խապաշարում է, կ՚ըսեն, կարծել թէ գրաբար
«խօսիլ անկարելի է. եթէ պակասաւոր լեզու լինէր՝
«լմն, իրաւունք էր այնպէս կարծել ։ Ի՞նչ դժուա-
«րութիւն կայ որ մեր մատաղ տղայք փոխանակ
«իջնալ, իյնալ, քնանալ, վլալ, պոռալ, խնդալ,
«խմել, խաւրել, ղրկել ըսելու՝ ուսանին ըսել
«իջանել, անկանիլ, ննջել, ղուալ, աղաղակել,
«ծիծաղիլ, ըմպել, առաքել, յուղարկել ․ կամ փո-
«խանակ ըսելու՝ մօրդ գնա ․ եղբայրդ սիրէ ․ քրոջդ
«ծաղիկը տուր ․ քիչ մը ջուր բեր ․ պարտէզ գնա ․
«դուռը բաց, ուսանին ըսել՝ երթ առ մայր քո ․
«սիրեա զեղբայր քո ․ տուր զծաղիկ քեռ քոյ ․ բեր
«սակաւ մի ջուր ․ երթ ի պարտէզ ․ բաց զդուռն,
եւայլն եւ այլն (*) ։

Աշխարհաբարեանք կ՚ուզեն գրաբարն, եթէ կարելի լինէր, աշխարհէ իսկ հանել, բնաջինջ, անհետ ընել, եւ ռամկական արդի հայերէնն, ինչպէս որ է, իբրեւ ազգային մատենագրական, ուսումնական եւ արուեստագիտական լեզու հաստատել ։ Այս

---

(*) Եթէ լաւ մտադիր լինինք, կը տեսնենք թէ գրաբարի շէնքն ու կազմուածն ամենեւին չտարբերիր գաղիերէնէն, որ առաջին կանոնաւոր լեզուն է նոր աշխարհի. միայն սա տարբերութիւնն կայ որ գաղիերէնի մէջ անուններու հոլովումն պարզ, այսինքն միօրինակ է, քիչ բացառութեամբ։ Այո՛, բացառութիւններն քիչ են. բայց դարձեալ ուղղագրութեամբ, ոչ հնչմամբ, շեղումներն ընդհանուր կանոնէ՝ բաւական թիւ կը կազմեն։ Ի՞նչ է ուրեմն մեր գրիչներուն յիմար և կատաղի սէրն հայերէն անուններու հոլովներն միակերպ վերջաւորութեան վերածելու։ Թողունք որ Ռուսք, Գերմանք, Յոյնք բնաւ մտքերնէն չեն անցուներ քերականութիւն փոխել։

նպատակով այնպիսի հնարքներ ի գործ կը դնեն որ ճիշդ նմանութիւն ունի այն մարդոց եպերելի ընթացքին որ օտարի ագարակը մտած՝ ցիցեր կը տընկեն գետնին բաւական մեծ մասին վրայ եւ աչքերնին միշտ սեւեռած կը դիտեն որ չիմանայ տէրն ագարակին. յետոյ քիչ մ՚ալ յառաջ երթալով ցիցերը կը քշեն առաջին տեղէն՝ որպէս զի նոր մաս մի եւս շահին. եւ այսպէս անհուդողի մէջ եւ միշտ դիտելով եւ մեծ զգուշութեամբ աւելի հող շահելու կ՚աշխատին։ Ահա, այս հնարքներն ի գործ դրին աշխարհաբարեանք. մերթ քարոզեցին թէ աշխարհաբարն այս ինչ դիւրութիւններն, այս ինչ առաւելութիւններն ունի. մերթ համոզեցին թէ օրէ օր մեծ յառաջադիմութիւններ կը տեսնուին աշխարհաբար գըրութեանց մէջ. մերթ հրապարակ ելած գործերն մինչեւ յամպս բարձրացուցին. մերթ-անմիտ, անիմաստ եւ քստմնելի հայհոյութիւն — գրաբարը ծաղրեցին. վերջապէս ականջներ վարժելով եւ միտքեր ընտելանալով՝ ամէն ոք լքեալ խոնջեալ անձնատուր եղաւ։ Աւասիկ այդ փոքրիկ յաղթութիւններով հասան աշխարհաբարեանք այն փառաւոր օրուան յորում Մասիս լրագիրն կ՚աւետէ առաջի աշխարհի՝ թէ

«Այն ժամանակներէ ի վեր որ լեզուի պէս բան
«մը միայն ունէինք, մեր լրագրութեան յարատեւ
«ջանքն եղած է այդ բանը՝ կատարեալ լեզուի մը
վերածել»։ — անշուշտ ի շնորհս անփութութեան նոնց որ բողոքելու, ձայն բարձրացընելու մեծապէս իրաւունք ունէին։

Այն խնդիրն թէ երիտասարդութիւնն գրաւած է

*այսօր մեր արդի գրականութիւնն, շատ կարեւոր խնդիր է, որոյ մասին յետոյ պիտի խօսինք։ Այժմ գանք այն խնդրին թէ լեզուի նման բան մը ի՞նչպէս կատարեալ լեզուի վերածուեր է։*

*Եթէ կատարելութիւն գոյացած է այդ լեզուի մէջ, այն ոչ Մասիսի եւ ոչ Արեւելքի ջանքովն եղած է, այլ ժամանակին յառաջադիմութեան արդիւնքն է, որ ինչպէս քաղաքակրթութեան պէսպէս ճիւղերուն մէջ, նոյնպէս լեզուի նկատմամբ իւր բարերար ազդեցութիւնն գործած է։*

*Բայց կարեւոր կէտ մի կայ հարցման. — այդ լեզուն կատարեա՞լ է։ Եթէ կատարեալ է՝ լա՛ւ. օ՛ն, յառաջ երթանք, չկասինք. բայց եթէ անկատար է, ինչպէս պիտի տեսնենք, այն ժամանակ զուր է Մասիսին պարծանքն եւ անտեղի։*

*Այն լեզուն որ սահմանեալ է ընդհանուր ազգային լեզու լինելու, պէտք է որ ամէն կատարելութիւն բովանդակէ. ապա թէ ոչ ընդհանրութենէ չընդունուիր եւ կը լինի մասնաւոր գաւառական կամ մանաւանդ կուսակցական (խմբակի) լեզու։*

*Այդ լեզուի թերութիւնները ցոյց տուած է մեր գրաբար գրուածներուն մի մասն եւ առաջարկած է միանգամայն այն բարւոքումներն եւ ուղղութիւններն (*) որ անհրաժեշտ է մուծանել, եթէ կ'ուզենք*

---

(*) Համառօտ քաղուած յիշեալ գրութիւններէն։

Ա. — Անուններու և ածականներու հոլովմանց մէջ հաստատուն կանոնի մի հետեւիլ, որպէս զի էջէ էջ, տողէ տող պէս պէս ձեւեր յառաջ չգան։

Բ. — Ջանալ որպէս զի աստիճանաբար մուտ գտնեն նախդիրնե-

որ մեր արեւմտեան բարբառն ընդունելի լինի աշխարհի ամէն կողմ ուր Հայ կայ . ապա թէ ոչ անիրաւ պահանջում կը լինի մեր կողմանէ՝ ընդունիլ տալ անտաշ ու բիրտ կոթող մի՝ իբրեւ փափուկ , անօսր եւ ազնիւ զարդ չքեղութեան ։

Գիտեմ ինչ պիտի առարկեն մեր բարեկամներն ։ «Մեզ ի՞նչ փոյթ , պիտի ըսեն , ուրիշներու համար. «մեք մեր լեզուն կոկեցինք , զարդարեցինք եւ հրա- «կայաքայլ յառաջ պիտի երթանք գիտութեանց եւ «արուեստից մէջ . ուրիշներն եւս թող կոկեն լե- «զունին եւ յառաջ երթան ։ Ռուսիոյ , Պարսկաս- «տանի , փոքր Ասիոյ զանազան գաւառներու , Հուն- «գարիոյ , Ռումանիոյ , Հնդկաստանի եւ Ճավայի «Հայք եթէ կ'ուզեն , թող զարգացընեն իրենց գա- «ւառաբարբառն եւ յառաջ երթան ։ Բայց հինգ վեց «տեսակ հայերէ՞ն մէջ տեղ պիտի ելնէ . ի՞նչ փոյթ ։ «Մի՛թէ լատիններենէ՝ իտալերէն , գաղիերէն , սպա- «ներէն , ռումաներէն եւ փորթուկէզ լեզուներն «ելած չե՞ն ։»

Սխալ է այդ ըմբռնումն եւ միանգամայն մնասա-

րըն լեզուին մէջ. որովհետեւ ճշդութիւնն նախդիրներով կը լինի. Միայն մեր արդի հայերէնն է որ զուրկ է այդ առաւելութենէ զոր ունին ուրիշ ամէն լեզուներ։

Գ. —Բայերուն լծորդութիւնները կանոնաւորել ի հաստատականս եւ ի ժխտականս։

Դ. — Ցարաբերական դերանուններուն գործածութիւնն ընդհանրացնել եւ չնմանցնել խօսքը, Թրքերէնի պէս, մէջէ մէջ պատատած ընդունելութեանց հարիւրկանգնեայ շղթայի. այնպէս որ ճառին մասերն, մին միւսին խառնուած, իմաստին լրումը հուսկ վերջին բառէն կախում ունենայ։

կար ։ Ստոյգ է՝ այդ լեզուներն ելած են լատիներէնէ, բայց ոչ ազգերն. իւրաքանչիւր ազգ կամ ժողովուրդ իւր միջավայրին, կլիմային, ազգային բնաւորութեան եւ ուրիշ զանազան պարագայից համեմատ փոփոխութիւններ ընելով՝ իրեն սեփհականներ է լատիներէնն ։ Լեզուն նոյն աղբիւրէ ելած է. բայց զատ են ազգերն ու անկախ ։ Նո՞յն բանն է մի՛թէ հայերէնին համար. ո՛չ ։ Լեզու այլազան, տարբեր, բայց ժողովուրդն մի եւ նոյնն է ։

Ուրեմն ամէն փոյթ ու ջանք պարտինք ի գործ դնել, որպէս զի ամենափոքր թերութիւն անգամ չգտնուի այդ լեզուի մէջ, եթէ կ՚ուզենք ընդհանրութեան լեզու տեսնել. պարտինք կանոնաւորել, այսինքն խիստ, անփոփոխ կանոններու տակ դնել, եւ թերեւս այն ժամանակ ճարտար եւ հմուտ գրագիտաց աշխատանօք եւ հոգածութեամբ օր ըստ օրէ զարգանայ եւ անցնի ի կարգ կատարեալ լեզուի ։

Մօտ օրերս լսեցինք ձայներ որ ախորժելի չեն հնչեր մեր ականջներուն ։ Համբաւաւոր մի բեմէ այնպիսի խօսքեր եւ կարծիքներ կը նետուին ի հրապարակ որ փոխանակ ուղղելու, կանոնաւորելու մեր արդի լեզուն, աւելի զեղծումներն եւ անկանոնութիւնները քաջալերելու կը նպաստեն ։ Գրաբարը մեռած, թաղուած եւ անպէտ անօգուտ կը քարոզեն այնպիսի անձեր որ շատ լաւ գիտեն թէ արդի լեզուին կեանքը գրաբարն է, եւ թէ կանոնաւորելու համար այդ անտաշ լեզուն՝ ո՛րչափ պէտք ունինք գրաբարին ։ Այս քարոզներն, այս հրատարակութիւններն ի՞նչ արդիւնք յառաջ կը բերեն, ի՞նչ օգուտ ունին ։ Գիտէ՞ք ինչ օգուտ ունին. աշխարհա-

բարեանք, որ արդէն թշնամի են գրաբարին, երբ այդ անձերու բերնէն լսեն թէ մեռած է այլ եւս գրաբարն, կ'ուրախանան, կը հրճուին, թմբուկ կը զարնեն, պար կը պարեն եւ — ինչ որ աւելի վը-նասակար է — իրենց թիւր շաւղին մէջ կը յարատե-ւեն, եւ այն ժամանակ զեղծումներ, խորթութիւն-ներ, քմածին ստեղծուածներ ջրհեղեղի պէս կը յոր-դեն կը զեղուն ամէն կողմանէ եւ բոլորովին կը խեղդեն զմեզ: — Մենք գիտենք թէ գրաբարն մե-ռած է, քարոզելու պէտք չկայ. բայց ամենեւին կարծիք չունինք թէ անգործածելի է, աւելորդ է, կամ թէ, ինչպէս քանի մի թեթեւամիտ անձեր կարծեցին, վնասակար է: Գրաբարն, թէպէտ չը-խօսուելուն պատճառաւ մեռած լեզուներու կարգն անցած է, սակայն ինք շատ կենդանի է, շատ ա-ռողջ է, շատ առոյգ է եւ կենդանութիւն անգամ կը շնորհէ կենդանի կարծուած դիակ լեզուներու:

Լեզու մի որչափ կատարեալ լինի, գիտութեանց եւ արուեստից նորանոր անթիւ գաղափարներուն առջեւ պակասաւոր եւ անկարող կը գտնուի. իւր մթերաց մէջ չկրնար միշտ գտնել գոհացուցիչ բա-ցատրութիւններ, ուստի եւ փոխառութեան կը դի-մէ: Անգղիացիք, Գաղիացիք, Գերմանք եւ ուրիշ եւրոպական ազգեր այս պարագայից մէջ յունարէնի կը դիմեն: Նոցա՝ գիտութեանց եւ արուեստից բա-ռարանն գրեթէ զուտ յունարէն է: Իսկ մեր Օսման-ան հայրենակիցք, որ շնորհիւ Վեհափ. Սուլթա-ն, գիտութեանց եւ արուեստից մէջ բաւական յա-ռաջադէմ են այսօր, շատ բնականաբար կը դիմեն թաթարէն եւ պարսկերէն լեզուներու որ արդէն ի-

րենց լեզուին աղբիւրներն են։ Ուրեմն մեր արդի հայերէնն, թէպէտ ըստ Մասխի ի ծայր կատարելութեան հասած, եթէ երբեք նոր գաղափարներ բացատրելու հարկին մէջ գտնուի, ի՞նչ հնարք պիտի հնարէ, ո՞ւր պիտի դիմէ. յունարէնի՞ն, արաբերէնի՞ն. ո՛չ երբեք։ Բնականաբար իւր արմատին, հին հայերէնին պիտի դիմէ։ Մի՛թէ Յոյներն եւս իրենց գրաբարին, այսինքն Էլլինիքային չե՞ն դիմեր։

Գլխաւորենք ինչ որ բացատրեցինք մինչեւ հիմայ։ Մեր արդի լեզուն որ այժմու գրագիտաց կատարեալ կ'երեւայ (վասն զի իրենց ստեղծա՞ծն է), շատ անկատար, շատ պակասաւոր եւ շատ անկանոն լեզու է. եւ ազգային ընդհանուր լեզու լինելու համար՝ գրեթէ ամբողջովին նոր կաղապարէ անցնելու ձուլուելու է։ Այդ նորածնութեան գործն գրաբարի միջոցաւ կրնայ արդիւնաւորիլ. թող չահաբեկին աշխարհաբարեանք. մեք չենք ըսեր՝ գրաբարն հաստատուի. այլ արդի ռամկականն կանոնաւորուի, անփոփոխ կանոններ ունենայ, քերականութիւն ունենայ, վերջապէս լեզուի կերպարանք ստանայ։ Այն ժամանակ մէջ տեղ կ'ելնէ լեզու մի որ գրաբարն չէ, բայց դարձեալ այժմու անկանոն եւ ռամիկ լեզուն չէ, այլ ինքնուրոյն ազատ լեզու։

Գանք այժմ այն կարեւոր խնդրին՝ թէ երիտասարդութիւնն գրաւած է այսօր մեր արդի գրականութիւնն։

Նախ՝ երբ երիտասարդութիւնն այդպիսի կարեւոր եւ կենսական գործի մէջ ի գլուխ կ'անցնի, բնականաբար քիչ շատ կասկածելի կը դառնայ գործն. շատ լուրջ չնկատուիր։

Երկրորդ՝ եթէ այդ երիտասարդներն մօտէն ճանաչենք, պիտի տեսնենք թէ շատ մեծ պաշար չունին բարձր կրթութեան, շատ խնամեալ դաստիարակութիւն առած չեն. մանաւանդ հին հայերէնի մէջ՝ որ անհրաժեշտ գործի մի է այսօր, նոցա հըմտութիւնն շատ կը կաղայ. արդէն իրենց գրութիւններուն մէջ՝ ատտիկական փափկութեան եւ շատ անգամ իսկ տրամաբանութեան բացակայութիւնն կը մատնէ զիրենք։

Օտար լեզուի մի ուսումն, թուաբանութիւն, աշխարհագրութիւն եւ 3-4 ութիւններու ստացումն՝ աստիճան մի է միայն կրթութեան, բայց ոչ բարձր կրթութեան։ Ընդհանրապէս այս երիտասարդներուն ուսած օտար լեզուն գաղիերէնն է. բացառութիւն քիչ է ուրիշ լեզուներու նկատմամբ։ Եթէ փոյթ ունենային գոնէ գաղիերէն ընտիր մատենագրութեան միայն հետեւելու, անշուշտ մեր մատենագրութեան վրայ ցոլացած պիտի տեսնէինք նորա չքեղ փայլն։ Բայց ի՞նչ կը տեսնենք մեք այսօր. բնագիր կամ թարգմանուած վէպ, վիպակ, նորավէպ, դարձեալ վէպ, եւ դարձեալ կրկին վէպ։ Մի՛թէ չկա՞ն ուսումնական գրեան, չկա՞ն պատմա՛կան գործեր, չըկա՞ն հնախուզական տեղեկութիւններ, ճանապարհորդութեանց օգտակար եւ զբօսեցուցիչ պատմութիւններ, բնական պատմութեան երեւոյթներու հետաքրքրական նկարագրութիւններ, եւն. եւն. յս ամէն օգտակար հրատարակութիւններն ի մի ողմ թողուած են, եւ բոլոր փոյթ, հոգ, եռանդ, աշխատութիւն եւ երկար տքնութիւններ վէպերու ծնուած են։ Աներկբայելի է թէ գաղիական մա-

տենագրութիւնն հաւասար է եւրոպական ուրիշ մատենագրութիւններու, եթէ գերազանց չէ. բայց չենք գիտեր՝ այն ազգին անհանդարտ բնաւորութեան եւ բոցավառ երեւակայութեան արդի՛ւնք է թէ ուրիշ պատճառ, կը գտնուին անհատներ որ ի խնդիր նորութեան, համբաւի կամ նիւթական շահու՝ խոտորելով արահետէ, տարակարգ դրութիւններու, անլուր մէթոտներու ձեռք կը զարնեն։ Ուստի խումբ մի այդ անձերէն հաստատած են ի գրականութեան դպրոց մի զոր կը կոչեն իրապաշտ, եւ ճիշդ այդ իրապաշտ դրութեան յառած պրկուած բեւեռած են մեր երիտասարդ գրիչներն։ Թէ ի՞նչ է այդ դրութիւն, երկարօրէն մեկնել աստ աւելորդ կը թուի մեզ, որովհետեւ մեր նպատակն ուրիշ է։ Բաւական է ըսել կարճ ի կարճոյ թէ իրապաշտներու համար ինչ եւ իցէ իրի, ինչ եւ իցէ գործի ազնուութիւնն կամ նուաստութիւնն հաւասար է. նոյն եռանդով, նոյն սաստկութեամբ կը փարին միոյն, ինչպէս կ՚ընդգրկեն միւսն։ Մարդկութեան վսեմագոյն առաւելութիւններն կամ ամենազազիր զարշութիւններն հաւասար մանրակրկիտ խնամով կը ծըրագրուին, վտանգաւոր նկարագրութիւններ, գրգըռիչ պատկերներ եւ անբարոյական քստմնելի զազրութիւններ բնաւ իրապաշտներու գրիչը չեն կասեցուներ։ Այն բնածին ամօթխածութիւնն, որ գրեթէ կը բռնադատէ սքօղելու ինչ որ անվայել է տեսութեան կամ լսողութեան, անծանօթ է այդ դպրոցին(*)։

---

(*) Այս դրութիւն ունի բնականաբար շատ պաշտպաններ ի Գաղիա. մեր երիտասարդ գրիչներէն անգամ այնպէս ջերմ ախոյ-

*Բուն գաղիացի երեւելի հեղինակներէ զատ որ տատուիկ կը հարուածեն այդ դպրոցին սկզբունքներն, արդէն բոլոր Եւրոպա իւր խիստ վճիռը տուած է. այդ դպրոցին ի լոյս հանած գործերէն չատերն*

---

*եաններ ելած են մէջ տեղ որ անխնայ քարկոծել կը մտաքերեն ով որ այդ դրուԹիւնը խծբծել յանդգնի ։ Այդ դպրոցին պետն իւր հընարած դրուԹիւնը ջատագովելու համար շատ փաստեր մէջ տեղ բերած է իւր գրուԹեանց միոյն մէջ․ բայց անհերքելի, անդիմադրելի՝ և ոչ մի փաստ գտանք այդ փաստերուն մէջ։ Ցիշենք սատ նորա փաստերէն մին․ «Կը ներուի, կ'ըսէ, մարդասպանի մի գործած ոճիրն ի « լոյս հանել, մանրակրկիտ նկարագրել, ընԹերցողաց աչաց առջեւ « պարզել, լայնաբար տարածել, վնաս չէ. իսկ այն համարձակ « շարժումներն, այն անսովոր ձեւերն, այն գիրկընդխառն գալա- « րումներն որ երկու սիրականներու մէջ տեղի կունենան, ներեալ « չէ նկարագրել, այլ պէտք է սքողել ծածկել » . — եւ այս եպերելի կը համարի, կեղծաւորուԹիւն կ'անուանէ։ Մեք, առանց փիլիսոփայական խորին քննուԹեանց դիմելու, կը համարձակինք դիտել տալ Զոլաներու՝ Թէ մարդասպանուԹեան տեսարանն ատելուԹիւն կը յարուցանէ մարդուս սրտին մէջ, նողկանք, զզուանք եւ հետեւապէս խորշումն նման գործերէ․ մինչդեռ սիրոյ նկարագրուԹիւնք կամ ամուսնական յարաբերուԹիւնք ձգողական ոյժ ունին, կը հրապուրեն, կը քաշեն եւ կը գրգռեն։ ԵԹէ այս տարբերուԹիւններն աղէկ կշռած լինէր իրապաշտ դպրոցի պետն, կարելի չէր որ այդ փաստն ի ձեռն առնէր իբրեւ զէնք։ — Բարոյականութեան խնդիրն ի մի կողմ, մեք յիշելով այդ դրուԹեան մուտն մեր արդի աղքատ եւ ողորմելի գրականուԹեան մէջ՝ իմացնել կ'ուզենք Թէ յիշեալ դպրոցին սկզբանց հետեւելով մեր գրիչներն շատ անգամներ ել, անլոյծ կնճիռներու կը բաղխին եւ նկարագրուԹեանց մէջ ենսափոքր, ամենաչնչին մանրամասնուԹիւնները ծրագրելու յամաւԹեամբ՝, իրենց լեզուին գեղն ու շքեղուԹիւնն կը խանգարեն, չեւ երբեմն ծաղրելի լինելու չափ, ինչպէս կը տեսնուի քանի օրինակներէ որ քաղած հաւաքած ենք զանազան գրուԹիւններէ․*

կառավարութեանց կողմանէ դատապարտուած են մէջ տեղէ ժողվըւելու կամ հրոյ ճարակ ըլլալու, ուր որ գտնուին. մինչեւ ի վաճառ հանողներն իսկ ծանր տուգանաց ենթարկուած են։

Ինչ որ բացատրեցինք այս վերջին տողերու մէջ դուրս է մեր նպատակէն. աւելի բարոյախօսի կը պատկանի քան բանասէրի։ Մեր բուն նպատակն է լեզուին նիւթական կամ մեքենական կազմութեան վրայ խօսիլ. նորա ամբողջութիւնն, անբռնաբարելիութիւնը պաշտպանել, անխախտութիւնը քարոզել. այս է ըստ մեզ կենսական խնդիր տոհմային լեզուի նկատմամբ։

Այժմ կ'ենթադրենք թէ մեր երիտասարդ գրագէտներէն գո՞նէ ոմանք Ծաղիկ հանդէսի մէջ հայ լեզուի աղաւաղութեանց մասին գրուածներէն ծանօթութիւն ունին։ Ծանր եւ դժուարին սկզբունքներ կամ կանոններ աւանդուած չեն անդ. ամենայն ինչ պարզ է։

Ա. — Հին հայերէն — աղէկ — չգիտցողներուն մատենագրական ասպարէզէն քաշուիլ կը յանձնարարէ(*)։ Վասն զի ամէն անճոռնի, անհեթեթ ածանց կամ բարդութիւն գրաբար չգիտնալէ յառաջ եկած է։

Բ. — Իւրաքանչիւր ոք իւր հաճոյից, քմաց եւ մտացածին գաղափարաց թելադրութեան տակ չգրէ, ինչ որ գրէ. այլ ամենայն մտադրութեամբ, ամե-

(*) Գրաբարն անհրաժեշտ է ոչ գրաբարի համար միայն, այլ մանաւանդ աշխարհաբարի համար։ Հ. Ա. Այտնեան։

նոյն փութով կանոնի հետեւի, քերականական օրէնքներն յարգէ(*)։

Գ. — Ոչ ոք իւր կողմանէ ինչ եւ է բառ կամ բան ստեղծելու — մանաւանդ սխալ ստեղծելու — չհամարձակի. այլ քաջ հայերէնագիտի խորհրդին դիմէ, եթէ անհրաժեշտ պէտք կայ նոր բառ կամ անուն ստեղծելու։

Անհաւատալի պարզ սկզբունքներ որոց գործադրութիւնն ամենեւին դժուարութիւն չընծայեր. յօժարութիւն եւ հաստատուն կամք բաւական են։ Սակայն երբ ի հեճուկս ամէն ազդարարութեանց եւ ակնարկութեանց՝ կը տեսնենք թէ դարձեալ նոյն սխալ չաւղին մէջ կը յարատեւեն մեր բարեկամներն, ի՞նչ կրնանք մտածել. իրաւունք չունի՞նք յամառութիւն կոչելու, երբ 4-5 տարիներ անցնելէ յետոյ, նոյն աղաւաղութիւնները չոյուած, փայփայուած կը տեսնենք, եւ գրեթէ պաշտուած եւ յերկրպագութիւն բարձրացած։ Մի՞թէ ուղղուա՞ծ է արտասովոր որ ամէն օր լրագիրներու մէջ հարիւր անգամ կը կրկնուի. նոյնպէս մտասիպար, ապօրինի, նեռոյժ, ռեղմիրան, մակաբոյծ, հնարովի, մեղրաշուրթն, ժամադրավայր, շոգենաւն։ Իսկ հետզհետէ եւ

---

(*) Իւթիւճեան էֆէնտիի վառեակներն այս երկրորդ կանոնէն չեն ախորժիր. կարգ, չափ, սանձ չեն ճանչնար. թշնամի են կանոնաւորութեան. իրենց դրօշն է անխորհուրդ եւ սանձարձակ յանդըգնութիւն։ Մեք ասա կ'ուզենք իմացունել թէ գաղիացի իրապաշտներն լեզուն չաղաւաղեցին, կարգ, կանոն ոտնակոխ չըրին, մեր գրիչներուն պէս. մանաւանդ թէ նոցա շատ գրութիւններն օրինակ կ'ըծայեն մի սքանչելի և փայլուն գրականութեան։

նորանոր հնարուած հրաշակերտներուն համար ի՞նչ ըսել . — տեսէք մի անգամ , բայց միայն թէ չզարհուրիք . շարենք աստիճանաբար . Նոր ի նոր , անդադրում , մանկունակ (ծիծաղ) , ուղխինախոս , հոգեփայփայ , հրապեւ (երգ) , խմանուագ(*) , վերյուշում , պղնձերփնուած , խայլամերժ (սրունք) , հեռակապոյտ (շեռ) , աղուաղոյս , վայրենավառ , նրբագայում , հանրակին , հնձոյավաճառ (կին) , պճռուհի , միջակորեար (կին) , գանգաչախչախ (երկրպագութիւն) , դարպասել կամ դարպաս ընել , եւ այլ անթիւ վիժածներ . ո՛չ — սխալեցանք — գունագեղ , թրթռուն բառեր որ գրաբարի անամէջ , հնչուն բառերուն տեղ կը դարբնուին սնանկ գրագէտներու դարբնոցին մէջ ։ Ի վերջ դրութեանս կը նուիրենք բանասիրաց՝ գզրոցիկ մի նորութեանց ։

Ի դէպ է աստ քանի մի անճահ բացատրութիւններու թերի կողմն պարզել , բանալ եւ աչաց առջեւ դնել . որովհետեւ ընդհանրապէս այս ինչ կամ այն ինչ թերութիւնն ունի ըսել ի վերացականն՝ օգուտ չունի , չազդեր . լաւագոյն կերպն է մատնանիշ ցուցանել ։ Կ'ըսենք քանի մի . վասն զի ամենուն վրայ խօսիլ անհնարին է . կարծենք 5-6 հազարը կ'անցնին ։ Բաւական է ի մէջ բերել անոնք միայն որ այս վերջին օրեր լոյս տեսան ։ Ուստի սկսինք . Նոր ի նոր . արդէն ունինք նորանոր , եւ նորանորէ զատ՝ բուն հարազատ հայ լեզուի յատուկ

(*) Նուագներ շատ են . արտասուանուագ, հողմանուագ, մինչեւ գորտանուագ ։

Նոր նոր՝ կրկնակ ածականն . ուրեմն ի՞նչ կը նշանակէ այդ նորասիրութիւն ։ — Անդադրում, լաւագոյն եւ ուղիղ Անդադար ։ — Մանկունակ . պարզ, ուղիղ եւ գեղեցիկ է Մանկական ։ — Ողխինահոս . նարեկեան ոճ, մեղկ, կնատ . առ իմէ՞ չըսել Ողխահոս որ ուղիղ է ։ — Հոգեփայփայ . ամենեւին չփայփայեր հոգիս ։ — Հրաթեւ երգ . երգն ունի՞ թեւ, եւ թեւ հրեղէ՞ն . գաղիերէն des prières ailées ըսել կարելի է, այսինքն սա՛ իմաստով թէ աղօթք դէպ ի վեր կ՚ուղղուին, դէպ յերկինս կը կը թռչին ։ — Քմանուագ (հովի) . նուագներուն աւելորդն . գաղիերէն՝ souffle capricieux des vents. — Վերյուշում . բարբարոս բառ, գաղիերէնի նիւթական թարգմանութիւն, այսինքն ի վերայ բերել, վերստին կոչել, se souvenir, se rappler. չեն գիտեր խեղճերն թէ գաղիերէն բառին re մասնիկն թէ վերնայ՝ կոչել միայն կը նշանակէ, այլ եւս յիշել չնշանակեր . իսկ հայերէնէն եթէ վերցուի վեր մասնիկն, դարձեալ յուշում կը մնայ, այսինքն յուշ ածել, յիշում, յիշատակ ։ Կարծեմ հայերէնէ զատ՝ գաղիերէն եւս լաւ գիտնալ պէտք է՝ գրական ասպարէզ ելնելու համար ։ — Դղնձերփնուած . փափուկ հնչում . կարծենք հնարողն Ռոսսինիյի աշակերտներէն է ։ — Քայլամերժ ուրուն, խեղճը կ՚ուզէ ըսել . կրոս ուրուն, սկար ուրուն ։ — Հեռակապոյս լեռ . կապոյտ լեռ ի հեռաւորութեան, կամ ի լուսոյ տեսնուած կապոյտ լեռ ։ Եթէ չորս հինգ գաղափարներ մի բառի մէջ ամփոփելու սկսինք, ռոմանական կիսականգնեալ բառերն շատ ետ պիտի մնանք ։ — Աղուաղոյս . այսինքն սակաւալոյս կ՚ուզէ

նշանակել․ մեր նախնիք որ լեզուին գրեթէ առեղծողներն են՝ միայն ռեազ աղուամազ գործած են․ եթէ չափ պահելն աւելորդ զգուշութիւն կը համարուի, այն ժամանակ ըսենք աղքատին՝ աղուաքսակ եւ պակասամտին՝ աղուամիտ․ ո՞ւր կը վերջանայ։ — Վայրենավսեմ․ կ'աղաչենք, գաղիերէն կամ անգղիերէն եւ կամ գերմաներէն համապատասխանող բառն ծանուցանէ մեզ հեղինակն։ — Նըրբագայում․ ցուրտ եւ գռեհիկ նրբագայումն անբարոյականութեան, կ'ըսէ հեղինակն․ — անբարոյականութիւնն շատ գայումներ ունի․ այս ո՞ր տեսակն է։ — Հանրակին․ արդէն տգեղ բառ մ'է․ բայց հաճոյավաճառ կին չենք գիտեր ի՞նչ կարգի եւ ի՞նչ ճաշակի կը պատկանի․ միայն կը յիշենք մեր մի բարեկամն որ կատակի համար, բայց զուտ կատակի համար — հրատարակելու անամօթութիւնը չունի — Փաշա-մահալլէսիի տուներուն համար կ'ըսէր թրանվայազուարճ տուներ․ ի՞նչ տարբերութիւն ունի հաճոյավաճառ կին։ — Պչրուհի․ սոսկում եւ արհաւիրք․ չենք գիտեր ի՛նչ ըսել․ — Միջակորեար կին․ բառ առ բառ՝ Միջակ-կարգի-մարդիկ կին․ աւասիկ սքանչելի պտուղ գրաբարն արհամարհելու։ — Գանգաշախշախ երկրպագութիւն․ այսինքն խոնարհ, անկեղծ երկրպագութիւն․ անո՜յշ բառ եւ սքանչելի գաղափար։ — Դարպասել (դարպաս ընել)․ կարելի է, ուրիշ ամէն բան ներուի․ սակայն այս չներուիր։ Յանդգնութիւնն մինչեւ ո՞ր աստիճան պիտի հասնի։

Միայն բառեր չեն դատապարտելի եւ ընկեցիկ․ կան նաեւ խօսքեր կամ պարբերութիւններ, որոնք

օտարոտի տգեղ դրոշմ կրելով հանդերձ՝ դժուարիմաց, կնճռոտ, բռնազբօսեալ եւ բոլորովին անբնական են, ինչպէս օրինակներէն պիտի տեսնենք. Թէպէտ եւ Մասիս իւր փառաւոր յաղթութեան օրն հռչակած էր՝ Թէ Խրթին, անհասկնալի ըլլալու ջանքը որ դեռ մօտ ժամանակներս մեր գրողներուն պարծանքն էր, ծիծաղելի ըլլալով վերցաւ։ — Հարցընենք Մասիսի. եթէ առաջիններուն ոճն ծաղրելի էր, այժմու երիտասարդ գրողներուն ոճն ի՞նչ է։ Ի տարբեւ ի տես գրուած պարբերութիւններէն ոմանք դժուարիմաց, խրթին եւ մթին լինելէ զատ, շատ անբնական են եւ հայերէնի հոգիէն բոլորովին օտարացած. ոմանք վերջին աստիճան կնճռոտ, խառնակ, եւ ըստ օրինաց իրապաշտ դպրոցին; ամենաչնչին մանրամասնութիւններ նկարելու անտեղի ջանքերով բռնազբօսեալ, խորթ կազմուածներ կ'ընծայեն մեզ. իսկ ոմանք դիւրգ ու գողտրիկ եւ կամ նոր ձեւանալու դիտաւորութիւնն յայտնապէս երեւան կը հանեն։ Օրինակներ անհամար են. թիւ ու չափ չունին. մի քանին, շատ վերջիններէն, շատ թարմերէն, բաւական են մեզ։

Ա. — Ժամացոյցը զարկաւ վեց հարուած դանդաղ եւ ծանրալուն. կը ներէ հեղինակն, այս հայերէն չէ։

Բ. — Մտաւոր ընդարմացման ծանծաղուտին մէջ հետզհետէ խորասուզուելով... ծանծաղուտ եւ խորասուզուիլ ո՛րչափ մեծ հակասութիւնք են. մեկնութեան պէտք չկայ։

Գ. — Փէշերը ծուիկ ծուիկ կը կախուէին անհամար ցեխացայտքերով աստեղազարդուած։ — Ցեխի անհամար ցայտուքներով կիտուած. այնպէս չէ՞։

Դ. — Թերթատած ճերմակ վարդի թերթք ծփուն. — Ճերմակ վարդի թերթերն բրդած ցիրուցան եղած ։

Ե. — Խարտեաշ մազերը գլխուն վերեւ համբարձիկ. — Խարտեաշ մազերն գագաթին վրայ ամփոփած. — Բացխփիկի պէս համեղ չէ ։

Զ. — Բարիզեան այժմէութեան վրայ լիուլի տեղեակ է. — Բարիզի օրական նորաձեւութեանց ամէն ճիւղին տեղեակ է ։

Է. — Ի՜նչ մղձկոտ նկարեղէն երաշխներ, ի՜նչ գունագեղ անծիր արտայայտութիւններ ։ — Մեկնող ո՞վ է ։

Ը. — Ձմեռուան հով մը իր բոլոր թօքերը կը պատըռտէր, խաւարին մէջ պտտցընելով իր խօլական երգին վայրենի քմահաճոյքները ։ — Բռնազբօսեա՜լ ։

Թ. — Լանթերնան իր հեշտաթաւալ ճռուողումը կը ճըլւըլայ իր մեղմահոս անուշ ձայնալեականներուն հետ մետաղեայ հնչուն խաղերու զուարթ սոտոստումը տանելով ։ — Երաժշտութենէ չենք հասկանար ։

Ժ. — Վերէն, լուսինը, միշտ պայծառ ու զուարթ, գիրուկ դեղին այտերը լուսաշող, աչքերը խոշոր խոշոր բացուած, ահագին լայն բերանով կը յօրանջէ, կարծես կը խնդայ, անհոգ ու չարաճճի ծիծաղով մը ։ — Բռնի ծիծաղի դէմ՝ բռնի ծիծաղ ։

ԺԱ. — Լուսին կար այդ գիշեր, խոշոր լուսին մը ուռճալիր կատարելութեամբ՝ որ իր արծաթ գանկը զենիթին աստեղացան մակերեսին վրայ կը գլորէր ։ Ուռճալիր կատարելութիւն ! սքանչելի է. ի՜նչ պաղ ու տափակ է լիալուսին ։

ԺԲ. — Փտութիւնը որ կըսկսի, դագաղին մթու-

թեան մէջ միս մինակ, կը ձանձրանայ. — Ո՞ւր էք, ի՛րապաշտներ ։

ԺԳ. — Այն հոգեկան վայրկեաններուն յորս սիրագեղ զգայումներ մերկապարանոց կը փոխանակուէին, եւ երկուքնին միմեանց նայելէ արբշիռ ու համբուրաբաղձ հրայրքով առլցեալ, զգլխիչ յափրանաց կը մատնուէին լուսնկայի դիւթահմայ պաղպաջման ներքեւ ։ — Գանձ որ պահել պէտք է հողին տակ ։

ԺԴ. — Որչափ ժամանակ մնացի այսպէս թմրած, կէս քուն վիճակի մէջ, չեմ գիտեր, բայց յանկարծ սթափեցայ հառաչանքէ մը որ իր մէջ պոռալու անսանձ տենչ մը ունէր, սրտի անդունդներէն դուրս պոռթկացած ու իր մէջ բերելով աւերակ, ջարդուփշուր սրտի մը սփոփանքը ։ — Անիմաստ փքանք ։

ԺԵ. — Մոլեգնօրէն տապլտկելով տժգոյն զայրոյթի մը մէջ որ կը ծնէր այդ անդիմադրելի անկարողութենէն, ջիղերու ծայրայեղ գերագրգռութեամբ մը ամբողջ մարմինս թրթռագին, երեւակայութիւնս խօլ ու հիւանդագին ձգտման մը մէջ պրկուած, եզական, ահեղ, անբնական բաներ զգալու, տեսնելու, ընելու իղձով մը տոչորելով, ամուլ մնացած բոլոր այդ ճիգերուն կուտակումին տակ ընկճուած, ինչ ընելիքս չգիտէի, յիմարութեան եւ հիւանդութեան ընդմիջակաց վիճակի մը մէջ, անկարող ստեղծելու եւ հասկնալու, անկարող նոյն իսկ քնանա-
ւ, հրավառ կոպերս այնչափ չոր զգալով որչափ ւոքս թանձրացած ։ — Արժանի մրցանակի ։

Ահաւասիկ ձեզ հայերէն խօսքեր, կամ Մասիսի ուատած գրականութեան ընտիր կտորներ, այս-

ինքն Զ.—Ջ.—Կ.—Փ . . . եան ընկերութեան աr-sաղrոյpնեr ։

Գիտենք բաւական երկարեցան մեր խօսքերն. սակայն այլազգ գործել կարելի չէր . մեզ համար անգին եւ յանհունս թանկագին նիւթոյ վրայ էր խնդիրն . ոչ միայն երկար խօսակցութիւններ , այլ նաեւ չատ խիստ աշխատութիւններ , ուքնութիւն , հոգ , տառապանք եւ ամէն տեսակ նեղութիւն յանձն առնուլ՝ մեզ պարտք էր նուիրական , երբ ծանր վտանգի մէջ կը տեսնէինք մեր լեզուն ։ Այո՛ , լեզուն վտանգի մէջ էր , եւ դեռ այսօր վտանգ կայ . վասնզի մեր երիտասարդ գրիչներն կատաղաբար յարձակած են մեր արդի լեզուին վրայ եւ կացին ի ձեռին կը ջանան կտրել , կոտրել եւ անխնայ ջախջախել զայն , իբրեւ թէ իրենց ստացուածքն , իրենց սեփհական ինչքն լինէր ։ Կը կարծեն թէ լեզու մի՝ հինգ վեց հոգւոյ քմածին , ցնորական գաղափարներուն խաղալիկ է , եւ թէ ներեալ է փոփոխել զայն , օտար ձեւ , օտար գոյն տալ , վեր ի վայր շրջել , առանց ըմբռնելու թէ ի՞նչ է լեզուի ծունն ու հոգին՝ եւ այդ գաղափարներէ դրդեալ մեծ մեծ եւ այլանդակ նորութիւններու յախուռն ձեռք կը զարնեն ։ Մեք ուրիշ տեղ(*) յայտնած ենք թէ քա-

(*) Գիտեմ թէ հակառակորդքն մեր զայրացին յոյժ եւ աղաղակ բարձեալ ասասցեն. Զի այդչափ տագնապիք, Էր այդչափ վըրդովեալ էք, առ իմէ գոռայք, գոչէք եւ ընդվայր բարբանջէք. զի փոյթ է ձեզ զոճոյ մերմէ եւ զմատենագրութենէ։ Մեք քաջ գիտեմք մատենագրել . . . եւ զարմացողք անթիւ են մեր։ — Այսպիսեաց տամք պատասխանի. Բարեկամք, մի այնչափ սաստկանայք, մի յախուռն արշաւէք։ Մեզ փոյթ է եւ կարի մեծ փոյթ զգարգացմանէ արդի

նի որ ազդարարութիւն, բողոք, դիմադրութիւն չտեսնեն իրենց դէմ՝ այդ գրականութեան մրողներն, անտարակոյս է թէ իրենց ապականիչ քանդիչ գործին մէջ յառաջ պիտի երթան։

Այն առաջարկութիւնն որ եղաւ մեզ բարեկամի մի կողմանէ արդի հայերէն լեզուաւ գրութիւն մի հրատարակելու՝ շատ պատեհ առիթ էր եւ փութացինք յօժարակամ ընդունելու. վասն զի սոյն գրութիւն պատրուակ մի, առիթ մի էր բողոք բառնալու եւ ամբոխին հասկանալի լեզուաւ մէջ տեղ դնելու պարզելու քանի մի թեթեւամիտ ու ճամարտակ գրագէտներու շահատակութիւններն, որ տիրել կը ձգնին լեզուին եւ մղել տանիլ թիւր եւ անել շաւիղներու մէջ։

Արդարեւ ծանր էր մեզ՝ գործ, զբաղում ի մի կողմ թողուլ եւ դէզ մի գրուածներ խուզել, որո-

---

հայերէն լեզուի. քանզի յետ խափանելոյ հնոյն, չիք մեր այլ լեզու. եւ եթէ բողոքեմք զոճոյ ձերմէ և զմատենագրութենէ զոր արկանէք ի հրապարակ, այն իրաւունք են մեր. զի հայ մատենագրութիւնն չէ ձեր միայն, այլ մեր եւս է։ Ինչ մի յորում է եւ մեր մասն հասարակ՝ ոչ կամիմք եւ ոչ կարեմք թողուլ ձեզ աւերել ապականել ըստ կամի եւ ըստ քմաց իբրեւ թէ ձեր միայն ստացուած իցէ։ Երկրորդ անգամ՝ մի՞ ինչ պարծիք թէ զարմացողք եւ զովիչք բազում են ձեր ... Մի՞թէ արժիցէ՞ն ինչ զարմանք եւ դրուատիք խուժանին։ Մինչդեռ տգէտքն զարմացեալ ապշեալ հային ի ձեզ, Թաքուցեալ ի կողմն ուրեք Արգոս՝ կայ եւ դիտէ զձեզ. աչք նորա ի ձեզ առեալ են ... բան զվարձսն զոր կորզել հնարիք ի խուժանէն, ո՞չ կշռիցեն արդեօք առաւել արհամարհանքն Արգոսի եւ ծաղրն նորա ... ո՞հ, ծաղրն որ սպանանէ։

Ճաշակ Ոսկեղէն Դպրութեան։

նել , մերթ յաջ արշաւել , մերթ ի ձախ յարձակիլ , մերթ մին յանդիմանել , մերթ միւսն վիրաւորել . սակայն առաւել եւս ծանր , մանաւանդ թէ անհանդուրժելի ցաւ էր՝ լեզուն այնչափ թշնամանուած , անարգուած եւ ցեխերու մէջ թաւալած տեսնել եւ չբողոքել ։ Գիտենք, մեր ազդարարութիւններն ու բողոքներն ազդեցութիւն չպիտի ունենան մեր երիտասարդ գրիչներուն որոշման վրայ՝ կասեցունելու համար զիրենք այդ աղետալի ընթացքէն ։ Միայն կ'ուզենք բարեկամական խրատ տալ , յորդորել որ իրենք իրենց կողմանէ , լուրջ կերպով , անկողմնակալ եւ ձեռն ի սրտի՝ ուսումնասիրեն լեզուներու բնութիւնն եւ յատկութիւններն , մանաւանդ իրենց մայրենի լեզուին բնութիւնն , հոգին . քննեն տեսնեն թէ ի՞նչ կայ լեզուի մի մէջ որ անփոփոխ , անշարժ , անդրդուելի է , եւ ի՞նչ՝ զոր հնարաւոր է փոխել եւ ի լաւն շրջել . մաղեն զտեն օտարութիւններն որ կը սպրդին , եւ ընտիր նուրբ ճաշակի թելադրութեանց միայն մտադիր՝ լեզուն անեղծ , անվթար պահելու հոգ տանին . զգուշանան ողջամիտ դասին քննադատութիւններէն , նաեւ ծաղրէն , եւ մանաւանդ ապագայ սերնդոց դատաստանէն ։

## ԲԱՌԱՐԱՆ

### ՅԱՌԱՋԱԲԱՆ



Կը նուիրենք բանասիրաց բառարան մի փոքրիկ որ շատ զուարթութիւն ու ծաղր պիտի հայթայթէ . այո՛ , զուարթութիւն ու ծաղր որ ամենէ ծանր եւ

*ամենէ խոհեմ մարդու անգամ անհրաժեշտ են . վասն զի կենաց դառն վայրկեաններն՝ թեթեւ եւ անմեղ զբօսանքներէ ընդհատուելով պարտին երբեմն երբեմն մեղմանալ ։*

*Այս բառարանս որ կրնայ չարունակուիլ յաւիտեանս , քաղուած է աստի անտի . կարգադրութեան նկատմամբ՝ հարկ էր այբուբենի կարգաւ ներկայացընել . բայց մեք խառն դրութիւն մի ընտրեցինք , որով իւրաքանչիւր բառ իւր տեսակին մօտ կը գտնուի , սխալ՝ սխալի քով , խորթ՝ խորթի քով եւ ծաղրելի՝ ծաղրելւոյ քով ։*

*Իւրաքանչիւր բառ՝ ինչպէս յայտնի է , կամ ածական է , կամ գոյական եւ կամ բայ . — գոյական եւ ածական միատեղ՝ առանց փակագծի՝ անտեղութիւն , անպատեհութիւն , գաղափարաց անյարմարութիւն կը նշանակէ ։*



**Ա Ն Կ Ա Ն Ո Ն**

*Մշտնջենի.*
*Մաքրենի (զգայականութիւն).*
*Ծաւալունութիւն.*
*Սիրունօրէն.*
*Ծաղրելիօրէն.*
*Ջլաձգօրէն.*
*Մտածնօրէն.*
*ագեվին.*
*տովին.*
*յճմտօրէն.*
*ինովային (տատանում) ։*

**Ա Ն Տ Ե Ղ Ի**

*Հեշտազդեցիկ.*
*Գովանի (փափաք).*
*Նուրբանուրբ.*
*Հրուտ (աչք).*
*Զգայնոտ.*
*Խոհանք.*
*Խոնջէնք.*
*Զարթօնք.*
*Ցնծատեղի.*
*Շիրմաստան ։*

## ԱՆԻՄԱՍՏ

*Հրազայր (կայծակ).*
*Բոցաշուրթն (համբոյր).*
*Դեղեւուն ոյժ.*
*Կծուակիծ.*
*Գրգանոյշ.*
*Ժպտանոյշ.*
*Գերարծուփ (հոգի)։*

## *ԱՆԳՈՐԾԱԾԵԼԻ, բայց ի հնճուկս ընտիր ճաշակի՝ բիւր անգամ գործածուած.*

*Խնծիղ.*
*Կայտիռ.*
*Աղկաղկ.*
*Շառայլք։*

## ԽՈՐԹ

*Մոլետատան (ալիք).*
*Մարտագոռ.*
*Ժպտունակ (դէմք).*
*Տխրունակ.*
*Երփնազարգմանակ.*
*Համբուրամաշ (աչ).*
*Գեղաբուրիկ.*
*Երկնաբուրիկ.*
*Սիրատարփիկ.*
*Սիրատարփուն.*
*Արտայայտազուրկ.*
*Բուրումնաւէտ.*
*Կայթատօն. (կայթել՝ կաքաւելու տեղ).*
*Զարզունակ (քարոզ).*
*Խոստմնալից (պուրակ).*
*Ներհայեցութիւն.*
*Մտասեւեռութիւն.*
*Սեւեռամտածում.*
*Գեղապատեհ (զուգադիպութիւն).*
*Փթթինազարդութիւն (նարեկեա՞ն անհամութիւն).*
*Արտադրոյթ.*
*Գեղերփել.*
*Մելանոյշ (տխրութիւն).*
*Ցորդացայտում.*
*Խնկաւէտում.*
*Տարրաբաղկացում.*
*Ծգնաժամային (պրկում ձեռաց).*
*Ինքնախորհիլ.*
*Գալերթել.*
*Մաղրազօծել.*
*Մեղմմուծել.*
*Ծոխապանծ (ապարանք).*
*Երփնազեղութիւն.*
*Երփնաճոխութիւն.*
*Երփներանգում.*
*Կանգնազեղ (հասակ).*
*Թարմազեղ (փունջ).*
*Տարփատենչ.*
*Տարփատենդ էակ.*
*Շնորհաղու (կերպարանք).*
*Սոսկասեւ (խորհուրդ) երբեմն նաեւ՝ հոգ չէ, սեփ սեւ.*
*Սաղապաձեւ (ծուխ).*
*Աշնասաղարթ տերեւներ. մի-*

Ժանեկագործել.
Մարգարտագործել, ևն. ևն.
Արտասուահոսել.
Ախտավարակիլ.
Կապտորակել.
Արեւերփնել.
Մնչերգել.
Ծափողջունել.
Ցօղահայիլ.
Թելակաքուիլ.
Մկնաթափիլ.
Գունազեղել.

անզգամայն սխալ.
Հեղեղասաստ արտասուք.
Սիրաթրթիռ (քնար).
Կաթնալանջ (կոհակ).
Վիրապերախ.
Արբեցամետ.'.'.'
Հեզատրոփ (սիրտ).
Ցոփուհի.
Թաթաւուչ. (որչափ կը ծիծաղի՝ վայելուչ).
Դաժանանսիհ։

## ԽՈՐԹ ԵՒ ԿՈՇՏ

Բազմաբաղձիկ.
Տխրահունչ.
Վայրենաշառաչ.

Սրտայօշօշ.
Սոսկավիթխար.
Փխրուն գոհունակութիւն։

## ՍԽԱԼ

Տերեւներուն կանաչ Սաղարթները.
Լիուլի ծաղկունք (այսինքն՝ բազում).
Հինաւուրց ծառ.
Կնային.
Սողունային.

Սեթեւեթ շարժում.
Աղօտ սարսափ.
Ճապուկ միտք.
Կպչուն փայլ (շաքարեղէններու).
Դալկուն (ճակատ).
Խօլ (բոյս). խօլ . . . անհեն բան, երբեմն եւս խել խօլ։

## ԾԱՂՐԵԼԻ

Օդակարկառ սրունք (այսինքն՝ կախեալ սրունք).
Բեծամխոր խօսակցութիւն.
Թաշտուն բարեւ (այսինքն՝ հօ-եւանցի ողջոյն).
Ոտնդալից ժխոր (Մազխատրոսեան ճաշակ).

Գիշերազուարճ (հեշվածի, շէքէր-ճի, մահալլէպիճի, ևն.).
Քմածին տաղաւար (այսինքն, վրան՝ որոյ զարդարանքն տարօրինակ են).
Նշաչափայլ (շապիկ).
Միամիտ զմբէթ.

Տարածուն ( անձնաւորութիւն )· (այսինքն հանրածանօթ, համբաւաւոր, հռչակաւոր).

Ծալլապատիկ բազմիլ։

## ՑԻՄԱՐԱԿԱՆ

Փշուր խոհեր.
Ցանկերգային շուրջպար·
Տխրաւաչ երգել.
Շառաչաձայն բաղխել (անձրևի).
Ամէնափոր ցնծուհի ( շատ գէր պոռնիկ)։

## ՕՏԱՐ

Դրողում (կէս հայ՝ կէս գաղիական)։

## ՅԱԻԵԼՈՒԱԾ

Ցանկերգ·
Քայլերգ·
Համերգ .
Սիրերգ·
Ջօներգ.
Սուլերգ·
Խօլերգ·
Մեներգ.
Ջայնանուագ.
Մելանուագ·
Սիրանուագ·
Քմանուագ.
Արտասուանուագ.
Գորտանուագ։

Այսչափ երգերով եւ այսչափ նուագներով Հայոց արդի լեզուն ճոխ լինելէ զատ, անհամեմատ կերպով ներդաշնակ եւս է։

## ՎԵՐՋԱԲԱՆ

Ի տես այդ հաւաքածոյի՝ կը դողայ մարդ, կը սարսափի, կը քստմնի, սարսուռ կ'անցնի անդամներէն եւ գրեթէ զգացած դառնութեան հետ խառն՝ սուրբ բարկութիւն մի կը համակէ հոգին։ Ո՞ւր է, կը խորհի ինքնիրեն, այն ազնիւ չքեղ ու փառաւոր

*լեզուն, եւ ո՞ւր այժմու մրոտ, աղտոտ ու գարշահոտ լեզուն. ո՞ւր այն հին հարազատ, բնական եւ գեղեցիկ պարզութիւնն, եւ ո՞ւր այսօրուան անհամ, անիմաստ, կոշտ ու խառնակ խորթութիւններն։ Այս իրար մերժող դրութիւններն, այս իրարու հակառակ ուղղութիւններն յիրաւի տեղի կուտան տխուր եւ վհատեցուցիչ խորհրդածութեանց, եւ մարդ կը գոչէ ի խոր սրտէ. Երանի՜ թէ Երեմիա մարգարէ Հայ լեզուի վրայ ողբար իւր ողբերն, քան թէ Երուսաղեմի վրայ։*

[illegible]



## ՀԱՄԲԵՐԷ ՉԱՐԱԽՕՍՈՒԹԵԱՆ



Անձնասիրութիւնը կը փնտռէ գովութիւն, կը սրտմտի, կը զայրանայ պարսաւանաց դէմ. իսկ արդար եւ ճշմարիտ առաքինին կը գործէ, ոչ՝ որպէս զի մարդիկ տեսնեն, լսեն եւ ծափահարեն, այլ՝ որպէս զի պարտքը կատարած ըլլալու ներքին խոր խաղաղութիւնը վայելէ։ Արդարեւ փափաքելի էր՝ որ մարդոց չար լեզուէն անվնաս մնայինք. անցանք իրենց գովութիւններէն, գոնէ խիղճ ունենային ու չ'բամբասէին. բայց, ի՛նչ օգուտ, այս այսպէս է. մարդոց չարախօսութենէն եւ անիրաւ քննադատութենէն զերծանել անկարելի բան է։

Ստուգիւ, առաքինութիւնն ամենուս առ հասարակ յարգելի է, զգացմանց ազնուութիւնն ամենէս անխտիր պաշտելի եւ խնկելի է. միշտ իրարու կ'ըսեմք եւ կը գրեմք. — Ի՜նչ ազնիւ բան է կրից յաղթանակել, թշնամւոյն չարախօսութեանց համբերել, հեշտութիւն եւ հանգիստ արհամարհել, պարտուց մէջ հաւատարիմ լինել, բաղդի այլեւայլ յեղափոխմանց մէջ սիրտը միօրինակ անվրդով բռնել։ — Բայց երբ մէկն համարձակի մատով ցոյց տալ եւ ըսել. Ահաւասիկ մարդ՝ որոյ զգացմունքներն շատ ազնիւ են, գիտէ քաջաբար տեղի տալ անարժան կրից, համբերատար եւ ժուժկալ հոգի ունի, գովութիւն եւ պարսաւ հաւասարապէս անկարեւոր կը դատի, արի եւ տոկուն մարդ է, ոչ երբեմն ի յաջո-

դութեան իւրում յախորտ եւ ինքնահաւան էր, եւ ոչ այժմ ի ձախողութեան վատ է եւ թոյլ, — չ'եմք հաւատար։ Եթէ ցոյց տրուած անձին գովելի յատկութիւններն շատ պայծառ են, կամ շատ կենդանի նկարագրեց՝ ով որ գովեց, յայնժամ ճշմարիտ խօսելուն վերայ կը կասկածիմք, կրկին եւ կրկին ձանձրացնելու աստիճան կը հարցունեմք. Իրա՞ւ կ'ըսես, իրա՞ւ տեսար. մինչդեռ ըստ օրինաց եղբայրսիրութեան՝ որ դիւրաւ չ'հաւատար չարին եւ չարախօսին, եւ մանաւանդ բարւոյն երեւոյթն անգամ հաճելի կը համարի, պարտական էինք փութապէս հաւատալու։ Ո՛չ այսչափ, ձեռքի տակէ կ'աշխատիմք՝ որ հակառակ վկայութիւններ երեւան բերեմք եւ պատճառ ունենամք գովուած անձը պարսաւելու։ Երբ վերջապէս չ'յաջողիմք, այլ ակն յայտնի ապացոյցներ ճնշեն, արդեամբ հաստատեն եւ զգալապէս շօշափել տան գործն եւ գործողին արժէքին վրայ գոռալով խօսին մեր խղճին, յայնժամ կը փոխեմք տեսարանը, գործը կ'ընդունիմք՝ գործողը կը մերժեմք, նպատակին վրայ մուր կը քսեմք, մինչդեռ խոհեմութեան պարզ կանոնը կը պահանջէ մեզմէ՝ որ ինչպէս տեսանք՝ այնպէս դատեմք. իսկ նպատակի համար դրդեալ խորհրդոց վրայ դատաստան ընել ծածկագիտին Աստուծոյ յանձնեմք. զի նպատակ եւ խորհուրդ քննել եւ ստոյգ գիտնալ թէ ինչ կ'անցնի չ'անցնիր մարդուն սրտին եւ երիկամանց մէջ՝ Աստուծոյ միայն պահեալ է, որ սրտագիտութեամբ կը ճանչէ ամենուն իսկական արժէքը. իսկ մարդիկ յայսմ միշտ մթին եւ անել շաւիղ կը քալեն, իւրաքանչիւր որպէս եւ կամի՝ մէկը միւսէն

հեռի եւ հակառակ գիծեր կը բռնեն, զիրար չեն հասկնար, չեն համաձայնիր, վէճը վէճ կը մնայ։

Ի՞նչ եւ ո՛րքան կրնաս բարի եւ բարեգործ լինել, եղի՛ր. չարախօսին բերան բռնել անկարելի է. ընդէ՞ր. զի մարդիկ ի մտի կամ ի գաղափարականին կը յարգեն առաքինութիւնը, բայց գործողը կ'ատեն, կ'արհամարհեն։ Դու քո անձնական փորձովդ եւ ստուգութեամբ որքան պնդես եւ աղաղակես՝ թէ սա մարդն առաքինի է, միշտ հակառակորդ մը պիտի գտնես ըսող՝ թէ Ո՛չ, ան գէշ մարդ է, ո՛չ. «Մեք գիտեմք զի այրն այն մեղաւոր է». Յովհ. Թ. 24։ Եթէ մօրէ կոյր ծնած մէկուն աչք եւ լոյս պարգեւես, տակաւին հաւատալի չես, դարձեալ բարի մարդ չես. այլ կամ միջոցներդ քննադատելի են, բէեղզեբուղներ ունիս օժանդակ՝ որ զայն քեզ գործել տուին. կամ նպատակդ բարի չէ, զի շաբաթը չըպահելու գայթակղութիւնը գործեցիր։

Արդ, որովհետեւ չարախօսութենէ զերծ մնալ անկարելի է, ինչպէս ամէն մանրամասնութեամբ Ս. Յովհաննու իններորդ գլուխը կը պատմէ, կը պատուիրեմ քեզ՝ որ գործես ինչ որ պարտքդ է գործել. մի՛ փնտռեր գովութիւն, այլ մանաւանդ սպասէ որ այլք չարախօսեն եւ դու համբերես։

———

## Ո՞ՅՔ Կ'ԸԼԼԱՆ ԱՆԿՐՕՆ



*Ստոյգ է որ աշխարհի վրայ այժմ եւ ասկէց յառաջ մեր հարց օրերն ալ գտնուած են անկրօններ. բայց որպէս շատ չեն կրնար լինել այնպիսի արտաքոյ կարգի շնորհալիներ՝ որոց հաւատքը եւ բարոյական քաջութիւնը ամենուս հիացումը եւ սէրը գրաւէ, նոյնպէս ալ իսկապէս անկրօններն կարծուածին չափ բազմաթիւ եղած չեն։*

*Քրիստոսի եկեղեցին այն անդաստանն է՝ որոյ մէջ որոմն մինչեւ ի ժամանակ հնձոց պիտի գտնուի. սա որպէս գերազանց քրիստոնեաններուն վրայ կը ցնծայ՝ իսկապէս անկրօններուն վրայ եւս պիտի տրտմի։ Կարծեցեալ անկրօններն են՝ որ բազմաթիւ են. շատերն իրենք կ'ըսեն իրենց համար թէ կրօնք չունին։ Այսպիսեաց հետ վիճաբանութեան բռնուիլն անտեղի է, ասոնց վրայ ապացուցիւ երթալ աւելորդ է. այլ ինչ որ են իրապէս՝ երեւան հանելն բաւական է, առակեալ ագռաւին նման փոխառեալ փետուրները փետտուելուն պէս՝ ներքեւը պիտի տեսնուի մարդ մը կամ անբարոյական կամ տգէտ կամ մնապարծ։*

*Մինչեւ հիմայ աշխարհի վրայ չէ տեսնուած մէկը՝ որ առաջ կրօնքին վրայ տարակոյսներ անկանին իտքը եւ յետոյ մեղանչէ կրօնքին դէմ. ցորչափ արկեշտ է մարդ, հաւատքի վերաբերեալ բաներէ ը պատկառի, բանականութեան ազդած խրատնեուն կ'անսայ, կրօնքին պատուէրները կատարելու*

դժուարութեանց համեստութեամբ կը տանի եւ կը կատարէ. իսկ բարքն աւրուելուն պէս կ'սկսանի կրօնքին մէջ երկբայելի մասեր գտնել, ի նմա մարդկային մտքի եւ բնական կարգի ներհակութիւններ նշմարել. կ'ամաչէ անբարոյական եմ, անկարգ եմ, մեղաց մէջ մինչեւ պարանոց թաղուած եմ ըսելու՝ անկրօն եմ կ'ըսէ: Այսպիսեաց սիրտը միշտ գրգռման մէջ ըլլալով՝ քաջութիւն չի մնար վրանին, կրօնքին պատուիրած յաւիտենական երկիւղները մտքերնէն չեն կրնար նետել, ի ծածուկ սարսափահար կը մնան. իսկ արտաքուստ իրենք զիրենք համարձակ ցոյց տալ կ'ուզեն, կ'երգեն եւ կը կանչեն կրօնք չ'կայ, բոլոր կրօնքներն չինծու բաներ են, ռամիկն անհաբեկելու համար հնարուած են եւ այլն: Այսպէս կ'ընեն մութէն վախցողները, զիրենք սրտտելու համար խաղ կը կանչեն, երբոր պատահի մութի մէջ քալել: Եւ ի՞նչպէս կիրքերն իրենց օգնութեան չ'կոչեն զերկմտութիւնն. ներսէն բանականութիւն եւ խղճմտանք՝ դուրսէն կրօնք եւ տիեզերական դաւանութիւն չարունակ ամբակոծելու պէս կը զարնեն սիրտը. հարկ է այս յարձակումը վանել. կրօնքին ճշմարտութիւններն անմարելի բոցի պէս կը խանձեն եւ կը մաշեն պաշտած եւ երկրպագած կիրքերը. պէտք է, հիմնաւոր թէ անհիմն, որ եւ է համոզում մը ստեղծել՝ թէ այս ճշմարտութիւնները թէպէտ ահռելի՝ սակայն չինծու են, իրականութիւն չ'ունին: Այո՛, անկրօնութիւն կամ կրօնի ճշմարտութեանց վրայ երկբայիլ միայն եւ միայն բարուց անկարգութեան բերք է: Մարդուս մտքէն անհուն կարողութեան եւ սարսափելի արդարութեան գա-

դաւանորները ջնջել անկարելի է․ զի առանց այս գա-ղափարաց քաղաքակրթութիւն չի մնար տիեզերքի մէջ։

Եթէ կրօնքը մի միայն վերացական մի իմաստա-սիրութիւն ըլլար, բոլոր բանական խորհուրդներ միայն պարունակէր, գործնական մը պահանջող ճշմարտութիւններ չ'ունենար, հաւատացեալ ըլլալու համար բաւական սեպուէր տեսական համոզումը, մէկ հատ անհաւատ չէր կարելի տեսնել։ Յանցանքը կրօնքին է որ գործնականներ կը պահանջէ, չ'գոր-ծադրողին ալ պատուհասի սպառնալիք կ'ընէ․ ասոր համար մեր կարծեցեալ անկրօնն ալ՝ ըստ որում կրից թելադրութիւններն անսանձ վայելելու սովո-րած է, խիղճին քաջալերելու համար կը պարտա-ւորի դաւանիլ թէ այս կեանքէն անդին բան չ'կայ, յարութիւն մեռելոցը սուտ է, հոգւոյ անմահութիւն Աստուածն առասպել է։ Իրաւունք ունին․ զի պարտուց լուծը թօթափելու համար հաւատոյ լուծը թօթափելու է․ Թող կրօնքը չ'հալածէ զանկարգոյականը, որպէս զի սա ալ զինքը չ'հալածէ։

Կրօնից ճշմարտութիւններն որ դարաւոր են և տիե-զերական եւ մեծ իմաստուններէ ընդունելի եղած եւ քարոզուած՝ սրիկայ մարդոց բանը չէ հերքել․ ար-տաքոյ կարգի տաղանդ պէտք է՝ որ դարաւոր եղելու-թեանց բոլոր պարագայները քննած, բոլոր ազգաց վարդապետութիւնները բաղդատած, մարդկային հոգ-ւոյ բոլոր խորութիւնը տեսած եւ ուղիղ եզրակացու-թիւն մը կազմած ըլլայ, ինչ որ անկարելի է։ Անկրօն նմք ըստղներուն մտքին մօտեցիր, եւ ահա պիտի տես-նես՝ որ բոլոր գիտցածնին տարակուսէ անդին չ'անց-նիր, սովորական եւ ռամիկ կարծիքներ՝ որոց ոչ

հիմը կայ, ոչ սկզբունք եւ ոչ հետեւանք. Թեթեւաբարոյ եւ ծանծաղամիտ արարածներ՝ որոց բերանէն ուրիշ փաստեր չ'կան, այլ միայն անկէց անկէց լսուած խօսքեր, լզուած առարկութիւններ, սերտուած ծեքաբանութիւններ. գոնէ տարակուսելու չափ խելք կենար գլուխնին. բնաւ երբեք. զի տարակուսելն տարակուսանաց մէջ մնալու համար չէ՛, այլ դէպ ի ճշմարտութիւն ամենէն ապահով միջոցն է, զոր իմաստունք կը գործածեն սուտէն զգուշանալու՝ ճշմարտին պատահելու համար։ Մեր անկրօններն տգէտ եւ մոլամոլար մարդիկ են, որոց խնայելի է մինչեւ իսկ անկրօն լինելու բարակամտութեան համբաւը։ Ասոնք երբ օրհասի մերձենան, առանց ապացուցի ամէն կարծիք եւ տարակոյս մէկ կողմ թողլով՝ այլ եւս համոզում չեն մուրար, այլ մխիթարութիւն, եւ աստուածային անյիշաչարութիւնը կ'ուզեն ողոքել։

Այսօր այս ժամանակիս մէջ, յորում մեծաւ մասամբ բարքերն ապականեալ եւ սրտերն ուռած են, անկրօն եմք ըսողներ անշուշտ պիտի գտնուին. երեկի դպրոցական տղայն կ'ուզէ հասարակ մանկանացուներէն վեր բան մը կարծուիլ. զիրենք գիտնական համարել ուզողներ կ'ուզեն ցոյց տալ՝ թէ հասարակաց դաւանութեան եւ հասարակ ըմբռնմանց մէջ չեն կրնար թռչիլ, կրօնքն իբրեւ հասարակ գիտելիք իրենց տաղանդին չ'յարմարիր, հասարակ ամբոխին հետ քով քովի կալով չեն կրնար ծնրադրել առաջի անհուն էութեանն Աստուծոյ, եւ իրենց ձեռքերը բանալով պաղատիլ. «Աստուած իմ, ի քեզ յուսացայ, մի՛ ամաչեցից . . . զճանապարհս քո, Տէ՛ր, ցոյց ինձ եւ զշաւիղս քո ուսո՛ ինձ։»

Սակայն, ընթերցող, մի՛ հաւատար այս մնապարծ ջնջին արարածոց. սուտ են, բարոյական չունին, անկարգութիւն եւ արտառոց վարքերնին սրտերնին խանգարած է՝ պատճառն այն է։ Այս չքոտիներն լսեր կամ կարդացեր են՝ թէ այս ոք կամ այն ոք երեւելի գիտնականն, որ աշխարհի մէջ մեծ գիտնականի համբաւ ունէր, անհաւատ է եղեր, իրենք ալ անհաւատութիւն ձեւացունել կ'ուզեն՝ որ գիտուն համարուին եւ անհաւատ համբաւեալ գիտնականին համբաւոյն բաժնեկից ըլլին։ Ողորմելի՛ արարածներ, չ'գիտեն թէ կերպ մը գինովներ են՝ որ ձեռք անցածը կը նետեն կը կոտրեն։

Ո՛չ անկրօն կը մնայ եւ ոչ անկրօնութիւն, եթէ վերցունես մարդոց սրտէն բարուց աղտեղութիւնները, եթէ փարատես տգիտութիւնն, եթէ բժշկես մնապարծութիւնն։



## ԳՈՒԹԸ ԿԱՆԱՆՑ ՄԷՋ



*Գութը, որ ամենէն զօրաւոր կապն է մարդս իր Արարչին մօտեցնող, մեծ առնչութիւն ունի կարծէք կանացի բնաւորութեան հետ, որով յաճախ կուտայ նա իր բազմազեղուն սրտին. գթալ անտէրին, ներել անկեալին, մշակել խոպան մտքեր, կրթել սերունդներ, ի՞նչ աւելի հմայիչ պարապմունք, որոնք կինն կը վերացնեն իր բարոյական ամենէն բարձր աստիճանին։*

*Անշուշտ գութը պէտք է սկսի ինքզինքէն. անձը նուիրել ընտանեաց երջանկութեան, ամէն զոհողութեամբ լաւ կրթութիւն տալ զաւակներուն, ինք առաջին պանծալի օրինակն ըլլալ անոնց, սովորական կանանց գործը չէ։ Բայց երբ կին մը ունի իր պէտքէն աւելին, կը զատուի ամբոխէն դիրքով եւ կարողութեամբ, պարտք մ'ունի կարծեմ առ ընկերութիւնն՝ մօտենալով խոնարհներուն, երբ անոնք չեն կրնար մօտենալ իրեն։*

*Այդպէս կ'ընեն եղեր մեր հայ տիկնայք տարիներ առաջ, երբ ի միտ բերենք մէկ քանի նշանաւոր կիներ, որոնց յիշատակն այնչափ վառ մնացած է մեր մտքին մէջ։*

*Թողունք Սրբուհի Մայրապետը, որ ամենախոնարհ աստիճանի մէջ ծնելով՝ էջ մը գրուած է մեր արդի պատմութեան մէջ. յիշեմք անցողակի*

յաւէրժայիշատակն Տիկին Նազլը Վահան, որ միացը-նելով ազգամածութիւնն ուսումնասիրութեան՝ Օրթագիւղի մէջ կը հիմնէ Հայ Տիկնանց առաջին ընկերութիւնն «Աղքատախնամ» միանգամայն. ումանք գաղափարը տարտամ կերպիւ ըմբռնած ժողովրդեան մէջ զայն արծարծելով՝ կը հիմնէ օրիորդաց առաջին կարեւոր վարժարանն Ս. Հռիփսիմեանց Նուիրեալ: Աջակից ունի իրեն մի քանի ազնուամիտ ընկերուհիներ, եւ այդ Տիկնայք անձամբ կը հսկեն կառօտեալներուն պէտքին, վարժարանին յառաջդիմութեան, նախախնամութիւնն կ'ըլլան ամբողջ գիւղին: Եւ երբ Տիկին Վահան կ'ստիպուի Բերա հաստատուիլ, միշտ կ'այցելէ իւր սիրելի վարժարանն:

Կը յիշեմ ձմեռ օր մը հակառակ ձիւնին եկած էր Բերայէն. հարցուցին թէ ինչպէս յաջողած էր քալել. «Զաւակներու համար, - ըսաւ խնդալով, չախմայ մուճակներ հագայ կօշիկներուս վրայէն.» Եւ մենք մեր տղայական միամտութեամբ բնական կը գտնէինք իւր անձնուիրութիւնն: Տարիներ վերջ ալ ցնծութեամբ ծափահարեց Դըպրոցասէր Տիկնանց ընկերութեան հիմնադրութիւնն, որ իւր մէկ քանի սանուհեաց գործն է. օգտակար դատեց զայն եւ ընդունեց Ատենապետի պաշտօնը, զոր վարեց մինչեւ մահը:

Այժմ կ'առարկեն շատեր թէ անձնական այնչափ ծախքեր ունին՝ որ ոչինչ բան մը միայն կրնան ընել կառօտեալներուն. իրաւ ալ հեշտ չէ միշտ զոհողութիւն ընել կարենալ բան մ'ընելու համար. մէկ զգեստը չչինել զոր օրինակ, ինչպէս

ծանօթ տիկին մը, որբ աղջկան մը օժիտին մասնակցելու համար, եւայլն, եւայլն. Նոյն տիկինն ուրիշ առթիւ մ'ալ մերժած է իւր ունեցած մէկ թանկագին մագաղաթ Աստուածաշունչը ձեռքէ հանել խոշոր գումարի մը փոխարէն, եւ վերջը ձրիաբար նուիրած է զայն կարեւոր կրթարանի մը, իւր մեռած մէկ բարեկամին զաւկին կրթութեան համար։

Երջանիկ կնոջ համար հաճոյք մ'է զոգցես աւելորդ ժամանակը վատնել բարի գործերու. բայց երբ դժբաղդութիւնը ծանրանայ կնոջ վրայ, մին ամուսինը ողբայ, միւսը զաւակը, ի՞նչ կ'ուզէք որ ընեն, եթէ իրենց սուգը չբարձրացնեն առ Աստուած, նուիրելով անձերնին հանրութեան օգտին։

Կը յիշեմ չնաշխարհիկ կին մը, Վսեմաշուք Տիկին Եբրոս Գարաքէհեայ Երամեան, բարերարն իւր ամբողջ գերդաստանին, որ իւր ծախիւք ուսանողներ ղրկած է յԵւրոպա, նշանաւոր անհատներ հասուցած է, բժիշկներ որք հռչակ հանած են ժամանակին. իւր մէկ մանչ զաւակը կը մեռնի. կը թունաւորուի իւր չքնաղ կեանքը. բայց չի կքիր. կ'օրհնէ Աստուծոյ կամքը, եւ աւելի եռանդեամբ իւր սիրելի բարեգործութեանց կը կառչի. մեծափարթամ է. բայց մինչեւ այն ժամանակ առատ առատ տուածը բան չի համարիր. ինքզինքը կուտայ աշխատութեան. ձեռագործներ կը շինէ, կը ծախէ սուղ գիներով. կ'առնեն իւր թանկագին ձեռքէն. բայց չի գոհանար. կ'ուզէ աւելին ընել. կը ճանչնայ Հիւանդանոցի հոգաբարձութիւնը. Տիկնանց խնամակա–

լութիւն մը կը կազմէ . ինքն է հոգին . ժամերով կ'այցելէ Ազգին տունն . գիշեր կ'անցունէ հոն իբր ուխտատեղի մը ։ Ի՞նչ չի կրնար գործել խելացի կին մը որ գերազանցապէս բարի է եւ բարձր շրջանակի մէջ ծնած ։ Անձամբ կը հսկէ անոնց պէտքերուն . իւր ապարանքին մէկ մասն արուեստանոցի կը վերածէ . հոն կը ձեւուին , կը կարգադրուին զգեստները , կոկիկ մաքուր գործեր , որոնք հագնողը օրհնութիւն միայն ունի շրթանցը վրայ ։ Կաղանդ է . պտուղ , անուշեղէն կը տեղան . ընտանեաց մէկ անդամին տօնախմբութիւնն է , տօն մ'ալ հոն կ'ըլլայ , տօն ցնծութեան եւ գոհունակութեան այդ անտէրներուն համար , որք մայր գտած են ։ Յուզմամբ կը յիշեմ մանկութեանս այս յիշատակը . օր մը միասին էի . Եւրոպա կը մեկնէր . մնաք բարով ըսելու կ'երթար իւր որդեգիրներուն . միտքս ուրիշ բան չէ մնացած այդ այցելութենէն , բայց եթէ ինքը , սեւազգեստ այլ ժպտուն , գեղեցիկ հրեշտակի մը հանգոյն , մէն մի հիւանդի սնարին մօտենալով՝ մէյմէկ նուէր կը սահեցնէր անոնց ձեռքը , յուսալիր գողտրիկ խօսքեր ուղղելով մէն միոյն ։

Տարիներ վերջ , կրկին այցելութեան գացած էինք Հիւանդանոցը , այժմու նորակառոյց շէնքը , հսկայ գործ մը միւսին քով , անվերջանալի լոյս սրահներ , ճերմակ անկողիններ , փառաւոր սանդուղներ . բան մը սակայն կարծէք կը պակսէր հոն ինձ համար , կնոջ մը գուրգուրանքը ։ Երբեմն հիւանդ այլ ուրախ դէմքեր դիմաւորեցին զմեզ , որք յուսալից կ'սպասէին այդ այցելութեան . այժմ տխուր արձաններու նման մարդեր , նստած կամ պառկած , կարծէք նե-

դանդաղով մեզ կը նայէին, իբր թէ ըսել ուզէին. Ի՞նչ կայ հետաքրքրական մեր թշուառութեան մէջ. Ու-խիղճ մը ունեցանք անպէտ տեղ զիրենք նեղելնուս համար։

Արդեօք տակաւ առ տակաւ կը ջնջուի՞ն մեր մէջէն այդ բարի աւանդութիւնք. հիմայ նոյնչափ հազուագիւտ են այդ կարգի սքանչելի տիկնայք որչափ առաջ, երբ ճշմարիտ դաստիարակութիւնը պէտք էր բազմացնել նոցա թիւը։



## ՀԻՆ ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ԴԵՐԸ



Եթէ կ'ուզէք փայլուն օրինակ մը բարոյական ուժոյ գերազանցութեան ի վերայ նիւթական զօրութեան, առէ՛ք հին Ելլադան, այն երկիրն որ փոքր էր այնքան եւ, եւս առաւել, ի փոքր մասունս կը-տորակեալ, եւ քան զոր սակայն չեղաւ աշխարհ մը մեծագոյն։ Շատ աւելի կանուխ փայլեցան Եգիպտոս, Ասորեստան, եւ Վեդայք երգուեցան ի Հնդիկս. այլ սակայն ո՛չ մին հասաւ այն քաղաքակրթութեան բարձրութեան ուր բացառիկ շողիւնով ճառագայթեց Յունաստան, իւր ճաճանչները սփռելով յընդհանուրս եւ արձակելով պայծառ ժամանակաց խորութեան մէջէն մինչ առ մեզ։ Յունաստան իւր կրօնքն ունէր, որպէս այլ ազգք ունէին իւրեանցն. մանաւանդ թէ յաչս Յունին ամէն ինչ կրօնական, աստուածային էր, երկինքն ու երկիրն, ծովն ու ցամաքն, հունձքերն անդաստանաց ու ստորերն՝ այգ հունձք եղկնային դաշտաց. բայց իւր քուրմեր ո՛չ երբէք կազմեցին եկեղեցական կազմակերպեալ մի մարմին՝ հոգեւորաց տիրապետութեան սանձն ի բռին ունենալու իրաւունքը պահանջող, եւ կրօնային դաւանութիւնք ո՛չ երբէք ձեւն առին նուիրական անայլայլելի հանգանակի։ Այս պարագայ մեծ նշանակութիւն ունի իբրեւ յունական հանճարոյն զարգացման պատճառներէն մին։ Այնու ի սկզբանէ ազատօրէն իմաստասիրեցին իւր իմաստունք եւ

փիլիսոփայք. այնու Թաղէս, Եմպեդոկղէս, Պիւթագոր, Դեմոկրիտ, Անաքսագոր, Սոկրատ, Պղատոն, Արիստոտէլ, Զենոն, Եպիկուր եւ այլք, հետեւելով մի միայն իրենց մտաց ներշնչումներուն, ջանացին բացատրել իրաց սկիզբն, զԱստուած, մարդկային բնութիւնն, պարտականութիւնն, բարին եւ երջանկութիւնը։ Ու գիտենք թէ Յունական իմաստութիւնն ի՛նչ մեծ դեր կատարած է մարդկային ազգի քաղաքակրթութեան գործոյն մէջ։ Նա ծնունդ տուաւ գիտութեանց՝ բանալով անծանօթին գնալու ճանապարհն, նա ցրուեց տակաւ կրօնական անհեթեթ գաղափարներ, նա դաստիարակեց մարդկային սիրտն ուսանելով եւ ուսուցանելով կամաց օրէնքներն որք կը կոչուին Բարոյական. նա վերջապէս պատրաստեց գետինն քրիստոնէութեան գահակալութեանն համար։ Բացէ՛ք դեռ այսօր իսկ Հոմերը, Եսքիղէսը, Սոփոկղէսը, Պղատոնը, Քսենոփոնը, Արիստոտէլը, Դեմոսթէնը, եւ պիտի գտնէք բարոյական այնպիսի վճիռներ որք իրենց բարձրութեամբ արժանի են դրուելու Աւետարանի վսեմագոյն պատուէրներուն առընթեր։ Սոփոկղէս ըսել կուտար Անտիգոնի՝ թէ «Գրեալ օրէնքներէ վեր կան անգիր օրէնքներ —խղճի աստուածադիր օրէնքներն— որոց մանաւանդ հնազանդել պարտի մարդ». եւ դարձեալ՝ «Սիրելու համար եղած եմ ես, եւ ո՛չ ատելու»։

Այսպէս Հելլէն իմաստասիրութեան վսեմ գաղափարներ հիանալի բացատրութիւն մը կ'առնուին Ելլադայի մատենագրաց գործերուն մէջ, որք ժողովրդեան խաւերուն մէջ կ'երթային սփռել զայնս։ Յունական մատենագրութի՛ւնն. ո՛հ, ի՛նչ դիւթու-

թիւն, ի՜նչ գանձ, ի՜նչ հրաշալիք։ — Որպէս ժայռի մը կողէն ցայտելով աղբիւր մ'ինքնաբուղխ՝ կարկաչաձայն կը հոսի, վայր, կը պտտի դաշտաց վրայ, առնլով ձեւեր զանազան, աստ յօրինելով լճակ ականակիտ, անդ օձապտոյտ սողոսկելով, հեռուն կազմելով ջրվէժ մը լուսափրփուր, շառաչուն, նոյնպէս բանաստեղծութիւնն ինքնաբեր բղխեցաւ այս օժտեալ ժողովրդի հոգիէն եւ ձեւն զգեցաւ այլ եւ այլ քերթողական սեռերու։ Դիւցազներգութիւնը, (épopée) իբրեւ ընդարձակ մոգական հայելի, ցոլացուց դիւցազնական ժամանակաց բարքն իւրեանց պարզութեան, միամտութեան եւ ոչ անմասն յաղնուութենէ բրտութեանը մէջ։ Քնարերգութիւնն երգեց նուիրական բագնաց շուրջն, ընտանեկան վառարանին ու սեղանին առջեւ, նստաւ գովասան ազգային հանդիսից մէջ, մրմնջեց հեշտութենէ կամ վշտէ հառաչող սրտին մրմունջներն։ Ողբերգութիւնն բակքոսեան տօներն դարձուց իմացական աշխարհախումբ խրախճանութեանց, եւ Կատակերգութիւնն կանգնեց բարոյականի եւ աշխարհավարութեան մի եզական դասաբեմ, ուր ծաղրն, իմաստութիւնն ու բանաստեղծութիւնն յիրեար խառնուեցան մարդոց հոգիները զուարճացնելու եւ միանգամայն հրահանգելու համար։ Իւր փառաւոր կեանքն անմահացնել կ'ուզէր այս ժողովուրդն, ու ահա՛ Պատմութիւնը կը ծնանէր։ Ժողովուրդները կառավարող ճշմարիտ զօրութիւնը կը փնտռէր, ու ահա՛ Պերճախօսութիւնը կը գտնէր։ Կը խորհէր տիեզերքին վրայ, մեծ առեղծուած, եւ կը խորհէր մարդոյն վրայ, առեղծուած ո՛չ նուազ մեծ, եւ ահա՛ Իմաստասիրու-

թիւնը կ'ստեղծէր ։ Եւ քանաստեղծութեան եւ արձակի այս սեռք շուտով իւրեանց կատարելութեան զէնիթը կը հասնէին, եւ Պառնասոսի գագաթան վրայ կը կազմուէր այլապէս վեհ աստուածներու — իմացականութեան աստուածոց — կաճառ մ'ուր մեծափառ կը բազմէին Հոմեր, Հեսիոդ, Պինդար, Հերոդոտ, Եսքիլ, Սոփոկլէս, Եւրիպիդէս, Պերիկլէս, Սոկրատ, Արիստոփան, Թուկիդիդէս, Պղատոն, Քսենոփոն, Արիստոտ, Դեմոսթէն, Եսքինէս, Թէոկրիտ, Ղուկիանոս. — արդարեւ ակումբ աստուածախումբ, որ կը շարունակէ ընդունիլ մարդկային ազգի պաշտամունքն, երբ արդէն դարերէ հետէ լուռ ու թափուր է Ողիմպոս ։ Գեղեցկին սիրոյն տոգորեալ ու արբեցեալ այս ժողովուրդն, մանաւանդ Աթենացին ի նմա, որ յոյն սեռի եզական ձրից բարձրագոյն ներկայացուցիչն եղաւ, բացատրեց գեղեցիկը նաեւ աչքի խօսող ձեւերու տակ. Յոյն Գեղեցիկ-Դպրութեանց արժանաւոր քոյր հանդիսացան Յոյն Գեղարուեստք ։ Փիդիասներ եւ Պրաքսիտէլներ յուսահատեցուցին յետագայ դարուց արձանագործներն. Ապեղէս եւ Զեւքսիս լեզու տուին գոյնին, եւ Տիմոթէոս՝ աղեաց. — իսկ Պարթենոն, իւր աւերակաց մէջ իսկ վեհաշուք, կը կանգնի ցայսօր Ակրոպոլի բարձանց վրայ իբրեւ վիմատառումն մարդկային հանճարոյ վսեմ մի խորհրդոյն, իբրեւ վիմեղէն քերթութիւն մի, հեշտացուցիչ աչաց եւ հոգւոյ ։

Այս պանծալի քաղաքակրթութիւն սահմանափակ չմնաց յԵլլադա. Նորա գաղթականութիւնք, Նորա արշաւանք, Նորա գրագէտք ու արուեստագէտք սփռեցին զայն ընդ աշխարհ. բոլոր Արեւելք յոյնա-

ցաւ. իւր աստուածներն նոյնացուց յոյն աստուածոց, եւ Հելլէն ճարտարաց անդրիներն կանգնեց իւր մեհենից մէջ. իբրեւ գերազանց լեզու բանականութեան եւ երեւակայութեան, սորվեցաւ ու խօսեցաւ հելլենարէնն: Իսկ յոյն գրականութեան եւ արուեստից վարպետք բացին օգտախնդիր ու գռեհկան Հռովմայեցւոյն առջեւ իմացական կեանքի հորիզոնն, ու դրին գրիչն ու գրոցն ու քնարը նորա բիրտ ձեռներուն մէջ, որք դեռ միայն կրել սովոր էին: Ինչ որ Հռովմէական քաղաքակրթութիւն կ'անուանեմք՝ արդիւնք է յունին նմանողութեան, յոյն դաստիարակութեան. եւ այն մեծ ազդեցութիւն զոր այդ քաղաքակրթութիւն ունեցաւ զԱրեւմուտս դաստիարակելու մասին՝ կը բղխի դարձեալ յոյն հանճարոյ անսպառ աղբիւրէն: Այդ աղբիւր, յետ Վերածնութեանը (Renaissance) յառաջ բերած նորածաղիկ փթթմանն, կը շարունակէ կազմել ազնուացընել ամէն ուսանող նոր սերնդեան գրական ճաշակն ու բարոյական զգայութիւնն, եւ, ցորչափ գեղեցիկն հրապուրէ մարդկային հոգիներն, պիտի հրաւիրէ միշտ մտքերն գալ ըմպել իւր զմայլարար կենսաւէտ ալիքէն:

## ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ



*Երբ տաճարէն դուրս կ'ելնէի, գլխուս մէջ դեռ կը հնչէր վսեմագոյն երգը Քրիստոնեայ Եկեղեցւոյ, «Փա՜ռք ի բարձունս Աստուծոյ, եւ յերկիր խաղաղութի՜ւն, ի մարդիկ հաճութի՜ւն . . .» ։ Ու չէր այն արձագանգ մը պարզապէս երգեցիկ մանկանց պարի մը կամ մի քանի քահանայից ձայնին, այլ մեծ, լայն, խոր, բազմերանգ երգի մը որ ամբողջ ժողովրդեանն է, ուր ամէն հասակ ու դասակ եւ սեռ կը խառնեն իրենց ձայները, ուր կը լսուին մատաղ հոգիներու զուարթաջինջ աւաչքն, առոյգ կուրծքերու կենսայորդ չեշտերն, կենսամաշ ոգւոց քողաղօտ բարբառքըն, վշտաբեկ սրտերու հառաչոտ խազերն, ամէնքն կազմելով ամբողջութիւն մը մի քիչ խառնաձայն, այլ եւ չես գիտեր ինչպիսի՛ ներդաշնակութիւն, որոյ ո՛չ մի երգահան գտած է գաղտնիքն, ներդաշնակութիւն մը գերազանցապէս մարդկային, յինքեան բերող համաձոյլ զամէն աստիճաններն մարդկային արդի ձայնաչարին, երբ զանազան տարիքի ու տրամադրութեան մէջ կը թրթռայ տեսլականի չնչոյն տակ ։*

*Ամենուրեք ժողովուրդը միաբերան կ'երգէ այս երգը մեր եկեղեցւոյ մէջ, ու Աղօթագիրքն ալ այդպէս կը պատուիրէ . եւ այս բան կ'ընէ զայն ովկիանոս-աղօթք մը, աղօթք մը մթամած անդունդներէ ելնող ու լուսացայտ կատարներէ սլացող, անծիր տարածութեան մը մէջ գոռացող ու ծաւալող,*

որ երբ կ'աւարտի՝ անհունութեան մէջ կարծես կը մարի, ո՛հ, ո՛չ, անհունութեան մէջ կարծես կը շարունակուի արձագանգէ յարձագանգ, աշխարհէ յաշխարհ։ Ու չպիտի ուզէի երբեք, ո՛րքան յառաջդիմութիւն ալ ընէր սրբազան երաժշտութեան արուեստը մեր մէջ, որ փոխուէր այդ եղանակն, վե՛հ, ծանր, տարածուն, որ կը պնդէ ամէն վանկերուն վրայ, կը խոկայ ամէն բառերուն վրայ, որ ոգեկից կ'ուռի, կը հարթանայ խաղաղագին ու մերթ ևս կը խորանայ ներքնասոյզ, — ո՛չ միայն վասն զի հնութեան նուիրական դրոշմը կը կրէ այն, այլ զի եւ կատարեալ է, ըստ իս, բացատրելու համար համախումբ ժողովրդեան մը հոգւոյն հիացումն ու դիմումն առ գերագոյն էակն, իղձքն առ տեսլականն, ծարաւն Արդարութեան եւ Սրբութեան, — այսինքն ամէն ինչ որ այդ գերազանց երգին բառերը կ'արտայայտեն իրենց մէջ։

Հրեշտակներն են, ըստ խորհրդաւոր աւանդութեան Աւետարանին, որ երգեցին անոր առաջին բառերն — ո՛հ, այն բառերն — երբ Իւր Փրկչին ծնունդն աւետեցին աշխարհի։ Ու այդ առաջին բառերն համաշխարհական խաղաղութեան, համահաճ մարդկութեան մ'ի՜նչ երանաւէտ հորիզոն կը պարզեն մտաց առջեւ։ Ի՜նչ տեսլական, ինչպիսի՛ գիրկընդխառնում երկնից ու երկրի, ի՜նչ դար ոսկեղինիկ որ պիտի ծնէր՝ ըստ հրեշտակային աւետեաց՝ այդ մեծ ծննդեան հետ...։

Այլ ահա՛ իննեւտասան դարեր անցան այդ աւետալիցէն յետոյ, ու դեռ ո՛չ ուրեք է կատարեալ խաղաղութիւնը։ Տաճարներ կանգնեցան Յիսուսի ան-

ուան, խաչը տիեզերական գործի մը դարձաւ պաշտաման, մարդոցմէ հարիւրաւոր միլիոններ աշակերտեցան Աւետարանին, եւ դեռ չկատարուեցաւ այդ խոստումն երկնային։ Վէճն ու կռիւն ընտանեաց մէջ է, ժողովրդոց մէջ է, ի՞նչ կ'ըսեմ, քրրիստոնեայ եկեղեցեաց ընդմէջ է։ Ատելութիւն, նախանձ, չարակամութիւն դեռ կը տիրեն մարդոց մեծ մասի սրտին. հոս այր ու կին մահու չափ թշնամի են իրարու. անդին եղբայր եղբօր դէմ, որդին հօր դէմ կը յառնէ։ Դեռ մին կերակրովք ու ըմպելեօք կը յղփանայ աստ, մինչ անդին ուրիշ մը, աղիքները քաղցէն գալարուն, ցաւագին կամ մոլեգին ակնարկներ կը նետէ լիառատ սեղանին։ Հոս կաղնեայ թաւշապատ արծաթազարդ դագաղի մը մէջ կը թաղուի մէկու մը դիակը. հոն ցուրտին տակ անտուն անհանդերձ կը դողդղայ աղքատի մը խեղճուկ մարմինը կենդանի։

Ու պատերա՞զմը, բանակներու ընդհարո՞ւմն, ի ձայն փողոյ եւ թմբկի այդ արշա՞ւն ի սպանդ. ի՞նչ է այդ։ Տիեզերական խաղաղութեան աւետումէն այսքան դար յետոյ, դեռ ցայսօր, արիւնային միջազգային պայքարաց ոգին ատելութի՜ւն ու հե՜ռ կը փչէ ժողովրդոց մէջ, դեռ՝ միմեանց մահուն ծարաւի՝ կը ճակատեցնէ զանոնք յաճախ դէմ առ դէմ, դեռ արենաբոյր դափնիք ցանկութեան առարկայ են ու հպարտութեան առիթ, եւ այս նոյն իսկ քաղաքակրթութեան յառաջապահ եւրոպեան ազգաց մէջ։ Խաղաղութիւնն իրենց մէջ առաւել կամ նուազ տեւական զինադուլ մը կը համարուի դեռ — խաղաղութիւն սպառազէն։ Գիտութեան յառաջդիմու-

թիւնք կը ծառայեն իրենց կատարելագործելու սպանման, աւերման անօթներ։ Եւ երբ շատ սպաննած, շատ այրած, շատ արցունք հոսեցուցած, շատ մայրեր անզաւակած, շատ կիներ այրիացուցած, շատ մանուկներ որբացուցած ու շատ դաշտեր կոխոտած չորցուցած են, յաղթական փառագոչ դէ տէօմներ ունին առ «բանակաց Աստուածն» վերասլացիկ, որպէս 1631ին Դիլլի՝ Մակտէպուրկի արիւնով ու կրակով կարմիր աւերակաց վրայ — տարօրինա՛կ ծիրանի փառաց — յետ քառասուն հազար կեանքեր մահու եւ չորս հազար տուներ բոցերու մատնելու։ Նորագոյն օրինակներ չեն պակսիր դժբախտաբար, եթէ ուզեմք։

* *
*

Այս ամէնն ի՞նչ կ'ապացուցանէ. — թէ մարդն անընդունա՞կ է ընկերային համակրութեանց, էակ մը եսամոլ, ոխերիմ իւր նմանին, ատելու համար ստեղծուած մանաւանդ քան սիրելու։ Կան արդարեւ մարդիկ որք այսպէս կը խորհին, ու իմաստասէրներ ալ։ Անգղիացին Հոպպս «մարդը մարդուն գայլ[1]» կը կոչէ. Լա Ռոշֆուքօ մարդոց ամէն գործերուն միակ շարժառիթ անձնասիրութիւնը կը դնէ. իսկ սոսկալին ժոզէֆ տը Մէստր կը հաստատէ կոտորածի տիեզերական անողոք օրէնք մ'որոյ համեմատ բոլոր ապրող էակները կարգաւ զիրար կը ջնջեն, եւ որուն հպատակ կը դնէ նոյն իսկ

(1) Homo homini lupus.

մարդը ։ «Ամենուն վերեւ մարդը կայ, կ'ըսէ, որոյ աւերիչ ձեռքը ոչինչ կը խնայէ յամենայնէ որ կ'առնի ։» Նա կ'ապաննէ սնանելու, հագուելու, զարդարուելու, յարձակելու, իւր անձը պաշտպանելու, ունենալու, զբօսնլու, ու նոյն իսկ ապաննելու համար ։ «Իսկ ի՞նքը — կը հարցնէ — որ զամէնքը կը ջնջէ, ինքն ուսկի՞ց պիտի ջնջուի .» — Կը պատասխանէ . «Իրմէ՛ . մարդո՛ւն յանձնուած է փողոտել զմարդը ։» Ոխերիմ հակառակասիրութիւնն ա՛յնքան հիմն է, ըստ այսպիսեաց, մարդկային բնութեան, որ մարդուն զբօսանքներն իսկ պայքարներ են ։ Թէ չպատերազմի՝ կը զուարճանայ կեղծ պատերազմներ հնարելով, որպիսիք են մրցական հանդէսք, կառարշաւք, ձիարշաւք, նաւարշաւք, թղթախաղք, եւ այլք . եւ, ըստ Ռուսոյի որ կ'ուրանայ մարդուն ընկերական բնազդներն եւ ընկերութիւնն արուեստական բան մը կը համարի, մարդկային ակումբներու մեծագոյն հաճոյքն է բամբասանքը, չարախօսութիւնը ։ Այսպէս ուրեմն պատերազմի վիճակն է ու պիտի մնայ բնական վիճա՞կն մարդկային ազգին, ու խաղաղութիւնն եւ հաճութիւնն ի մարդիկ հակասութիւննե՞ր մեր բնութեան, անիրանալի իղձայինե՞ր ։

* * *

Ո՛չ, ո՛չ, ո՛չ ։ Մարդն ի բնէ ընկերական էակ է . ո՛չ ուրեք տեսնուած կամ աւանդաբար յիշատակուած է Ռուսոյի նախնական մենակեցիկ մարդը . ճգնաւորներն, անապատականներն, մոնազներն ալ — բացառութիւնք ըստ ինքեան — ընկերութենէ՛ դուրս կ'ելնեն, դարձեալ մի՛շտ անոր վրայ խորհե-

լով կամ անոր բարւոյն համար խորհելու. Նպաստա-կաւ, անոր կարծիքին ու համարման ակնդէտ։ Բա-ցարձակ մարդատեցութիւն մը հրէշային բան մը պիտի ըլլար։ Հոգեբանական օրէնք մ'է համակրու-թիւնը, եւ գուցէ ան նմանին ընդածին յոյզ մը մարդկային սրտին։ Անձնասիրութիւնը կայ անշուշտ ու չի կրնար չըլլալ. բայց անոր քով, առաւել կամ նուազ զարգացեալ, կայ նաեւ այլասիրութիւնը, ընտանեաց, տոհմին, նմանին սիրոյ զգացումը։ Նմա-նին սիրոյն մէջ, կ'ըսեն, անձին սէրը կայ, այլոյ բարւոյն հետամտութեան մէջ ալ եսին բարւոյն անուղղակի հոգածութիւնն։ Այդպէս իսկ ըլլայ, մարդկային բնութեան ազնուութեան մէկ նշանը չէ՞ ուրեմն կարենալ իր անձը սիրել ընկերին սիրոյն մէջէն։ Բայց ընկերային կենաց այն տխուր, այն քամահրացուցիչ երեւո՞յթք որոց վրայ քիչ մը յառաջ խօսեցանք, բայց գժտութի՞ւնք, անիրաւութի՞ւնք, եղեռո՞ւնք, պատերազմո՞ւնք . . . ։

Ո՛հ, այո՛, այդոնք կան. սակայն ինչ որ արտասուելի է ու միրթ վհատեցուցիչ. բայց դոքա կ'ապացու-ցանեն միայն մարդկային բարոյականութեան ան-կատար վիճակն, այլ ո՛չ նորա կատարելագործման անընդունակութիւնն։ Բարեշրջութեան օրինաց են-թակայ է բարոյական աշխարհն ալ. վայրագ եսու-թենէ մը սկսած է մարդն ու տակաւ կ'երթայ, կը տարածանայ ի սէր, յանձնուիրութիւն։ Եթէ տա-ւին աւելի հեռ կայ քան սէր, աւելի կռուոյ ռենչ քան հաշտութեան, այս ցոյց կուտայ թէ դեռ մարդոց մեծ մասին սրտին մէջ մութ ու մռնչող ութիւնն է առաւելակշիռ։ Բայց տակաւ պիտի

յաղթուի այն, սիրով դաստիարակուի, բարեխառնուի, քաղցրանայ։ Ազնուագունին անձո՛ւկն ունի մարդկութիւնն. բարոյական տեսլական մը կը ձգէ զինքն անդուլ՝ չարագունից վրայ իսկ ի գործ դնելով իւր հրապոյր։ Հետ զհետէ բարձրագոյն բարոյականութիւն մը քարոզեցին կրօնքներն ու փիլիսոփայութիւնք։ Մովսեսի օրէնքը սէրն արենակցին կը սահմանէր. Յիսուս վերցուց ցանկը, եւ ո՛չ միայն պատուիրեց նմանեաց սէրն առհասարակ՝ երբ վնասակար չեն մեզ, այլ եւ երբ մեր ատեցողքն են, մեր թշնամիքն։ Ի Հնդկաստան Բրահմանութիւնը ժողովրդեան զանազան դասուց անհաւասարութիւնը կը քարոզէր նոյն իսկ Բրահմայէ՛ հաստատեալ. Բրահմանք նորա բերնէն ելած էին, պատերազմիկք՝ նորա բազկէն, արուեստաւորք՝ նորա երանէն, գերիք՝ նորա ոտքէն. Բուդդա անխտրութիւն ու սէր ուսոյց։ Արիստոտէլ կ'արդարացնէ գերութիւնը. Ստոյիկեանք կ'ըսեն. «Մարդը նուիրական բան է մարդուն համար[1]»։ «Գերինե՞ր, կ'աղաղակէ Սենեկա. ըսէ՛ մանաւանդ մարդեր, ըսէ՛ ընկերներ, ըսէ՛ գերեկիցներ։» Զենոնով քաղաքն (cité) կ'ընդլայնուէր մարդկութեան։ Կրօնային ու իմաստասիրական այս տակաւ զարգացուն տեսլականք մարդկային բարուց աստիճանական բարւոքման արդիւնքն ու պատճառքն եղած են միանգամայն։ Զարիքներու տեսարանին առջեւ, ո՛չ, կարելի չէ սակայն անտես ընել իրացեալ բարիքն, որոց գումարը պիտի երթայ անշուշտ աճե-

(1) Homo res sacra homini.

*լով ։—Պատերազմունք, թէ եւ առաւել մարդասպան, նուազած են համեմատաբար. Խաղաղութեան Համաժողովք կը գումարին. գործաւորին հացի խնդիրն ընդհանուր ուշադրութիւն կը գրաւէ. աղքատախնամ, հիւանդախնամ, որբախնամ հաստատութեանց թիւը կ'առաւելու, ու պարելով ալ կը խորհինք տնանկին ու տգիտին վրայ ։*

*Այո՛, մարդկութիւնն իղձն ունի խաղաղութեան ու եղբայրութեան դարուն, որոյ ծագումն ի դուր չերգուեցաւ երկնից մէջ՝ երբ փրկիչը կը ծնէր ։ Քանի որ ծնեալը մեծնայ առաւել, այսինքն Յիսուսի վարդապետութեան ոգին, որ գութ ու ներողութիւն է համակ, առ այն պիտի բարձրանայ գամ քան զգամ սիրակարօտ մարդկութիւնը ։*

*Ահա է՛ր ժողովուրդը, միահամուռ, մելամաղձոտ այլ յուսավառ, կ'երգէ վսեմագոյն երգը. «Փա՛ռք ի բարձունս Աստուծոյ, եւ յերկիր խաղաղութիւն, ի մարդիկ հաճութիւն . . . ։»*



## ԿԻՆԸ ԱՆԿԱԽ

———

Գաղափարաց նորանոր արտայայտութեանց կար-գին մէջ, կարժէ նաեւ յառաջ նետել կնոջ, ընկե-րութեան մէջ, յարաբերական կացութեան խնդիրը. թէպէտ ան յաճախ ծեծուած, սակայն միշտ անլու-ծելի մնալու դատապարտուած է, գէթ ներկային մէջ. սակայն եւ այնպէս, որքան այդ խնդիրը դրուի սեղանի վրայ, որքան աւելի լինի նիւթ վի-ճաբանութեանց, այնքան օգտակար, այնքան ար-գասաւոր կը լինի, հասարակաց առջեւ պարզելով թեր ու դէմ կարծիքներ, կամաց կամաց պատռե-լով նախապաշարման թանձր քողը եւ ճշմարտու-թիւնը բացայայտ վեր հանելով։ Որքան մարդիկ ապրին, որքան աշխարհ տեւէ, պահպանողական տարրը չը պիտի դադրի գոյութիւն ունենալէ. ամե-նէն տրամաբանական ճշմարտութեան հակառակ իսկ՝ չը պիտի դադրի այդ տարրը իր սովորական պայ-քարը մղելու. այդ իրողութիւնը կը տեսնուի ամեն կարգի, ամեն տարազի խնդրոց մէջ։ Հակառակու-թեան այդ ոգին տարակոյս չըկայ թէ շատ օգտա-կար է՝ անուղղակի եղանակաւ օգնելով գաղափարաց ճշգրիտ եւ վերջնական սահմանը հաստատելու. բանակռիւներու, բանավէճերու առիթներ կընծայէ հետապնդմամբ նախահայրական անդրդուելի աւան-դութեանց. միտքերը կը սրէ, խորհուրդներ կը յղա-ցընէ եւ այսու պատճառ կը լինի տալու նոր ճշմար-տութեան մը՝ իր վերջնական ձեւը, գծելու նոր

ծրագիրը եւ հաստատելու զօրաւոր հիման մը վրայ կեդրոնական կարեւորութիւն ունեցող ընկերական խնդիրներ։ Անոնց մէջն է, գլխաւորաբար, կնոջ կացութեան հարցը մարդկութեան առջեւ. վիճա-բանութիւնները կը շարունակեն, պայքարը կը սաստ-կանայ, այլ հաճութեամբ կը տեսնուի թէ, ամեն անգամուն, կինը կը յաջողի բան մը խլել ի նպաստ իր ազատագրութեան։ Եթէ աչքի առջեւ ունենանք այն բանավէճերու նախնական եւ այժմու վիճակը, եթէ նկատի առնունք այն մեծ քայլը զոր կինն ըրած է այդ միջոցին մէջ, այն օգուտները զորս քաղած է նա, իր անկախութեան դատին ի նպաստ կորզած յաղթանակները, տարակուսի երբէք տեղի չը մնար թէ կինը սահմանուած է ի մօտոյ իր վերջին յաղ-թութիւնք տանիլ եւ մարդուն քով բազմիլ հաւա-սար օրինական ուժով եւ վայելել մի եւ նոյն առանձ-նաշնորհումները։

Մայտայի հրատարակման ժամանակ այս խնդիրը յուզուեցաւ մեր մէջ նաեւ։ Հեղինակուհին կը պաշտպանէր իր դատը լոյս տալով նաեւ ուրիշ երկու գործեր։

Լրագրութիւնը զբաղեցաւ այն ատեն այդ խնդ-րով. այլ, ինչպէս ամեն բան, այս կարեւոր հարցն ալ շուտ գոցուեցաւ, չունենալով զօրաւոր գրիչնե-րու օգնութիւնը. կենթադրուէր թէ Սիրանոյշի հեղինակուհին, ինք իր գրչովը, հրապարակ ելնէր եւ ճակատ ճակատի իր փետուրին ծայրովը, իր դատին պաշտպանման համար թափէր ամբողջ ուժը, շա-հէր զայն եւ յաջողութեան ու փառաց մէջ միայն հանգիստը որոնէր. այլ հակառակը պիտի գործէր

նա . կարծես իր երրեակ գործերը սպառեցին , ջլատեցին զայն . քաշուած իր ամրափակ դղեակին մէջ , գոգ զղջացած երկերուն վրայ , հեռուէն հեռու ականջը կուտար հասարակութեան մէջ շրջագայած ձայներու , որք երբեմն իրեն ալ չէին հասներ . կատարեալ ընդարմացման մէջ ինկած՝ կարելի է մոռցած էր իսկ իր աշխատութիւնները :

Ինչո՞ւ առաջին շարժումը եւ վերջին դադարումը :

Ահա՛ կրկին այս խնդիրը ատեան կը բերուի : Աղջկանց մտաւորական զարգացման խնդիրը , ամուսնական կեանքին մէջ , կապուած է սերտօրէն կնոջ՝ ընկերութեան մէջ գրաւելիք տեղւոյն հետ : Զարմանալի կերեւի թէ դաստիարակութիւնը , որով օժտել կը փափաքուի մեր աղջիկները ,— ապագային համար անտարակոյս ,— ունի իւր հակառակորդները . իւր ջատագովներուն մէջ կը գտնուին նաեւ դատափետողները : Այդ խնդիրը այնքան բացորոշ , մեկին է որ ատոր հակառակորդներն իսկ չը պիտի ուզէին կամ չը պիտի կրնային յարատեւել իրենց հետապնդման մէջ : Պղտորութեան առաջին վայրկենին արտայայտուած գաղափար մը պէտք չէ ունենայ իր նշանակութիւնը . երեւակայոտ կամ բուռն տրամադրութեան մը ներքեւ՝ թղթին վրայ նետուած բառերը պէտք չեն արծարծել բանակռիւ մը . ատոր օրինակները հազարներով կը տեսնենք այսօր Եւրոպական արդի գրականութեան մէջ :

Ընդունելով աղջկանց մտաւորական կրթութեան անհրաժեշտ ստիպողականութիւնը , որու առաւելութիւնը , ապա , ամուսնական կեանքի մէջ զգալի կը լինի , ըմբռնելով այն օգուտները զորս պէտք էր

վայելել երիտասարդութեան մէջ համբարած պտուղներէն, — հեգնութիւն մը չէ՞ միթէ այն անձուկ ու սեղմ չրջափակը՝ որու մէջ նա կը դառնայ, սահմանափակ եւ անկարող։

Քաղաքակրթութիւնը, իր քայլափոխական յառաջադիմութեան մէջ, բարւոքած է կնոջ վիճակը, որ աստիճանաբար բարձրացած է եւ կը գրաւէ ընտանեկան յարկին մէջ գլխաւոր տեղ մը։ Արդի կաւալիէրին չը մոռնար, ամէն առթի մէջ, մեծարանքներ, պատիւներ, շնորհներ ընծայել կնոջ։ Շողոմաբար եւ դրուատիչ բառեր մոռցնել կուտան նմա իր ստորակարգ վիճակը։ Անգամ մը, սակայն, լրջօրէն դիտենք թէ քաղաքակրթութեան անոր շնորհած բարիքները ո՛րքան անբանական են։ Անոր ընկերութեանց մէջ բռնած տեղը ո՛րքան երկրորդական եւ անորոշ, իր առանձնաշնորհումները ո՛րքան չափուած եւ աննշան, իր օրինական ձայնը ո՛րքան կարճ եւ նուաղուն, իրեն եղած պատիւները ո՛րքան հեգնական, ենթադրել տալով միայն տկարութեան գաղափարը։

Ահա՛ այդ թիւր գաղափարն է որ կինը ձգած է իր երկրորդական վիճակին մէջ։ Ա՛յնքան կրկնած են իրեն թէ նա տկար է՝ որ վերջապէս հաւատացած ու անտրտունջ կը կրէ իր լուծը։ Հակառակ ամէն ազատութեան, զոր առ երեւոյթս կը վայելէ կինը, հակառակ իր շարժմանց ու ընթացքին անկախութեան, կինը տակաւին մարդուն գերիշխան զօրութեան հպատակ է, թէպէտ այդ գերութիւնը իրեն ծանր չըգար. այդ ստորակարգ վիճակին այնքան վարժուած է որ թերեւս պիտի կորանցնէր իր ուղ-

դութիւնը, եթէ երաստանածներին իրենց ձեռքը ձգուէր. տակայն եւ այնպէս մարդկութեան ապագայ պատմութեան առջեւ, Նկատի առնելով դարուս յառաջադէմ վիճակը, ծիծաղելի բան մը պիտի երեւի կնոջ արդի ստորակարգութիւնը : Շատ բաներու չը կարօտիր բացատրելու համար կնոջ իրական դրութիւնը. բնական է թէ նոքա ամենէն աւելի պարտին զգալ, հակառակ ամեն նախապաշարմանց, իրենց խուսափուկ եւ անհաստատ կացութիւնը : Խնդիրը չը կայանար աւելի զայդ հաստատելուն՝ քան զանոնք այդ վիճակէն դուրս հանելուն մէջ :

Կինը իրօ՞ք ստրուկ է : Ահա՛ ամենակարեւոր հարցը : Մտաւորաբար եւ ուղեղային կազմուածով հաստատուած է թէ երբէք չեն տարբերիր այրերէ. եթէ զանազանութիւն մը կայ, այն ալ միայն իրենց հաւասար զարգացման չենթարկուիլն է, որով սաստիկ մեծամասնութիւն մը անմշակ մտօք, կամ թեթեւ մը կրթեալ, դատապարտուած են գրաւելու երկրորդական տեղը : Արդէն ամեն ուրեք քաղաքակիրթ աշխարհէ ընդունուած են, եւ այդ ալ կենդանի փորձերով, կնոջ մտային ամեն ազգի ընդունակութիւնը եւ ուղեղային զարգացման յարմարութիւնները. Կը մնայ գլխաւոր առարկութիւնը, որ է կնոջ ֆիզիքական տկարութեան խնդիրը : Այս տկարութեան գաղափարը արդիւնքն է գլխաւորաբար դարերէ ի վեր մեզ աւանդուած նախապաշարմանց, որք ծնունդ առած են այն հին ժամանակները, երբ կինը՝ դղեակներու մէջ փակուած՝ ֆիզիքական ամեն մարզանքներէ հեռի, թուլութեան մէջ մեծցած, բնականաբար տկար ըլլալէ զատ ուրիշ բան մը չէր կրնար ըլլալ :

*Իւր կազմուածքին արտաքին երեւոյթը կը նպաստէր այդ եզական կրթութեան, որուն հետեւութիւնն եղաւ հետզհետէ տարածել կինն անաշխատ վիճակին մէջ պահելու լռելեայն օրէնքն,— օրէնք՝ որ զայն խօսք տկարացնելու պատճառ եղաւ։ Արդ, ամեն տեսակ նախապաշարմունք մէկ կողմ նետելով, եթէ նկատի առնունք կինն՝ առանձին՝ հանդէպ իւր ֆիզիքական կազմուածին, ի՞նչ պիտի տեսնենք։ Այս խնդրոյն մէջ ամենէն աւելի լոյս տուողը պիտի լինի կենդանի օրինակը։ Ուստի ուղղակի եթէ դիմենք փորձառութեան օգնութեան, սա գլխաւոր իրողութիւնը երեւան պիտի գայ թէ, ֆիզիքապէս տկար չըլլալէ զատ, համահաւասար զօրութիւն ունի եւ ոչ մէկ կերպիւ մարդէն ետ կը մնայ իր մարմնական ուժին շնորհիւ։ Հեռանանք քաղաքակիրթ երկիրներու կեդրոնէն. երթանք հոն ուր մարդն, իբր ազնիւ էակ, դատապարտուած է անգործութեան, եւ կինն, իբր անազնիւ էակ, կը կրէ ամբողջ աշխատութիւնը իր չարքաշ ուսերուն վրայ. մինչեւ այս օրերս դեռ տեղի կունենան այսպիսի՝ աշխարհի ծանօթ իրողութիւններ։ Ասոնք չե՞ն խօսուն ապացոյցներ կնոջ զօրութեան մասին. իսկ եթէ անասուններն ալ դիտելու չափ ներողամտութիւնն ունենանք, ալ աւելի փայլուն կերպիւ չը՞ հաստատուիր այս յայտնի իրողութիւնը։ Անասնոց մէջ էգը երբէք չունի կախում արուէն. էգը այնքան զօրաւոր եւ թերեւս աւելի գործօն է քան արուն. բնական պատմութիւնը զայս հազար օրինակներով կապացուցանէ։ Ասոնք չե՞ն համոզիչ փաստեր թէ, երբ քաջութիւն ունենանք կնոջ առջեւ պարզելու իրենց զօրութեան*

զանազան ձեւերը, երբ արթնցնենք զանոնք իրենց դարաւոր քունէն, երբ թօթափենք անոնցմէ նախապաշարման քողը, պիտի կարող ըլլան ընտանեաց յարկերու մէջ լինել աւելի բան մը քան տան խոհարարուհին, կամ զաւակաց դայեակն ու սնուցիչ. աւելի բարձր մարդուն համահաւասար դիրք մը գրաւեն հոն, միացնելով իրենց աշխատութեան արդիւնքը ամուսնոյն ճգանց ու քրտանց պտղին. հաւասար ուժերով կենաց պայքարը մղեն, փոխանակ էրիկ մարդուն միայն թողլու այդ պայքարին տքնութիւնները ու դժուարութիւնները։ Ամուսնոյն աշխատութեանց մասնակցին, ջանան տալ նմա մեծագոյն օգնութիւնն որ է թեթեւցնել տքնութեանց բեռը, փոխանակ լինելու արգելիչ տարր մը, յառաջդիմութեան խափանարար մը։ Շարժմանց ազատութիւնն եւ զբաղմանց նուազութիւնը պիտի մղեն այնատեն ամուսինը մեծագոյն ձեռնարկներու. կնոջ ազատութեան բաժինը պիտի նպաստէ բարոյապէս եւ նիւթապէս ընտանեկան յարկին բարձրացման, փոխանակ սպառիչ տարր մը լինելու, կինը պիտի ըլլայ արտադրիչ մարմին մը։

Ասոնք այնքան յայտնի ճշմարիտ իրողութիւններ են՝ որ երբէք չեն կարօտիր մեկնութեանց. այս առաւելութիւններն այնքան օգտակար եւ երկու կողմանց այնքան աչքի կը զարնեն, որ զարմանալի կ'երեւի աւանդական սովորութեանց հետեւութիւնը։ Այդ փոփոխութիւնը չը կրնար անտարակոյս լինել անմիջական եղանակաւ. այդ վարժութիւնը, նոյն իսկ կանանց համար, տարիներու օգնութեան կը կարօտի։ Էական կէտն այն է թէ ընդունուի սա

սկզբունքն՝ թէ կինն եւս սահմանեալ է սատարել ամուսնոյն ամէն եղանակաւ, թէ անոր դերը պէտք չէ միայն լինել տան մատակարարութիւնն, որ ամենանձուկ զբաղմունքն է կանանց, թէ նոքա արժանի են բուն իսկ իրենց մտային աշխատութեան, գրաւել մարդուն հետ ընկերութեան մէջ հաւասար վայրը, մի եւնոյն աստիճանաւ եւ մի եւնոյն չափով։

Այդ սկզբան վրայ պէտք է ապա հիմնուիլ կանանց այդ վիճակը պատրաստող դաստիարակութիւնը։ Աղջիկները կրթուելու չեն հարեւանցի եղանակաւ մի միայն ամուսնանալու համար, զոր եւրոպացի հեղինակ մը կոչած է միակ կանանց պաշտօնն։ Փոխանակ կրթութեան եւ ուսման սահմանը փակելու, աւելի զայն ընդարձակելու է։ Ազատ մտային կըրթութեան միացնելու է մարմնական կրթութիւնը։ Նախապաշարման արդիւնքն եղող կարգ մը անպէտ ու ժամանակ գրաւող աշխատութիւններ վերցնելու է, ինչպէս է դաշնակի նման սովորական դարձած երաժշտութիւն մը սորվեցնել անոնց որք՝ ի բնէ անընդունակ՝ կսպառեն իրենց թանկագին ժամերը մեքենական վարժութիւններով, առանց արդիւնք մը արտադրելու մինչեւ այն օրը, յորում ամուսին մը գայ եւ ծիծաղ մը նետէ իրենց բազմավաստակ ապարդիւն կեանքին վրայ։ Որքան մտցուի անկախութիւն եւ ճշմարիտ ազատագրութիւն իգական սեռի դաստիարակութեան մէջ, այնքան աւելի բարձրացուցած կըլլայ մարդ կնոջ վարկը, կանուխէն վարժեցնելով զայն ինքնաճանաչութեան եւ ինքնաբաւականութեան կարեւոր տնտեսական ու իմաստասիրական սկզբունքին։ Աղջիկը չը պիտի սպասէ

այն առեն ընդունայն դժուարահաճ ամուսնոյ մը զայլատեան. ինք պիտի բաւէ ինքզինքին. ամօթխածութեան նախապաշարեալ քօղը պիտի պատռէ եւ թոյլամիտ ներողամտութիւնը պիտի տարածէ իր անսպառ օգուտները մարդկութեան ամենակարեւոր մի մասին վրայ։ Ամուսնութիւնն յայնժամ յաճախադէպ իրողութիւն մը պիտի լինի։ Հացի խնդիրը չը պիտի կասեցնէ երիկ մարդն ընտրելու իրեն ընկերակից մը, որ պիտի բերէ միասին նոր ուժեր ընտանիքի մը հաստատման համար։ Կնոջ իր վրայ ունեցած վստահութիւնը պիտի աւելցնէ իր կարողութիւնը. Նոր սերնդեան մը առջեւ կենդանի օրինակը պիտի լինի աշխատութեան։ Քաղաքակրթիչ այն ազդեցութիւնը զոր կը վերագրեն, այնքան իրաւամբ, կանանց՝ պիտի աճի, պիտի կրկնապատկի, եւ հաւանական է թէ կնոջ նոր գործառնութեանց շնորհիւ՝ մարդկութեան վիճակն եւս բարւոքի թէ՛ բարոյապէս թէ՛ նիւթապէս։



## ԿՈՒՍՈՒԹԻՒՆ



Հին հեթանոսութեան իմաստուններէն շատերը ամուրի ապրեցան, եւ յայտնի է թէ անոնք կուսութիւնը պատուական կը համարէին ․՝ ամէն ժամանակի եւ ամէն քաղաքի ժողովուրդք՝ կուսութեան ազնուութեան վերայ զգացումն ունեցան ։ Հին ատեններն վերին դասակարգի քուրմերն եւ քրմուհիներն, որ անմիջապէս երկնից հետ կարծեցեալ յարաբերութեանց գոգցես պաշտօնն ունենալ կը պնդէին, մեծաւ մասամբ առանձին ըլլալու էին, եւ այս ուխտը դրժելը ամենամեծ ամօթ էր ։ Աստուծոյ նուիրեալ զոհերն անգամ դեռ հորթ չունեցող երինջ ըլլալ որոշուած էր, եւ որ աւելին է՝ վիպասանութեանց մէջ բանաստեղծութեան ոգին զարթուցանող ամենաքաղցր ձեւն կուսութեան անուան վերապահեալ էր, զոր Աստղկան եւ Աթենաս հանճարոյ եւ իմաստութեան աստուածուհւոյն կուտային ։

Ուրիշ հանգամանաց նկատմամբ մտածուելով ալ՝ կուսութիւնն ոչ նուազ սիրելի եւ պատուական է ․ բնութեան եռապետութեան, այն է շնորհաց, կատարելութեան եւ գեղեցկութեան, սիրահար բանաստեղծութիւնն՝ երիտասարդութեան կրքերը ամոքելու համար հնարած ձեւերովն կուսութիւնը ուիրական եւ սիրելի կ'ընծայէ մեզ ։ Ո՞վ կը տաակուսի՞ թէ գրեթէ դար մը յառաջ մենաստաններու մէջ միաբանեալ միայնակեցաց խումբը, իբրեւ փեթակի ժրաջան մեղուաց, առաքինութեան սուրբ

ծաղիկներով երկնաւոր մեղր չէին չիներ։ Կուսութեան վերայ Եկեղեցւոյ վարդապետք ճառեր յօրինած են. բայց առաւելապէս Նորա ազնուութիւնն մարդուս վրայ կը փայլի։ Այո՛, Եկեղեցւոյ մի ճշմարիտ վարդապետ կուսութիւնը կ'անուանէ «Զերծ յամենայն արատոյ», եւ ցոյց կուտայ թէ Նորա անհոգ հանդարտութիւնն՝ եւ անալէկոծ խաղաղութիւնը ոգւոյն պատուական է քան զամուսնական վիճակի վայրկենական հեշտութիւնը. Կ'ըսէ Նա կուսանաց. «Համեստ ամօթխածութիւնը ձեր աչուերը ներկելով գեղեցիկ յոյժ գծեր կը փայլեցնէ. մարդկային ատութենէ իբրեւ առանձին վարդեր հրաժարուած՝ յասպարէզ կ'իջնաք երկնին գեղեցկութեան ստոյգ արժէքը ցուցնելու, ո՛չ զմարմնոյ, այլ առաքինութեան գեղեցկութիւնը, այն՝ որ ո՛չ հիւանդութեամբ կ'եղծանի, ո՛չ զառամելով կը թառշամի եւ ոչ ալ մահուամբ կ'ապականի։»

Կուսութիւնն ի մարդ բարձր հանգամանք մը կ'ստանայ. սրտին կրքեր ալէկոծութեանց ենթակայ ըլլալով՝ եթէ տոկայ, այն ատեն է որ երկնաւոր է այն։ Ինչ որ հրեշտակը բնութեամբ ունի՝ առաքինի կոյս ոգի մը առաքինութեամբ կ'ունենայ։ Կրօնականաց մէջ կուսութիւնը մարտիրոսական ձեւ մը կ'առնու, որոնք կիրքերնին մահացնելով եւ անձնական հոգ եւ շահ մէկ կողմ թողլով՝ անդադար ընկերական օգուտ նպատաւոր ըլլալու կը պատրաստին։ Ո՞վ կրնայ ժխտել այս ճշմարտութիւնը, քանի որ կուսութեամբ կը գտնէ հոգին իւր բնական հանդերձեալ վիճակը, յորում ի յաւիտենս պիտի բերկրի.

Կուսական որդութեան՝ տանել աստուածային պաշտամանց մէջ ունեցած հարկաւորութեան համար կ'ըսէ Պօղոսն. «Իրաւ ճշմարիտն գաղափարն Աստուած է, եւ մենք պէտք է աշխատինք եւ ջանանք յամենայն զօրութենէ անոր նմանիլ։» Աստուծոյ սեղանոյն պաշտօնեաներն ուրիշներէն աւելի պարտական են Անոր նմանելու։ Այո՛, Աստուծոյ սեղանոյն անձնամատոյցներէն, կրօնաւորէն կ'ըսեմ, հրեշտակակերպ առաքինութիւն կը պահանջուի։ Կրօնաւորին հոգին պէտք է ըլլայ անապատ արեւուն ճառագայթից նման. ի մէջ Աստուծոյ եւ մարդկան միջնորդ մը լինելով, մեծ իմաստութեամբ եւ առաքինութեամբ խոհեմացեալ՝ խաղաղութեան եւ հոգեւոր բերկրանաց պաշտօնն անթերի կատարէ եւ թշուառաց կարեկցի։ Իսկ եթէ միայն ի դրունս մեծամեծաց յաճախէ, եւ ընտանեկան շնորհազուրկ յարաբերութեանց ենթարկուի, ընկերական կենաց մէջ իւր կրօնական զգացումն ուրանայ, այն ատեն է որ հոգւով եւ մարմնով կորստեան կը դատապարտուի իբր դրուժան եւ դաւաճան իւր պատուոյն եւ հաւատոյն։ Այլ սակայն ինչպէս որ դիւրին է արդար ըլլալը, եւ դրեթէ անհնարին սուրբ ըլլալը, այսպէս կուսական սուրբ վիճակ անխտիր առ հասարակ ամէն մարդու վերապահուած չէ՛։

Կուսութիւնն առաքինութիւն մ'է, եւ առաքինի ըլլալէ աւելի մեծ բան չկայ աշխարհիս մէջ. առաքինութիւնը մարդկային կատարելութեան ազնուագոյն վիճակն է, եւ այս վիճակին հասնելու համար է որ շատեր կուսութիւնն ընտրած են «Վասն արքայութեան երկնից»։ Վերջապէս հնացեալ կուսու-

*թիւնն որքան եւ դրուատեցաւ աստուածային բերնով, այլ սակայն, ցոյց տալու համար թէ կուսութիւնը դիւրատար վիճակ մը չէ, մի եւ նոյն աստուածային բերանն է՝ որ միանգամայն կը յաւելու. «Որ կարողն է տանել՝ տարցի։»*

Եղիշէ Վ. Դուրեան



## ԼԵԶՈՒ ԵՒ ԿՐՕՆ



Ահա՛ւասիկ երկու զօրաւոր տարրեր, որք ազգի մի գոյութիւնն դարուց ի դարս հաստատուն կը կը պահեն։

Թողլով ուրիշ ազգաց վերայ խորհրդածելն, մեր Հայ ազգի համար՝ այս երկու տարրերն ստուգապէս եղած են դարուց ի դարս տոհմային շարունակութիւնն պահպանողք։

Լեզուն կրնայ աղաւաղիլ ի բերանս հասարակաց, կամ գործածութենէ դադարիլ. բայց Կրօնն յանժամ կը հասանէ նմա յօգնութիւն, պահած ունելով զայն իւր պաշտամանց մէջ անփոփոխ՝ որպէս ընդունած էր իւր սկզբնաւորութենէն։

Այսպէս, Հայ ազգի լեզուն մինչդեռ ի վտանգի ենթարկուել է ժողովրդեան յաշխարհէ յաշխարհ գաղթականութեան պատճառաւ, Հայ կրօնը զայն անկորուստ պահել է իւր մէջ՝ նովաւ միայն կատարելով աստուածային պաշտամանց օրհներգութիւնքն. այնպէս որ՝ ժողովուրդն օտար լեզուներով խօսած ժամանակ՝ կարող եղած է այդ պաշտամանց շնորհիւ հասկանալ զայն, եւ իբրեւ սրբազնացեալ լեզու սիրել եւ պաշտել, եւ նովաւ աղօթել եւ յարաբերիլ առ իւր Ստեղծողն։

Ուրեմն մի միայն լեզուն պակսեցունելով եւ կամ արգիլել ջանալով չէ՛ կարելի ժողովուրդն հանել վտարել իւր ազգային շրջանակէն. քանզի իւր կրօ-

նից մէջ ունի զայն եւ կը վայելէ ։ Իսկ երբ կը փոխուի կրօնն եւ կ'այլայլի, եւ կամ կը պատուաստի օտար կրօնի հետ, այն ատեն լեզուն ի սպառ կ'անհետի այն ժողովրդէն, եւ լեզուի կորստեան հետ կը դադրի եւ կ'անհետանայ տոհմային անուան շարունակութիւնն ։

Օրինակներ շատ կան այս բոլոր ասացուածոց. բայց մեք կ'եզրակացունեմք թէ Հայ ազգի համար Հայ լեզուն անկորուստ պիտի մնայ այնչափ, որչափ իւր Հայ կրօնն կամ Հայ-եկեղեցին կը մնայ անխաթար եւ անայլայլ, իւր նախնեաց բովանդակ աւանդութեամբք. քանզի Հայոց եկեղեցին է Աւանդատուն ճշմարիտ Քրիստոնէութեան եւ ազգայնութեան ։

Այդ կրօնն է՝ որ Հայ լեզուի ամենահին ժամանակաց նշաններն պահպանելով, քրիստոնէութեամբ վերանորոգած եւ սրբագործած է զայն Հայ գրի գիւտովն, եւ Աստուածաշունչ մատենին՝ Հին եւ Նոր կտակարանաց սքանչելի թարգմանութեամբն, այլովքն հանդերձ ։

Այդ կրօնն է՝ որ այդ հնադարեան հոյակապ լեզուն կ'ուսուցանէ ժողովրդեան, քաղցր եւ հեշտալուր հնչեցունելով նոցա սրտին եւ մտքին աստուածային խորհրդակատարութեանց եւ փառաբանութեանց ներդաշնակ Շարականներն եւ սրտառուչ Մաղթանքներն ։

Այսպիսի աստուածախօս լեզուի դէմ կամեցան ոմանք ի միայնոց ամբարտակ կանգնել եւ խափանել, եւ մինչեւ իսկ գտնուեցան որք մեռեալ լեզու համարելով թաղել զայն մոռացութեան անդունդի

մէջ. բայց ապա իւրեանց սխալմունքն ճանաչելով՝ վերադարձան յուղղութիւն, համոզուած լինելով՝ թէ կենդանի՛ է եւ պիտի մնայ Հայ կրօնն, եւ նոյնպէս կենդանի մնացած է եւ պիտի մնայ ի սպառ Հայ լեզուն։

Այժմ իսկ կը գտնուին ոմանք ի նորահաս երիտասարդաց՝ որք զանձինս Աշխարհաբարեան կը կոչեն, եւ մերթ ընդ մերթ կը կրկնեն գրաբարի մեռելութիւնն. բայց սոքա եւս ի զուր ընդդէմ խթանի կ'աքացեն. անչո՛ւշտ պիտի դառնան ի զգաստութիւն՝ համոզուելով իրենց առջեւէ գնացողների նման՝ թէ անհնարին եւ անկարելի է Հայոց սրբազան լեզուն բառնալ ի միջոյ, առանց արհամարհելու զկրօնն սուրբ. եւ նա որ կ'արհամարհէ զմին կամ զմիւսն՝ նա չէ ճշմարիտ հայ։

Ապաքէն ճշմարիտ Հայոց կը մնայ կրթել իւրեանց զաւակունքն Հայ կրօնիւ եւ Հայ լեզուաւ, գրաբար լեզուաւ։



## ԲԱՂՁԱՆՔ

*Առ Ճէ*

* * *

Նորեկ գարնան թարմ ու դալար
Գուրակներէն, թուփերէն,
Այգուն ցօղով ողողեալ յար
Վարդի թերթեր թող բերեն.
Թող փետուրնե՛ր բերեն ինձ տան
Ջինջ աղաւնոյ, տատրակի,
Թիթռանց թեւե՛ր օդատատան,
Ջիւն փրփուրնե՛ր առուակի.
Փետուր, փրփուր, վարդ, թիթռան թեւ՝
Թո՛ղ խառնըւին, ձեւ առնուն,
Եւ կազմեն գողտր է՛ջ մը թեթեւ
Թուղթ՝ ուր գըրեմ Քու անուն...:

* * *

Թո՛ղ Դըրախտի ծաղիկներէն
Քաղեն մի փունջ մանուշակ
Հըրեշտակներն, եւ ինձ բերեն
Քիչ մ'ալ նեկտար անուշակ.
Եւ Նախամօր ըստեանց կաթէն
Կաթիլ մ'ինձ տան եւ մի քիչ
Իր արտասուաց անճա՛ռ չիթէն,
— Երկրի ցաւոց ամոքիչ. —

Արցունք կուսին, կաթ ու նեկտար
Մանուշակի գոյն առնուն,
Կազմեն մելա՜ն մը, սրբատամբր,
Որով գրեմ Քու անուն . . . ։

*
* *

Եւ թող երթան լեռնէն, դաշտէն,
Անտառներէն թանձր ու թաւ,
Ուր երգելով զիւրար պաշտեն
Թռչունք անկեղծ եւ անդաւ,
Երթան բերեն ինձ բոյն ու թառ
Սարեակներու, սոխակի,
Եւ անոնցմով կազմեն կիթառ
Նուրբ, հեշտաձայն կրկնակի,
Որուն վըրայ ես, հէք պըւէտ,
Խանդով մ'անվերջ եւ անհուն,
Ցըմա՜հ երգեմ յերգ սիրաւէտ,
Ո՜վ Սէր իմ Սէր, Քու անուն . . . ։

## ՀԱՅ ԱՂՋԻԿԸ

Շատ հին բան մ'ըսած պիտի ըլլայի, եթէ ըսէի թէ աղջկանց դաստիարակութիւնն ընկերական կազմակերպութեան էական տարրն է, եւ էմէ Մարթէն գուցէ նոր աննէր իւր յայտնած ճշմարտութիւնը, եթէ գիտնար թէ ո՛րքան հազար անգամներ ըսած են իրեն պէս՝ թէ կին մը պատրաստելը ազգ մը կրթել է ։

Հետեւաբար պարապ ջանքեր չպիտի ընեմ հաստատելու համար կնոջ դերին մեծութիւնը, ոչ միայն քաղաքակրթեալ աշխարհին մէջ, այլ նոյն իսկ վայրենիներուն ։

Ո՞վ է որ մանկան առաջին քայլերուն կ'առաջնորդէ, ցոյց կուտայ անոր գուրգուրանքով թէ ո՛ր բաները պէտք է ընել ու ո՛ր բաներէն պէտք է զգուշանալ.— կինը, կամ աւելի ճիշդ խօսելով՝ մարդկային երրորդ սեռը, մայրը՝ սիրոյ վսեմ զաւակը, կնոջ նուիրագործումը ։

Քանի որ կոչուած է կինն այսքան մեծ, այսքան սուրբ պաշտօն մը կատարելու, ի՞նչպէս պարտին զինքն օժտել, ի՞նչ բան կրնայ անոր օգտակար ըլլալ եւ հայ կնոջ մէջ ի՞նչ է որ կը պակսի մանաւանդ ։ Ահա՛ նախ այս կէտերը քննենք ։

Եւ հարկ չկայ որ տրամաբանօրէն լուծելու հետամտինք այսքան պարզ, այսքան ակներեւ խնդիր մը ։

Կնոջ համար ուսումը պէ՞տք է . Նախընտրելի չէ՞ անմշակ անուս մայրեր պատրաստել ։

Երբ ուսումն անհրաժեշտ կը նկատուի արանց, կաթելի՞ քան է թէ կինն որ անոնց ընկերը պիտի ըլլայ, անմշակ ու տգէտ, աղախնայ կամ, աւելի՛ գէշ, քանի որ փայլուն սնոտիքներու մէջ իսկ պիտի փայլի, սիրուն զարդի մը դերը լնու. ո՛չ, այդ աստուածիւնը ծաղր մ՚է քաղաքակրթութեան դէմ. զի ոչ մէկ բան կրնայ ապացուցանել թէ կինը պարտի անուշ հիացող մ՚ըլլալ իր գիտուն ամուսնոյն, քանի որ այրերէն տարբեր գոյով հանգերձ՝ հաւասար ըլլալու ամէն յատկութիւններն ունի, երբ իրողութիւնք այլ եւս առեղծուած չեն նկատեր կնոջ այդ ձկտումը։

Մանաւանդ որ ուսումը մտքի զարգացումն է եւ վաղաժամ փորձառութեան գաղտնիքներն ունի. արդ, ինչո՞ւ կինն ալ, եթէ ոչ դրամ շահելու, գէթ իր զաւակը դաստիարակելու միայն գերազանց կարեւորութիւն ունի, ատմկի գաղափարներու, նախապաշարմանց, տգիտութեան մթնոլորտին մէջ մեծցնէ խեղճ փոքրը, որ զաշխարհ պիտի լեցնէ, որ ծնող ապագայն է։

Ընդհակառակն, ուսումը պէտք է կնոջ համար. զի այն է որ բարգաւաճ միտք մը պատրաստելով՝ կը ներշնչէ սրտին միանգամ ընդ միշտ լաւագոյն զգացումներ։

Եւ այդ ճշդութեան անըմբռնողութենէն յառաջ եկած է սակայն դժպատեհութիւն մը. պայքարը կը ծնի. կնոջ ի՞նչ պէտք, կը գոչեն, ուսումը։

Եւ կարծեմ ուսումը տուողն ալ ծնողքը չէր, եւ ինչ որ նա տալու էր, կրթութիւնն էր, սկսեալ առաջին ճիչերուն հետ, որ պարտ էր աճել եւ սիրուն ներդաշնակութիւն մը կազմել ուսման հետ զոր դպրոցէն քաղած էր։

*Եւ ահա կռիւն ուսման եւ կրթութեան մէջ։ Զի երբ մտքին հետ սիրտն ալ չի կրթուիր, չեն վանուիր անկէ ստացական կամ բնածին թերութիւններն, միտքն ու սիրտն իրենց հակասարակշռութիւնը կորսնցընելով յառաջ կուգան շատ մը հետեւութիւններ, եւ վախճանն կ'ըլլայ աղետաբեր։*

*Ուստի կին մը որ միայն բեղուն միտք մ'ունի, սուր երեւակայութիւն, սահուն ու հմտալից խօսակցութիւն, կրնայ փայլիլ սրահի մը կամ ընկերութեան մը մէջ, նոյն իսկ սքանչացողներ գտնել իւր շուրջը, հիացողներ իւր տաղանդին վրայ. այլ իւր տան մէջ, իւր ընտանեաց քով, կրնայ նսեմանալ իւր թերութիւններով։ Զի այլ է ուսում, այլ է կրթութիւն. մին տան մը զարդն է, իսկ միւսն՝ հիմը. երբ հիմը հաստատ չէ, շէնքը խախուտ է եւ վըտանգաւոր։*

*Ո՜րքան կարեւոր եւ օգտակար պիտի ըլլայ վարժարանաց մէջ բարոյախօսութեան եւ տնտեսագիտութեան դասախօսութիւնը, որոցմով աղջիկն ոչ միայն դպրոցին՝ այլ եւ ապագային տան մէջ պարտաճանաչութիւնը կ'ըմբռնէ, քանի որ իւրաքանչիւր ազգ ունի իւր որոշեալ ընթացքն դաստիարակութեան. մին իւր լրջութեամբ, միւսն իւր տնտեսագիտութեամբ, ուրիշ մը իւր ընկերականութեամբ զիրար կը գերազանցեն, մինչ հայուն յատկանիշն է հետեւութիւն, նմանութիւն որ կեղծ է. կեղեւն, ոսկեզօծ շրջանակն միայն օրինակուած է, եւ հիմնական գոյութիւն չունի։*

*Եւ որովհետեւ մեր ընտանեկան կազմակերպութիւնն ունի շատ մը թերութիւններ, աղջիկն իւր*

փոքր տարիքէն այդ թունաւոր շրջանակի ազդեցութեան տակ կը մնանի, կ'աճի, եւ երբ ծառն կ'արմատանայ, անկարելի է գրեթէ ուղղել զայն ։

Տղուն վախը ազդեր են ամէն բանի․ հուրիներով, սաղայէլներով շրջապատեր են զինքը․ իղձերը կատարեր են միշտ՝ երբ պզտիկ էր, ու հիմայ . . . ըսեր են իրեն թէ շատ խելացի է, ու ծներ է իւր մէջ յաւակնութիւնը․ զովեր են զինքն որ դրացի աղքատին հետ չի տեսնուիր, երես կը դարձնէ․ իրեն քով բամբասանքը շռայլեր են, այդ շաղախը չարութեան, մարդու չհաւնելու ու գձուձ հաշիւներու․ իրեն արգիլեր են որ երեկոյին հայրիկին բուն եղելութիւնը պատմէ՝ այլ փոխելով զայն, եւ ստութեան վարժեցուցեր են զինքը ։ Աղտոտ խօսակցութիւններ, զազիր հայհոյանք, այր եւ կնոջ լկտի վէճեր չեն խնայեր իւր մատղաշ հասակին․ եւ հիմայ ձեռքը վկայական մը տուեր են, անցագիր նոր աշխարհի մէջ, իշխանավայե՛լ յաղթանակ ։

Ու այդ վկայագրին շուրջ գուրգուրանք մը, յարգանք մը կը յածի․ շրջանակի մէջ պիտի պահուի, ոսկեզօծ շրջանակ․ որոշուած է ։

Այցելու չի մնար որ չտեսնէ այդ վկայագիրը, զոր աղջիկն, ամօթխած, մօրը հրաւէրին վրայ կ'երթայ բերել իւր սենեկէն ։ Գովեստ ամէն կողմէ, ծիծաղելի տարափ մը դիւթիչ խօսքերու, որոց մէջ խեղճ աղջիկը կ'ուռի ։

Հայրը ամէն տեղ, ուր որ մտնէ, կը խօսի իւր հանճարեղ եւ գիտնական աղջկան վրայ, զոր վերջին հանդիսին օրը մարդ չէ մնացեր որ եռանդագին չծափահարէ ։

Ցաւալի իրողութիւնն այս է։

Շփացուած ամէն կողմանէ․ նախ չքնաղազգեստ մը կամ թանկագին նուէր մը կուտայ հայրը․ իսկ մայրը, ասամիկ կինն մ'ընդհանրապէս, չ'ուզեր որ իւր ուսումնական աղջիկը տան գործերուն խառնուի․ խեղճն արդէն յոգնած է եւ այնքան գրքեր ունի զորս պիտի կարդայ։

Եւ յաւակնութիւնն կը շոյուի այդ միամիտ էակին մէջ․ քանի մ'օրէն պիտի նողկայ մօրմէն որ այնքան տգէտ է ու չ'ըմբռներ իւր վեհ ու բարձր գաղափարները։

Ո՛չ, ամուսնական միջավայրը շատ գծուծ է․ ուսումը քանի մը տարուան մէջ շահուած՝ զինքը արժանի կ'ընէ ամենէն նշանաւորին բազկերուն․ տան մութին մէջ պիտի նսեմանայ եւ պիտի խամրի հանճարը . . . տխմար համարումէն ծնած այդ հանճարը։

Ո՞ւր է յանցանքը․ ուսմա՞ն։

Եւ վարժարանէն նոր ելած՝ խոշոր խոշոր դղեակներու մէջ հմայուած կ'ապրի աղջիկը։

Տեսնելու էք զինքը։ Եթէ գիտէք դրուատել իւր յատկութիւններն կամ ստեղծել զանոնք, եւ իւր մուրացկան միտքը փայփայելու արուեստն ունիք, հաւատացէք, զձեզ շատ համակրելի պիտի գտնէ, ըլլաք այր կամ կին, եւ ամէն անեղ երկնից մէջ պիտի պտըտցնէ զձեզ։

Այս փոյթեռանդ ազնուորութիւնը չի դանդաղիր բարեկամուհի մը գտնելու, տարեկից, համախոհ, եւ երկուքն ալ զիրար պիտի պաշտեն, մէկտեղ պիտի թղթակցին, ցնորուր ըմպելով մտերմութեան բաժակը։ Եւ սակայն օր մ'ալ յանկարծ խզումն բարեկամու-

թեան, զի փորձով տեսնուած է թէ բարեկամութիւնն երկու կանանց մէջ չի կրնար մշտատեւ ըլլալ։

Այլ եւս չփացած աղջիկն իւր կամքերն ունի, իւր քմահաճոյքները պէտք է անպատճառ կատարուին. եւ երբ մայրը փոքր ընդդիմութիւն մ'ընէ եւ իւր փորձառութեամբն արգիլէ այս կամ այն բաղձանքն աղջկան, կը յանդիմանուի կը նախատուի իւր ռամիկ կին, զի այլ եւս այն աղջիկը չէ համեստ ու երկչոտ։

Դժբաղդաբար բարեկեցիկ դասուն մէջ աւելի կը նշմարուին այս օրինակները։ Միայն առաջինին հրապուրիչ ցոլքով մը կը փայլին. իսկ տա՞ն մէջ . . . ։

Աղջիկը տան մէջ պէտք է, անկէ դուրս զարդ մ'է։

Ի՞նչ տգեղ բան մը պիտի ըլլար, եթէ նոյն իսկ ամենէն սիրուն ծաղիկները բուսնէին հողի մը վրայ, առանց կարգի, խառն ի խուռն, մացառներուն քով, առանց ածուի եւ ցանկի։

Ճշմարտապէս ուսեալ եւ դաստիարակեալ կին մը չպիտի արհամարհէ անշուշտ տնտեսագիտութիւնն, եւ զայն իւր ամէն մանրամասնութեամբք գիտնալն իրեն պարտականութիւն պիտի համարի՝ գտնելով անոր մէջ հաճոյք եւ գոհութիւն, ինչ որ ուրիշները կը փնտռեն պճնասիրութեան եւ զբօսական ժամանցներու մէջ։

## ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՆՔՈՆԱՅԷ Ի ԲԻՒԶԱՆԴԻՈՆ



*Ադրիական ծովուն վրայ գեղեցկանիստ դիրուք կառուցեալ է Անքոնա. քաղաքիս հարաւակողմն՝ ի բարձրաւանդակի՝ դէպ ի յերկինս կը սլանայ Սըրբուհւոյ Կուսին նուիրեալ մայր եկեղեցին, ուր կը յաճախեն բազմութիւնք բարեպաշտ հաւատացելոց ուխտի համար. հոն է խնդրակատար Աստուածածնի հրաշագործ հին պատկերն, որուն կենդանի հայեցուածքն եւ սքանչելի գծագրութիւնը յիրաւի մեծ զարմանք եւ ապշութիւն կ'ազդեն այցելուաց:*

*Հոսկից է որ ներկայ տարւոյս յուլիսի վերջերն իտալական Ընդհանուր Նաւարկութեան ընկերութեան Սողունեթոյ շոգենաւով ճամբայ ելանք դէպ ի Կոստանդնուպոլիս: Երեկոյեան դէմ մեկնեցանք հիւսիսային մեղմաշունչ հովմով. քանի մը ժամ յետոյ գիշերուան մութը ցամաքին հետ զիրկընդխառն փարելով՝ կամաց կամաց անտես ըրաւ մեր աչքէն Իտալիոյ չքնաղ երկիրը: Ամբողջ գիշերն հանդարտ օդով ու ծովով նաւարկելով Հանդրին յանդունդս, երկրորդ առաւօտը կանուխ հանդիպեցանք Թրէմիթի կղզեաց խմբին, ուր կը գտնուին յանցաւորաց եւ պատժապարտից բանտերը: Ժամ մը հազիւ հոս կեցանք, եւ շարունակեցինք ճամբորդութիւննիս դէպ ի Պարի. ուր հասանք ընդ երեկս, Անքոնայէն մեկնելնէս գրեթէ օր մը ետքը: Սոյն վաճառաշահ քաղաքը հետզհետէ մեծ կարեւորու-*

*թիւն կ'ստանայ, եւ տարուէ տարի շէննալու վրայ է. ծովէն դիտելով զայն՝ կարծես թէ դեռ վերջերս աւարտած է քաղաքին շինութիւնը, ա՛յնքան տները կոկիկ ու նորակառոյց կ'երեւին. քարուկիր շինուածոց գեղեցիկ շարք մը կարգաւ կը շրջապատէ ծովեզերքը. իսկ գիշերը լուսերու մէջ կը շողշողայ Պարի։*

*Խաւար էր ծովուն ու երկնքին երեսն, եւ նոր լուսինն ամչկոտ դէմքով հազիւ իւր մահիկեղջիւրները ցուցընելու կը համարձակէր հորիզոնին վրայ, երբ Պարիէն ճամբայ ելանք Պրինտիզի երթալու համար։ Եօթը ժամ նաւարկելով՝ առտուն կանուխ յառաջ քան զծագել արեգական մտանք քաղքիս ընդարձակ նաւահանգիստն, որ Ադրիականին ափանց վրայ առաջին եւ գլխաւոր կեդրոնն է, ուրկից կը մեկնին կանոնաւորապէս դէպ ի հարաւ եւ յարեւելս Լոա-լոյ թղթատարական շոգենաւք. Նոյնպէս Հնդկաստան գնացող անգլիական սուրհանդակութեան առագընթաց շոգենաւներն իրենց մեկնման կէտն ըրած են զՊրինտիզի։ Ամբողջ օրն հոս անցուցինք, եւ յաջորդ առաւօտն ճամբայ ելնելով՝ տասուերկու ժամէն հասանք ի Գորֆու. տեղացիք առհասարակ այս կղզին ծաղիկ առափնութեան կը յորջորջեն. բայց չեմ գիտեր թէ ի՛նչ աստիճան կը ճշգրտի բնակչացս վրայ այս առածը։ Քիչ ժամանակ հոն մնալով՝ սկսանք դէպ ի հարաւ յառաջ ընթանալ. Յոնիական ծովուն մարգարտազեղ կղզեաց ներսիդիէն կ'անցնինք. ծովը խիստ հանդարտ է, իբր թէ լճակի մը մէջ կը նաւարկենք. եւ ա՛յնչափ մօտէն կը քերենք սոյն կղզեաց կանաչազարդ եզերքէն՝ որ*

կարծես թէ սակաւաբնակ տեղեացս մարդոց հետ մնաք բարովի փոփոխակի ողջոյն մը տալ կը փափաքինք։ Ահա հեռուն յաջակողմն արեւեղածաղիկն Զանթէ, իւր անուշահոտ կիտրոններուն եւ լիմոններուն անտառակներովը զարդարուած. ահաւասիկ մեր մօտն Իթակէ եւ Կեփալոնիա կղզիք, որոց իւրաքանչիւրին հրաժեշտ տալով կը հեռանանք։

Գիշեր է, եւ լուսնկային աղօտաճաճանչ լուսովն հանդարտաքայլ եւ արշաւասոյր կը դիմենք յառաջ ի հարաւ կոյս. հեռուանց կը նշմարենք մեր ձախակողմն իմաստութեան գոյնագոյն փարոսը. աւելի յառաջանալով կը մօտենանք Մաքաքանի ահագնատեսիլ հրուանդանին, ծանօթ իւր վաղեմի ճգնաւորին խղիկովը. անոր արեւելեան կողմը կը կանգնի Ս. Հրեշտակի ոչ նուազ երկիւղալից սարաւանդը։ Ցիրաւի քստմնելի ահուդող մը կը պատէ կը պաշարէ հոսկից անցուդարձ ընող ճանապարհորդը. եւ երբ ողջամբ զերծած կը զգայ ինքզինքն այս փորձանքաւոր ջրերէն՝ այն ատեն հանդիստ շունչ առնուլ կը սկսի, գոգցես իմն վերակենցաղեալ։ Կէս գիշերուան մօտ էր՝ երբոր Մաթաքանի դիմացէն կը կտրէինք կ՚անցնէինք ծովը. յանկարծ այն քաղցրաշունչ եւ յաջողակ հողմը մրրկայոյզ բռնութեամբ մեզի հակառակ փչել սկսաւ. քունէս ցատկեցի, արթնցայ. ա՛լ անհնար եղաւ մինչեւ առաւօտ աչքս գոցել. մերթ եւրակիկլոնն՝ արեւելեան-հիւսիսային քամին՝ ամենայն սաստկութեամբ կը շնչէր, այնպէս որ կը մռնչէին եւ կը ճարճատէին ճոպանք կայմից, եւ մերթ կը դադրէր կարծես ուժաթեկ. բայց վայրկեան մը յետոյ աւելի բուռն ուժգնութեամբ կը շաչէր կը

չառաչէր՝ ամէն ճիգ թափելով զմեզ յետս մղելու համար. դիւրին է երեւակայել՝ թէ այնպիսի փքոցուռոյց ծովը ինչպէս իւր լեռնակուտակ ալեօքը կը բախէր եւ կը հարուածէր մեր նաւն, որ կոհակաւէտ մկանանց մէջ խաղալիկ դարձած էր: Երբեմն կը վերանայինք կը բարձրանայինք ի վերայ վէտ վէտ կոհակաց եւ երբեմն խորասոյզ կ'ըլլայինք յանդունդս, եւ ջուրք բազումք անցանէին մեր գլխուն վրայէն. այսպէս մինչեւ առտու երերածուփ ալեաց մէջ ծածանելէն տատանելէն յետոյ, երթալով դէպ ի ցամաք մօտեցանք, եւ ծովն ալ իւր յառաջուան վայրագութիւնը մեղմացնելով առ սակաւ սակաւ զիջաւ: Արեւն իւր մարը մտնելու վրայ էր՝ երբ կոխեցինք Պիրէոնի անքոյթ նաւահանգիստը:

Նորէն գիշերանց մեկնեցանք անտի, եւ Անդրոս կղզւոյն քովէն քերելով՝ մտանք Արքիպեղագոս ծովն, զոր սաստկաշունչ հիւսիսին ծփալից ալեօք սպիտակացուցած եւ վեր ի վայր յուզած խռոված էր. քանի ժամու չափ սաստիկ ծովածփանք կրեցինք, այնպէս որ մեր չոգենաւը գոգցես ուժասպառ եւ պարտասեալ՝ հազիւ թէ փրփրադէզ կոհակները դանդաղաքայլ ընթացքով կրնար ճեղքել: Մէկէն խոր գիշերուան մէջ խաղաղաւէտ հանդարտութիւն մը տիրեց. որովհետեւ արդէն իսկ հասած էինք Դարդանելի նեղուցը, ուր անվրդով կը նաւարկէինք:

Յաջորդ առտուն մտանք Մարմարայի ծովն, որ կարծես լայնածաւալ լճի մը կերպարանքն ունէր. առջեւնիս կանգուն կեցած էր Մարմարա կղզին, որուն քովէն անցանք՝ մեր աջակողմը թողլով զայն:

*Երբ գրեթէ աներեւոյթ եղաւ այն յաչաց մերոց, ահա գեղապանծ եւ աննմանն Բիւզանդիոն՝ մարգարիտն արեւելից՝ երեւցաւ մեր դիմացը, ուր հասանք ողջամբ յետ եօթնօրեայ ճանապարհորդութեան ։*

Յովհաննէս Հ. [illegible]



## ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆ

Ճշմարտութեան վրայ շատ անգամ խօսուած է եւ կարեւոր իսկ է որ խօսուի։ Ճշմարտութեան ուսմամբ մարդն կարող է ազատութեան ստրկութենէն, տգիտութեան նախապաշարումէն, մոլութեան գերութենէն, անապաշտութեան վտանգէն. եւ սորա համար է որ ճշմարտութեան վարդապետն ասած է. «Եւ ծանիջիք զճշմարտութիւնն, եւ ճշմարտութիւնն ազատեսցէ զձեզ։» (Յով. Ը. 32)

Ճշմարտութեան վրայ անհամար ճառեր, քարոզներ եւ միտումներ յօրինուած են, գրքեր հրատարակուած են, եւ կարող ենք ասել թէ ճշմարտութիւնն է մարդկային ազգի իղձն, փափաքն, ուխտն, յոյսն, աղաղակն դարուց ի դարս։

Ճշմարտութիւնն է որ մի եւ նոյն բանալեաւ կը բանայ մտաց առջեւ գիտութեան դռներն եւ սրտի առջեւ՝ բարութեան գանձերն։ Տգիտութիւնն ու ստութիւնն կը թշուառացնեն զմեզ. միայն ճշմարտութիւնն է որ կարող է հարստացնել. քանզի ճշմարտութեան մի այլ անունն է երջանկութիւն։

Եթէ մենք փակենք մեր աչքերն եւ չկամենանք տեսնել ճշմարտութիւնն, ճշմարտութիւնն կը տեսնէ զմեզ, կը դատէ եւ ինք յաստատամտին ու արդարութեան մէջ կը փայլի բովանդակ, կը հաչակուի եւ կը փառաւորուի եւ յանկարծ յերեւան կը գայ իբրեւ շանթ փայլատակեալ։ Մարդն կարող է միայն ուրանալ ճշմարտութիւնն. իսկ եղծանել ջնջել՝ ոչ

երբեք . եւ արդէն պիտի չկարենայ միշտ ուրանալ ։

Մարդկութիւնն, ընկերականութիւնն կը սնանին եւ կ'ապրին ճշմարտութեան յիշատակաւ ։ Ճշմարտութիւնն մի աջ է, որ կը պահէ ընկերականութիւնն ամբողջական ապականութենէ եւ քայքայմանէ ։ Ճշմարտութեան պաշտպանքն եւ հակառակորդքն իրարու կ'ընդհարին, եւ սակայն ճշմարտութիւնն հզօրագոյն է իւր հակառակորդներէն, զի կը նուաճէ զնոսա . հզօրագոյն է իւր պաշտպաններէն, զի կ'անցանէ քան զնոսա ։

Բանաստեղծներն եւ չափաբաններն, ի ձայն թմբկի եւ տաւղի, կը հռչակեն թէ ճշմարտութիւնն թեւաւոր է եւ արագընթաց . սակայն ճշմարտութիւնն չունի բնաւ այդ խրոխտ ձեւն ։ Նորա ընթացքն հաստատ է, բայց ո՛չ առանց խոչընդոտներու ։ Նորա յաղթանակներն ապահով են, բայց յամր եւ հանդարտ ։ Ստութիւնն թէեւ թեւաւոր է, բայց միշտ իւր վախճանն անստոյգ ։ Հոմերոսի վսեմախոհ այլաբանութեան մէջ՝ Աղօթքն կաղ նկարագրուած է, իսկ թշնամանքն՝ արագաքայլ . բայց երկոքեան միասին կը հասնին յոտս գահոյից Արամազդայ ։ Այսպէս կարող ենք ասել ճշմարտութեան համար, աշխարհիս մէջ ուր կը բնակինք . զի ճշմարտութիւնն է որ կը կաղայ, եւ ստութիւնն է որ թեւեր ունի . սակայն կաղ ճշմարտութիւնն կը յառաջէ քան թեւաւոր ստութիւնն ։ Ճշմարտութեան հակառակորդք ինքեանք իսկ զարմացած են շատ անգամ՝ թէ ինչպէս ճշմարտութիւնն, ընդ երկար հալածուելէն զկնի, դարձեալ տեղ կը գրաւէ ըմբոստներու մտաց եւ վարուց մէջ ։ Միշտ խիստ եղած է նոցա՝ ընդդէմ խթանի աքացել ։

Պէտք է հռչակել ճշմարտութիւնն . պէտք է հրաւէր իսկ կարդալ հակառակորդաց , որ խօսին. պէտք չէ ըսել — Լռեցէք . այլ պէտք է ըսել — Խօսեցէք ։ Ճշմարտութեան ամենամեծ թշնամիքն նոքա են որք կ'արգելուն մարդուն՝ յայտնել իւր համոզումն , իւր դաւանութիւն ։ Այսպիսեաց համար է որ կ'ասէ Պօղոս Առաքեալն . « Ճշմարտութիւնն գերի կը պահեն անիրաւութեան մէջ ։» Ով որ կը կարծէ թէ լռութիւնն խաղաղութիւն է եւ մահն՝ կարգաւորութիւն , շատ կը սխալի ։ Ստութիւնն միակ մոլութիւնն է՝ որուն սեղան չկանգնեցին ի հնումն . քանզի սեղանն սրտին մէջ էր ։ Արդարեւ կան ժամանակներ որ պէտք է խնայել ճշմարտութիւնն . զի նա մի մարգարիտ է . բայց հարկ անհրաժեշտ է զանազանել սոյն յարգական լռութիւնն՝ կեղծելէն , թագուցանելէն ։ Այսպիսի լռութիւնն մի բարբառ է, եւ մենք այսու ոչ թէ կ'ուրանանք ճշմարտութիւնն, քա՛ւ լիցի , այլ կը զգուշանանք ենթարկել զայն անարգանաց ։ Պաշտպանութիւնն մեր անձին համար չէ՛, այլ ճշմարտութեան ։

Մարդն ստեղծուած է զԱստուած փառաբանելու համար , եւ ամենէն մեծ փառաբանութիւնն է վկայ լինել ճշմարտութեան ։ Աստուած փառաւորեալ է ինքնին . բայց մարդն Յաւիտենական Արեգական հայելին է , որոյ մէջ պիտի ցոլանայ , պիտի ճառագայթի եւ շողշողայ բովանդակ ։ Ճշմարտութիւնն հռչակելն պէտք է լինի մարդուս ամէն գործոց հոգին եւ չարժառիթն , ամէն խօսից շնորհքն եւ վայելչութիւնն ։

Ինչ որ է օդն՝ բոցոյն համար , նոյն է հռչակելն ,

խոստովանելն՝ ճշմարտութեան համար։ Բազմապատկեցէք, որչափ կամիք, այրելի նիւթն. հուրն չի բոցավառիր բնաւ. կը շիջանի, եթէ զլանաք օդն։ Պարարեցէք ձեր փաստերով, որչափ կամիք, կոյր համոզումն. օդոյ բացակայութիւնն կամ այսպէս ասել՝ լռութիւնն կը շիջուցանէ զայն առ տակաւ։

Ուրեմն պէտք է սիրել ճշմարտութիւնն։

---

## ԾՈՎՈՒ ՎԵՐԱՅ.



Երկինքն պարզ է, ծովն խաղաղ. շոգենաւն կը սրանայ, եւ ես կը խորհիմ։ Կը խորհիմ, եւ Աստուծոյ երեք մեծ սքանչելիքներն կը ներկայանան աչացս եւ մտացս տեսարանին. — վերեւէն Երկինք, ներքեւէն՝ Ծով եւ երկուսին միջավայրին մէջ՝ Ես, Մարդս։ Երկինքն անհուն եւ անեզր. ծովն՝ լայնատարր. իսկ ես՝ մարմնով սահմանաւոր եւ հոգւով անսահման, ծովէն ընդարձակ եւ երկինքէն բարձր։ Ընդարձակ եւ բարձր եմ ես, այո՛, հոգւով. վասն զի սոյն վայրկենիս կը թափանցեմ ծովուն խորքն եւ կը քննեմ ու կը դատեմ. սրտովս կը բարձրանամ երկինք, մթնոլորտն կը ճեղքեմ, ամպերու եւ սառնամանեաց գաւառներէն կ՚անցնիմ, եւ երկնակամարի ամենավերին բարձրութենէն կ՚ամփոփեմ մըտացս մէջ բոլոր տիեզերքն, երկինք եւ երկիր, ծով եւ ցամաք եւ համայն արարչութիւնն։ Այս ամենէն յետոյ կը խօսիմ Նաեւ բնութեան արարչին

հետ․ կ'աղօթեմ, նորա կատարելութեանց եւ մեծութեան վերայ կը խորհիմ, կը մտածեմ եւ կը սքանչանամ։

Ի՞նչ անհունութիւն եւ ի՜նչ սքանչելիք։

Կ'ամպոտի երկինք, կը մրրկի օդն, կ'ալէկոծի ծովն, մարմինս կը սարսի եւ կը տատանի․ սակայն հոգիս անսասան է։ Բայց միթէ հոգիս սասանմունք չունի՞․ միթէ հոգիս չ'ալէկոծիր․ Այո՛, կը սասանի եւ կ'ալէկոծի․ բայց իւր ալէկոծութիւնն անկախ է ծովու ալէկոծութենէն եւ տիեզերաց սասանումէն։

Հոգիս կ'ալէկոծի նաեւ ցամաքի վերայ, նաեւ այն ժամանակ՝ երբ երկինքն խաղաղ է, երկիրն՝ ծիծաղաժպիտ եւ բովանդակ բնութիւնն՝ անդորր։ Ինչէ՞ն է հոգւոյս ալէկոծութիւնն․ — խղճիս վրդովմունքէն եւ սրտիս անհանգստութենէն։ Այո՛, իմ հոգիս եւս մի անհուն ծով է, որ երբեմն կը խաղաղի եւ երբեմն կ'ալէկոծի․ իմ սիրտս մի անեզր երկնակամար է, որ երբեմն կը մթագնի եւ կը փոթորկի, եւ երբեմն արեգակնազարդ եւ աստեղազարդ կը շողշողայ։ Միտքս մի արագահաս նաւ է, որ մի ակնթարթի մէջ իւր խորհրդածութեան բոլոր բեռներով կը սրանայ եւ կը չափէ Ովկիանոսներու անհուն տարածութիւնն։ Այսպիսի մտախոհութեանց մէջ կը զգամ ես՝ թէ ո՜րչափ մեծ ստեղծած է զիս իմ Արարիչն․ բայց կը զգամ նոյնպէս՝ թէ ո՜րչափ կարող եմ նուաստանալ, եթէ մոռանամ արարչապարգեւ կոչումս եւ արժանաւորութիւնս։

Թո՛ղ փոթորկի ծովն, թո՛ղ որոտայ երկինքն․ չեմ սասանիր ես, եթէ կամիմ։ Բայց թո՛ղ ժպտի համայն բնութիւնն․ ես կը սասանիմ, եթէ կամքս

*կորուսած եմ ։ Անհագին ծովն կարող չէ զիս ընկղմել եւ անունս անհետացնել․ բայց ես կարող եմ մոռացութեան մէջ թաղել իմ կեանքս եւ յիշատակս ։*

*Այս տեղէն կը գուշակեմ անա՝ թէ ո՛րչափ մեծ եմ եւ հզօր, այնչափ անզօր եմ եւ տկար․ մեծ եմ հոգւովս եւ տկար՝ մարմնովս ։ Կը գուշակեմ թէ Արարիչն է որ մեծ եւ հզօր ստեղծած է զիս, եւ ես եմ՝ որ կը տկարացնեմ զիս ։ Հետեւապէս կ՚իմաստասիրեմ՝ որ ես Աստուծով միայն կարող եմ մեծ եւ հզօր մնալ․ Աստուծով միայն կարող եմ տիեզերաց իշխել, ծովն քննել, երկինքն զննել, ցամաքն չափել եւ սահմանաւոր մարմնովս՝ անսահման կեանք ունենալ ։ Ի՞նչ է անդնդախոր ծովն Աստուծոյ առջեւ, եթէ ո՛չ կաթիլ մի ի դուլէ ։ Ի՞նչ է անեզր երկինքն, եթէ ո՛չ մի մագաղաթ, զոր աստուած երբ կամի՝ կը գալարէ ։ Բայց ո՞չ ապաքէն եւ ես Աստուծոյ պատկերն ու նմանութիւնն ունիմ ։*

*Արդ, ո՛վ Արարիչ, մեծութեան եւ զօրութեան մէջ պահէ՛ զիս․ մի՛ թողուր ծովու պէս ալէկոծիլ, երկնից պէս փոթորկիլ, երկրի պէս ցամաքիլ եւ գիշերուան պէս խաւարիլ ։*

*Գիտեմ ես եւ կը խոստովանիմ՝ որ Քեզմով միայն մեծ եմ ես եւ հզօր․ Քեզմով միայն ԻՆՉ եմ ես․ իսկ առանց ՔՈ՝ ՈՉԻՆՉ ։*

## «ԳԻՐՔ ԾՆՆԴԵԱՆ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ, ՈՐԴԻՈՅ ԴԱՒԹԻ, ՈՐԴԻՈՅ ԱԲՐԱՀԱՄՈՒ»



*Մարդ փափաք ունի լիակատար երջանկութեան, այսինքն միշտ ապրելու եւ ամէն բան գիտնալու եւ վայելելու ։ Այլ սակայն որքան եւ գործադրէ իւր ոյժն ու խելք, որքան եւ ձգտի երջանկութեան, կարելի չէ զայն գտնել աշխարհիս մէջ ։ Մարդկային սրտի մէջ եղած այս փափաքէն կարելի է համոզուիլ՝ թէ մարդ միանգամ համն առած է երջանկութեան, ուստի արդ իսկ բուռն անձուկ կը զգայ առ այն, եւ թէ Աստուծոյ եւ իւր մէջ բան մը պատահած է, որով մարդկային գեղեցիկ շէնքն ու աշխարհս աւեր մը կրած են ։*

*Մարդուս անհուն փափաքաւ երջանկութեան ձկտելէն կը հետեւի՝ թէ նա ճաշակած է երբեմն աստուածային փառաց, որոյ հետքը կամ նշաններն են որ կան իւր մէջ տակաւին, եւ թէ այդ երջանկութենէն զրկուած է նախանձու այդ մեղքը գործելուն համար ։*

*Այլ է՞ր նախանձիլ . — Աստուած չուզելով որ իր այս արարածն միւսներուն պէս լինի մեքենական արարած, ուստի իրմէն բան մը շնորհեց . «Եւ փչեաց յերեսս նորա շունչ կենդանի,» այսինքն խորհելու գործելու անհուն փափաքը, զոր մարդ չարաչար գործածեց . չըրաւ զայն որ Աստուծոյ կամքին*

համաձայն էր. ըրաւ՝ որ հակառակն էր։

Մինչ այս շնորհօք գիտեր թէ ինքն է արարած, արարիչ լինելու ձկտեցաւ. չխորհեցաւ թէ Աստուծոյ կարելի էր մարդանալ՝ յայտնուելով մարդուն, այլ ոչ երբեք մարդուն աստուածանալ. այսինքն մարդկային մտքի լոյսն աստուածային շնորհք էր, եւ ոչ ուրիշ բան, աստուածային մէկ ճառագայթն էր. այս էր որով մարդն «Եղեւ հոգի կենդանի։»

Արդարեւ մարդ ի սկզբան թէ եւ ստեղծուած ու օժտուած էր գերագոյն շնորհօք, այլ սակայն ունենալու էր բան մըն ալ, որ զինքն Արարչէն տարբերէր. աստուածային հրաման մը կամ պայման մը պիտի յիշեցնէր մարդուն՝ թէ ինքն արարած է, հպատակ է իրմէ վեր մէկու մը, Աստուծոյ։ Եթէ այսպիսի պատուէր մը չըլլար, եւ մարդն անսահման ապրէր, ամէն բան գիտնար ու վայելէր, յայնժամ ի՞նչ բանով պիտի տարբերէին Աստուած եւ մարդ իրարմէ։ Ուրեմն մարդն արգիլուելու էր, կամ որ աւելի ճիշդն է՝ զրկուելու էր բանէ մը, որպէս զի կապուէր Աստուծոյ հետ երկիւղախառն սիրով։

Եթէ մարդն այս կապը խզէր, այսինքն դադրէր երկիւղէ եւ սէրէ, պիտի կրէր իւր այս մեղքին պատիժը, մա՛հը, քանի որ աստուածայ[ին] բնութեան մէկ հանգամանքն էր արդարութիւնը։ Այլ որովհետեւ աստուածային բնութեան միւս հանգամանքն ալ կար, գթութիւնը, ուստի սա յոյսը պիտի աւանդուէր մարդուն՝ թէ երջանկութիւնն, որոյ համն առած էր միանգամ, պիտի գտնէր վերստին. ահա այս էր մեծ խորհուրդը։

Մարդ մեղանչելուն համար պատժուած էր․ միայն թէ որովհետեւ պատիժը մեղքին համեմատութեամբ էր, ուստի տակաւին պիտի ապրէր։ Սակայն որքան անիծուած մարդն անիծուած երկրիս մէջ ինքզինքը տնտեսէր իմաստութեան շնորհօք եւ ինքզինքը կառավարէր արդարութեան օրինօք, այլ միշտ ապրելու եւ ամէն բան գիտնալու եւ վայելելու՝ այս երեք փափաքներ, այսինքն լիակատար երջանկութեան մը յոյսը պիտի ունենար անխախտ եւ միշտ։ Արդ, եթէ այս յոյսն ի դերեւ պիտի ելնէր, ուրեմն մարդ խաբուած էր Աստուծմէ, եւ թէ Աստուած իւր այս գեղեցիկ, հոգւով եւ մարմնով միանգամայն գեղեցիկ արարածը տառապելու նախասահմանած է միայն։

Եւ զի կարելի չէ ենթադրել թէ զմարդ Աստուած կը խաբէ, եւ կարելի չէ կարծել թէ նա, որ բարի է, իւր արարածին չարակրութենէն հաճոյք զգայ, ուրեմն առ մարդն յայտնութեան մը պէտք կար, որպէս զի նա անյուսահատ սպասէր, հաւատալով թէ ստեղծուած էր, ոչ թէ մեռնելու, այլ ապրելու համար․ զի եթէ պիտի մեռնէր, Աստուծմէ՝ մարդուս սրտին մէջ անմահութեան՝ միշտ ապրելու յոյսը դրուելուն պէտք չկար։ Նոյնպէս եթէ պիտի տառապէր, եթէ տկարութենէ եւ տգիտութենէ պիտի ջախջախուէր, ուրեմն ի զուր իւր սրտին մէջ կը կրէր երջանկութեան մը յոյս։

Բայց մարդ միշտ պիտի չապրէր աշխարհիս մէջ եւ ոչ պիտի գիտնար ու վայելէր ամէն բան, քանի որ մեղք գործած էր եւ պատժուած։ Նախ այդ մեղքէն սրբուելու էր, զի այդ մեղաց քաւութեան

պէտքը կար, եւ յետոյ մարդ պէտք էր որ կրէր փոփոխութիւն մը, ոչ այս աշխարհիս մէջ, քանզի աշխարհս ալ մարդուն հետ անիծուած էր. պէտք էր որ հին աշխարհս ալ վերջանար հին մարդուն հետ։ Մեռնելովը մարդ իւր մեղքին պատիժը կը կրէր, այս էր արդարութիւնը. ապաշաւելովն իւր մեղաց քաւութիւնը պիտի գտնէր, այս էր գթութիւնը։ Արդարութիւն եւ գթութիւն ահա ա՛յսպէս զմարդն ու աշխարհ պիտի ենթարկէին փոփոխութեան մը, այսինքն աստուածային գթութիւնն ապաշաւող մարդուն նոր աշխարհ մը պիտի շնորհէր, եւ արդարութիւնը փրկուած մարդուն նոր կեանք մը պիտի պարգեւէր, կեանք լիուլի երջանկութեան։

Այլ այդ 'փոփոխութիւնը կրելու համար նախ մարդ Աստուծոյ հետ հաշտուելու էր. բայց ի՞նչպէս կարելի էր այդ, քանի որ մարդկային բնութիւնն էր մեղապարտ։ Նա իւր կամքէն, կարիքէն ու կիրքէն մղուելով մեղք գործելու վիճակին ենթարկուած էր։ Կամքէն մղուած մարդն ամէն բան ունենալու, կարիքէն մղուած մարդն ամէն բան վայելելու եւ կիրքէն մղուած մարդն ամէն բան խորտակելու, եւ երբեմն ինքզինքն անգամ, մոլեգին ունի հակամիտութիւն։ Արդ քանի որ մարդն է այսպէս մեղօք վարակուած, ուրեմն մէկը պէտք էր որ նախ զմարդն՝ իւր մեղքէն սրբէր եւ յետոյ հաշտեցնէր Աստուծոյ հետ։

Այլ ուս, որ այս պաշտօնն ու գործ պիտի ստանձնէր, մեղք ունենալու չէր ամենեւին, որպէս զի օրինակաւ անձին սրբութեան՝ մեղաց մարմինը մահուամբ թաղելով վերածէր փառաց մարմնոյ։

*Մարդկային այս արդար արիւնը միայն պիտի սրբէր մարդկային մեղսապարտ բնութիւնը, եւ հին մարդն այսպէս թէ պիտի վերանորոգուէր եւ թէ պիտի տեղափոխուէր, այսինքն նոր մարդ պիտի լինէր նոր աշխարհի մը մէջ։*

*Այլ սա, որպէս զի այս բանն ընէր, հարկ էր որ կրէր մարդկային բնութիւնն ամբողջովին, առանց որոյ անհնար էր յարաբերութեան մտնել մարդուն հետ։ Նաեւ կրելու էր միանգամայն աստուածային բնութիւնն ամբողջ, առանց որոյ անհնար էր մարդկային փրկութեան գործը կատարել։ Ուրեմն սա լինելու էր այնքան բարձր, որդի Աստուծոյ, որ կարող լինէր պարգեւել մարդուն աստուածայինը, փրկութեան շնորհքը, եւ այնքան խոնարհ, որդի մարդոյ, որ կարող լինէր տալ Աստուծոյ, մարդկայինը, փրկութեան զոհը, որով կը ջնջուէր մեղքը յանուն գթութեան եւ կը խորտակուէր մահը յանուն արդարութեան։ Եւ ահա այսպէս կը ճշմարտէր «Եւ բանն մարմին եղեւ» հրաշափառ վարդապետութիւնը եւ կը լուծուէր Մեծ-խորհուրդը, որոյ աւետիսն առաջին մարդն Աստուծմէ եւ նահապետք առաջին մարդէն առնլով պահպանեցին ընդ երկար, սոյն յուսով ապրելով եւ սոյն հաւատով ննջելով։*

*Այլ որովհետեւ մարդկային ազգն ի ծագս աշխարհի պիտի ծաւալէր, ուստի թանկագին սոյն աւանդն օր մը հարկ էր յանձնել այնպիսւոյ մը, որոյ հաւատքն արժանի ընէր զինքն այս շնորհին, եւ որոյ ցեղն այս աւանդին պահպանութեան պաշտօնն ստանձնէր։ Ահա այս էր* կոչումն Աբրահամու *եւ* ընտրութիւնն Իսրայելի*։*

*Այս ցեղէն կը ծագէր ահա Աստղն Յակոբայ, որ լուսով պիտի ողողէր աշխարհս, եւ պիտի հաստատէր թէ մարդիկ միշտ պիտի ապրին եւ գիտնան ու վայելեն ամէն բան, եթէ հաւատան շնորհաց եւ ճշմարտութեան, որ պարգեւեցաւ աշխարհի ի ձեռն Յիսուսի Քրիստոսի, որ էր որդի Դաւթի, որդի Աբրահամու։*

Յոհան Հ. Տէր Մինասեան



## ՓՈՔՐԸ ՄԵԾԻՆ ՔՈՎ



*Լերան մը գլուխ կանգնած կը դիտեմ.*
*Ճակատըս կուտամ բարձանց հովին դէմ.*
*Եւ նայուածս աղու չորս կողմըս թափառ*
*Ծովին՝ ամպոց մէջ լողայ հեշտաբար։*

*Աշխարհ հիմայ մեծ, հիմայ լայն անծիր*
*Կ'երեւի աչքիս. եւ, անշարժ, ցան ցիր,*
*Իրերն աշխարհիս՝ որ գամուած մընան,*
*Կ'ապշեցընեն զիս, անհե՜ղ են այնքան։*

*Թող ամպերը հոծ կառչած երկընքին՝*
*Կարծես ծովուն մէջ պիտի թափթըփին,*
*Եւ լեռն ու հողեր, դէպ ի ծով հակած,*
*Հա՛, պիտի սուզին ծալքին մէջ ալեաց։*

*Ու ես, մարդը, խե՜նդ, որ խըրոխտաբար*
*Կը նայիմ չորս դիս, բնութեան մեծափառ,*
*Որ չի տեսներ զիս, այլ, ապուշ — վըսեմ,*
*Մեծ — մարդուն համար երազոց է սեմ։*

*Բայց առանձին եմ. ա՜հ, կը սոսկամ ես.*
*Այս լուռ մեծութեան մէջ իմ հոգին վէս*
*Ինչո՞ւ կը զգայ փոքր, ու սեւ գաղափարք*
*Կը մարեն մարդուն՝ որ ես եմ՝ վեհ փառք։*

*Ինչո՞ւ մընչող հովն, ալիք դողացող,*
*Ժայռերն որ կարծես կը շարժեն այս հող,*
*Զիս ահով լընուն, եւ պաղ մէկ սարսուռ*
*Կը ծակծըկէ զիս խայթերով սուր սուր։*

Մութը կը կոխէ . գիշերուան ըստուերք
Իմ գոռոզ եսիս կուռած խոր խոր վէրք .
Եւ սեւ ուրուականք ալ գիս կը պատեն . . .
Սակայն ի՞նչ գործով հոս եմ այս ատեն ։

Կարծես թանձր ըստուեր մ'աշխարհի չափ մեծ ,
Զոր մութին մէջ ծովն ումպով մը փըղձկեց,
Կըռնակըս կեցած՝ գիս ժայռերէն վար
Պիտի գըլորէ , վըհից մէջ խաւար ։

Ո՛րքան պըզտիկ եմ, եւ ո՛րքան գըձուձ . . .
Սոսկմանըս մէջ վատ որով գիս լըցուց
Բընութիւնը մեծ , կը մըտածեմ ցարդ՝
Ո՛րքան պըզտիկ եմ, այլ ո՛րքան հըպարտ ։

Տիեզերքին մէջ հիւլէ մ'անպիտան ,
Մարդն որ ձըգտի միշտ անծայր մեծութեան ,
Անպին պէս շըրջուն , հովին պէս մոլար ,
Ո՛րքան պզտիկ է , եւ ո՛րքան յիմար . . . ։

Ա՛ՅՍ Է

Այս է կեանքն , աւա՜ղ . քըմահաճոյքին
Թեւերէն կախուած , ինչպէս որ ուժգին
Նաւազը կախուի կայմէն ծովամոյն ,
Ցոյսին կը յառենք մեր աչքը տըմոյն ։

Հազիւ կը հիւսես տենչանք մը թեթեւ ,
Ու կուտաս անոր գոյներ , բոց կամ թեւ ,
Եւ դեռ սըրտիդ մէջ , մայր ծոցը տենչիդ ,
Սաղմն այդ կը մեռնի , վիժո՜ւմ ցաւալից ։

Լոյս մը, կայծիկ մը կը տեսնես հեռուն.
Դէպ ի հոն կ'երթաս յոյսերով զեղուն.
Ու հով մը յանկարծ կը մարէ այդ լոյս.
Մութին մէջ մընաս. հըմայքն, ա՜հ, չէ կոյս։

Կին մը կը սիրես. գեղեցիկ է նայ.
Աչերուն նըման աչք մը դեռ չըկայ.
Բայց սիրոյ կաթը զոր սիրտն է ցայտեր՝
Բերնիդ մէջ ժահր է զոր կը ծըծես դեռ։

Ա՛յս է. մութին մէջ խարխափում անվերջ,
Իղձերու փըշրում ժայռի մը դէմ պերճ.
Կեանքն՝ ուռա՜ծ արցունք. բայց չէ՞ որ ժըպտին
Ետեւը յաճախ արցունք պահուըտին...։

---

## ԱՆՃԷԼԻՒՍԸ

Ոստախիտ ծառի մը շուքին տակը նստած էի, երեկոյ մը։

Քովս մարդ չի կար, մօտերս ալ ոչ ոք. առանձին էի, եթէ երբեք առանձնութիւն է միայն խոհերու եւ զգացմանց հետ մինակ, որք անծանօթին անհուներուն վրայէն կը թաւալին՝ անհունին ծայրը գտնելու խելառ նկրտումով։

Ինձ համար բարեկամներ են անոնք, որոց հետ կը խօսակցիմ ու կը յուզուիմ միատեղ. բարեկամներ են՝ զորս ուզածիդ նման կը ստեղծես, քենէ մաս մը՝ ինչպէս զաւակներդ, եւ կը ծրարես էութիւնդ անոնց թեւերուն ու թռիչներուն մէջ։

*Նոյն պահուն, արեւմուտն, ամէն ժամանակէ աւելի գեղեցիկ, հետզհետէ աչքիս առջեւ կը նկարուէր տիտանի վրձիններու տակ՝ որք չէին երեւեր ։*

*Այդ կենդանի մահուան մէջ, որուն պատանքը խաւարն է եւ գերեզմանն ալ՝ աներեւոյթը, կայ թարմութիւն մը հեշտանքի, որ կը թուլնայ ու կը տարածուի, եւ ճառագայթի մը պէս կը սահի աչերու կպչող մութին մէջ ։*

*Մինչեւ հորիզոնը, ծովին զուարթ երեսը կը փըռուէր վէտվէտուն ժպիտներով, որ օղակ օղակի մէջ կը մղուէին ու կը կորսուէին, հեռո՜ւն, հորիզոնին անշարժութեանը մէջ ։*

*Բամբակ ու ճերմակ ամպիկներ, կապուտին մէջ մեղկաբար ցրուած, որք, կ'ըսես, հիմայ ծովին վրայ պիտի թափթըփին խուրձ խուրձ. եւ կարմրիկ, որպէս թէ ցանկութեան ծոցին մէջ չիկնած թանձր ու խոշոր ցոլքեր, գիշերուան հրդեհին բոցին պէս ալիք ալիք, կը կախուէին երկնից կողերէն ու կը հակէին՝ իրենց թեթեւ ծփուն չղարշներն իրարու քսելով դէպ ի հորիզոնն, ուր արեւը վերջին նայուածքի մը մէջ կը հալէր կը հատնէր ։*

*Վերջի՛ն . . . ։ Այս բառն ինձ սոսկում կուտայ. սպառնալիք մ'որ ուժգին թեւերէս կը բռնէ ու կը տանի զիս անդունդին եզերքը՝ զոր վերջին կ'անուանէ, եւ ուստի կը տեսնեմ որ վարն ոչնչութիւն ճիւաղը՝ բացած իւր անեզր բերանները՝ լափելու վրայ է ինչ որ վերջացաւ արդէն ։ Եւ երբ կը մտածեմ թէ օր մ'ալ իմ նայուածքիս, իմ հառաչանքիս, իմ ծիծաղիս համար վերջին պիտի ըսեն, կ'ուխտեմ, տկարութեանս բոլոր ուժովը կ'ուխտեմ փախչիլ*

անկէց, վերջինէն, որ ա՜յնքան մօտ է ոչնչին . . . ։

Եւ սպառումի, անհետացման գաղափարը կը ծնի ուղեղիս մէջ, ուր տարակոյսը, նողկանքը, սարսափըն եւ ուրիշ կեանքի խայթող ու հիւծող անասուններ կը վխտան, ինչպէս փտած ու նեխած պտուղին մէջ խառն ի խուռն որդեր ։

Ճիշդ նոյն վայրկեանին, թռչուն մը գլխուս վրայէն կ'անցնի, եւ կը սլանայ բարձրերն երկնքի. ի՜նչ սիրուն բան ճեղքել օդը, պատռե՜լ զայն, օդն, որ կ'ընկճէ զքեզ, ուսերուդ վրայ կը նստի ։ Ակնարկս երբ անոր թռիչքին կը հետեւէր, ցնորքի մը տաք ճաճանչին պէս որ յանկարծ պատրանքի սառնակոյտին վրայ կը թափի՝ ինքնիրեն, յակամայս իմ, գետին ինկաւ, ու նշմարեց հոն երկու ոտներս, օձի պէս գալարուած մարմնոյս, զոր հողին վրայէն քիչ մը վերջ նորէն պիտի քաշկռտէին, իմ երկու ոտնե՜րս. մինչդեռ թռչունն, որ թեւերն երկնի ճամբայն ընտրած էին, խօլ երազանք մ'ունէր վերէն դիտելու աշխարհն եւ մարդուն վրայ նետելու ծիրտերու մէջ ծալլուած արհամարհանք մը ։

Յետոյ, կը դառնամ, թմբրութենէ արթնցածի պէս խոնջ, ու կը դիտեմ նոր հիացումով արեւն որ քիչ քիչ կը ցածնայ եւ կը մարի հորիզոնին մէջ, ինչպէս ճրագին լոյսը կը նուաղի սաստկաշունչ հովի մը թեւերուն մէջ ։

Ու արեւմուտքի այս ամէն պատկերները՝ բնութեան, այն մեծ ու մի եկեղեցւոյն, միօրինակ յուշարարն են առ մարդն, որ, երեկոյէ երեկոյ, կը կարդայ այդ վսեմ խոնարհումին ու շիջումին մէջ պատմութիւնը կեանքին, որ հեգնութեան նախատինքը

կը սրսկէ մարդկութեան ցնորատանջ գլխուն վրայ։

Արեւն որ ալ չերեւիր՝ վայելքն է կարճատեւ որ կը լմննայ, յոյսն է, վաղուան յոյսն, որ կը նորոգուի, եւ կեանքն է, չէին կեանքին քով ակնթարթի մը հիւլէն, ուր յոյսին ու հաճոյքին շղթաները կապած են մարդն, այն մեծ յիմա՛րը . . .։

* *
*

Ծառերուն մէջէն, ուր ա՛լ հովիկը դադրեցուցած է իր դանդաղ եւ մրմնջասոյլ հեծեծանքը, կը լսուի եղանակ մը զոր՝ մարդուն ձեռաց տակ՝ տարբեր գործիներ կը նուագեն հեշտալուր ներդաշնակութեամբ մը։

Մտիկ կ՚ընեմ. յափշտակում մը կը լափէ հոգիս. եւ բան մը, վշտի պէս սեւցնող մուխ մը, կամ տարօրինակ յոյսի մը սպառումին պէս տարտամ բան մը կը լըլկէ զիս օձ-տանջանքին պիրկ գալարումներուն մէջ։

Վալսը տխրագին զուարթութեամբ կը հնչէ, օրօրումի եւ տոփանքի անուրջներու մէջ մարմրելով. եւ ձայնի անոր ոստոստները, թրթռումները թախծալից, եւ մեղմասահ անոր թռիչներն օդատոյր կուգան կը դպչին ելեկտրաբար սրտիս ծալքերուն, ուրկէց յառաջ կուգայ երաժշտութիւն մը լացի որ կ՚ողողէ ներսս, հեծկլտանքի՝ որ կը խեղդուի կուրծքիս տակը, սրտիս բաբախումներուն մէջտեղ, եւ զգայնութեան տառապանքի մը՝ սիրոյ, մահուան ու փառաց տառապանքին։

Վերջալոյսն ո՛րքան հմայիչ է հիմայ։ Վճիտ ջինջ կապոյտն երկնքին կը շիկնի ամօթխած, հէ՛ք սի-

րուհի, որ տարփածուին լքանքին վրայ կը խորհի, առանձին կը տեսնէ զինքը հսկայ բնութեան մէջ, եւ տխրութիւնը, վիշտը, մինակ մեռելու երկիւղը կը կարմրցնեն իր համեստունակ ճակատն՝ որ արեւուն հետքերն ի վար կը ծռի. պահ մը յետոյ, պիտի հագնի օգաւորի քողը, զոր քաոսին խաւարները կը պատրաստեն իրեն համար, մինչեւ որ թերեւս իր տարփածուն վիթխարի գայ նորէն համբուրէ՝ արշալոյսին մէջէն՝ իր պաղած դէմքը։

* * *

Դժբախտ սիրոյ այս խղճալի տեսարանին առջեւ յուզուած՝ աչերս կը դարձնեմ դէպ այն կողմն ուր տակաւին տխուր տխուր, յարափոփոխ շեշտերով, կը թրթռայ այն վալսը։

Նոյն հետայն, աղջիկ մը, ճերմակ մետաքսներու մէջ փաթթուած, ժանեակներով ու ժապաւէններով զարդարուած, գեղեցիկ, յանկարծ աղջամուղջը ծակող լոյսի մը ցոլացմունքին պէս կախարդիչ, իմ նայուածքիս բոցերուն մէջ կը լողայ։

Հոն նստած էր, ինքն ալ ծառի մը տակ, եւ կ'ունկընդրէր վալսին։

Երազողի մը մելամաղձութիւնը կը ստուերէր անոր աժգոյն դէմքը. եւ աչե՛րը, որք միայն ծովուն ու երկնից կը նային, շփոթ, կարծես նոյն իսկ իրենց փայլէն ու գեղէն շլացած, վարանո՛տ...։

Եւ սրտիկս տրոփուն, կը մոռնամ ծովն ու վերջալոյսն, ու կը մխրճիմ այն աչերուն մէջ, ուր կը խորհէի թէ մեռնիլն ո՛րքան անոյշ է արդեօք. նայէին թո՛ղ անոնք մէյ մ'ինձ, ու թո՛ղ կայծ մ'իյնար

անոնցմէ հոգւոյս մէջ, եւ թռնկէի, այդ կայծին անհունութեան մէջ, որ բեկոր էր այդ հրեշտակի աչերուն, մոխի՛ր դառնայի....։

* *
*

Ըղձանքիս գինովութիւնը կը խառնակէ զգայնութիւնս, ու կը մոլիմ վերացմանս մէջ։

Եւ մինչդեռ բոլորտիքս հանդարտութիւն մը կայ որ կը նայի, կ'երազէ, ու կ'ապրի մանաւանդ, իմ մէջս փոթորիկը կ'ուռի, ոգեվարքի պէս նչուլիկ մը կը պլպլայ, եւ այնպէս կը զգամ որ էութիւնս, սեղմուած, լայնցած հիւանդ մարմնոյս կեղեւին մէջ, դուրս պիտի ժայթքի։

Վերջալոյսն արդէն մութին ստուերներուն հետ կը չփոթուի կամաց կամաց. եւ աղջիկը, հոն է դեռ, անշա՛րժ, անժպիտ։

Ցարդանքի պէս բան մը կը դողդղայ այդ հրեշտակին չուրջն, ուր երկնային գեղեցկութեան մէջ յաւէտ կը թաղուի սիրտս։

Վալսը, ձայնի հիւծման մը մէջ, կը նուաղի, հուրիներ կը պարեն երեւակայութեանս մէջ, զոր այդ սիրուն երաժշտութիւնը գգուած ու գրգռած է։

* *
*

Հեռուէ՛ն, խորունկէն թաւալող հզօր արձագանգ մը կը սթափէ զիս. հնչակի ողբերգ մը, որ, լռութիւնը ճեղքելով՝ խոնաւ սարսուռներու մէջ կը ծալլէ խաղաղ օդը։

Անճէլի՛ւսը, զոր պատկառանքով կը լսեն վերջալուսին ամենէն վերջին շողերը։

*Ծառաստանին դիցուհին, հաւատքի շողշողումի մը մէջ, գետին կը խոնարհեցնէ իւր նայուածներն՝ որ արցունքի նման կը փայլին, ու կը փափսայ։*

*Տաճարին մէջն ալ, սիւներուն քով ծնրադրած, հաւատացեալներն երեկոյեան աղօթքը կ՚ընեն։*

*Ու ե՛ս մինակ, ապուշի ակնարկներ կ՚ուղղեմ բոլորտիքս . . . ։*



## ԴՊՐՈՑԱԿԱՆ ԿԵԱՆՔԷՆ



*Չկայ կեանք մը ա՛յնքան քաղցր, ա՛յնքան բաղձալի, ինչպէս դպրոցական կեանքը...։ Ամէն մարդ իր չափահասութեան տարիքին մէջ, մինչ աշխարհային գործոց տաժանելի հոգերովը զբաղած, եւ իրական կեանքի մշտական պայքարներէն է յոգնած, տխրագին, աչքն արցունքով լի, յաճախ կը յիշէ այն անդորր, գողտրիկ ու սիրելի ժամերը՝ զորս անցուցել է դպրոցական գրասեղաններու վրայ, իր սիրական ընկերներուն քովիկը...։*

*Մինչ մենք ալ դեռ դպրոցական էինք, հանգուցեալ Սրբուհի մայրապետն օր մը մեր վարժարանը այցելեց. ճաշի ժամանակ էր. սեղանատունը մտաւ, եւ իր մայրական գորովալի ակնարկներէն մին նետելով տղայոց վրայ՝ հառաչեց եւ ըսաւ. «Երանի՜ ձեզ, զաւակնե՛րս, ա՜խ... ո՞ւր են այն ժամանակները՝ յորս ես ալ դպրոցական էի...։»*

*Ուրեմն ի՞նչ հմայիչ քաղցրութիւններ ունենալու է դպրոցի կեանքը, քանի որ այն արի եւ սուրբ կինը, որբոց մայրը, վշտացելոց մխիթարիչը, որ այլոց համար զաշխարհ եւ իր անձին գոյութիւնն իսկ մոռցել էր, չէր կրցած մոռնալ սակայն զայս խաղաղ կեանք, եւ ցաւելով կը յիշէր թէ կորսնցուցե՜լ էր զայն...։*

*Կոյս ամեն տեսակ աշխարհային զբաղումներէ եւ հոգերէ, դպրոցական կեանքը կը սահի մեղմիկ մի-*

այն գիրքերու, գրիչի եւ թուղթի վրայ....: Ի՜նչ գողտրիկ յուզումներ ունի յինքեան, ի՛նչ անմեղ փառասիրութիւններ, երբ դասատուն գովեստ մը կը շնորհէ լաւ պատրաստուած դասի համար. երբ պարգեւաբաշխութեան հանդիսին, կէցցէներու եւ ծափերու միջեւ յաղթապանծ, կը մերձենայ առնուլ իր ջանից եւ վաստակոց մրցանակները....: Ասոնք դպրոցական կեանքի ուրախութիւններն են, ս՛ուրբ ուրախութիւններ, զորս մարդ երբէք չէ կարող զգալ դպրոցէն դուրս, աշխարհի մէջ տարած մեծամեծ յաղթանակներումն իսկ. զի ասոնք այնպիսի ուրախութիւններ են՝ որ երկինքէ՛ն կուգան....:

Դպրոցը տեսակ մը պատնէշ է աշխարհային ապականութեանց դէմ. անմեղութեան ապաստանն է. հոն է որ ուսանողը, հեռի աշխարհի ժխորէն եւ աղմուկէն, ինքզինքը համակ կը նուիրէ ուսման. հոն միտքը միշտ կը գործէ, եւ ուսանելու տենչը միայն կ՚իշխէ տղուն հոգւոյն ու սրտին վրայ. դպրոցը մի սրբարան է, այս պատճառաւ իր շնորհած ուրախութիւններն ալ ս՛ուրբ են....:

Աշխարհի մէջ կատարեալ երջանկութիւն չկայ կ՚ըսեն. Մովսէս խնդրել է [illegible] Աստուծմէ իր մէկ սիրելի Իսրայելացւոյն համար. սակայն Աստուած մերժել է անոր խնդիրն լսելով. Այնպիսի բան մը կ՚ուզես որ, Մովսէ՛ս, ես չե՛մ ստեղծած....:»

Կ՚երեւայ թէ այն ատենը դպրոցներ չկան եղեր. վասն զի Մովսէս դպրոցական կեանքը ճանչցած պիտի ըլլար, եւ կատարեալ երջանկութիւնը փոխանակ աշխարհի մէջ փնտռելու, դպրոցին մէջ պիտի փընտռէր. դպրոցէն դուրս կեանքի ամեն ուրախու-

թիւններն միշտ վիշտ մը կը ծածկեն իրենց տակ ։

Ուսանողն՝ որ կը թողու վարժարանն ուսումնաւարտ ըլլալէ ետքը, ուրախ եւ տխուր է միանգամայն. ուրախ, վասնզի բան սորվեր է. տխուր, վասնզի յաւէ՛տ պիտի թողու այն նուիրական ու սիրելի յարկը՝ որ զինքն այնքան ժամանակ ընդունել էր, ուր իր մանկութեան զուարթ եւ անմեղ տարիները սահել էին . . . յաւէտ պիտի բաժնուի իր ուսուցիչներէն, իր երկրորդ ծնողքէն՝ որ իր միտքը մշակեր, եւ սիրտն ու հոգին ազնուացուցեր էին ։ Տխրութիւնն շատ աւելի մեծ է քան ուրախութիւնն ։

Եւ այս առաջին մեծ վիշտը ուսանողի մը կեանքին մէջ՝ ետքէն գալիք վիշտերուն կարապետն է. եւ տղան կարծես բնազդմամբ կը զգայ զայս, կը զգայ թէ դպրոցին մէջ անցուցած օրերն իր կենաց միակ երջանկագոյն օրերն են . . . ահա թէ ինչո՞ւ այնքան արցունք կը թափէ՝ չուզելով դուրս ելլել դպրոցէն. կ'ուզէ հոն անցունել իր բոլոր կեանքը, չբաժնուի՛լ իրեն բարոյապէս կեանք տուողներէն, չբաժնուի՛լ իր ընկերներէն՝ զորս կը սիրէ անհուն սիրով, որք մխիթարել էին զինքն իր դպրոցական անյաջողութեանց մէջ, որք քաջալերել էին զինքն իր յաջողութեանց մէջ. թողո՞ւլ այդ սիրելի բարեկամները՝ որոց հետ միայն համակրութեան եւ գաղափարաց մերձեցման կապով կապուած էր, եւ ոչ թէ շահախնդրութեան, երկիւղի կամ որ եւ իցէ նպատակի կապով, որոյ խզիլը ա՛յնքան դիւրին է ։

Այո՛ . . . կան մարդիկ՝ որ բարեկամութեան դիմակն անցուցած իրենց երեսը՝ շահու միջոց,

նպատակի կէտ կ'ընեն զայն, եւ կը պղծեն այդ սուրբ անունն՝ իրենց գծուծ զգացմանց խաղալիքն ընելով։

Անհուն վիհ մը կայ ճշմարիտ բարեկամութեան եւ առերեւոյթ բարեկամութեան միջեւ....։ Ճըշմարիտ բարեկամը գանձ մըն է, երկնից մէկ գերագոյն պարգեւն է մարդոց տրուած, որ կեանքի վըշտաց թիւը թեթեւցնելու եւ զայն տանելի ընելու կ'օգնէ։

Արդարեւ ո՞վ երբէք չի սփոփուիր, երբ ճշմարիտ բարեկամի մը հոգւոյն մէջ կը թափէ մասամբ իր հոգւոյն լեղին, եւ նորա կուրծքին վրայ իր աչաց արցունքներ... անոր մխիթարական սիրալիր խօսքերն իսկոյն կը չորցնեն զայնս, եւ արցունքին վաղ կը յաջորդէ ժպիտը...։

Ճշմարիտ բարեկամն, Աստուծոյ այդ մե՛ծ պարգեւն ալ, ո՞չ ապաքէն դպրոցին մէջ կրնանք գտնել դիւրաւ... ո՞չ ապաքէն ի մանկութենէ, երբ սիրտը դեռ կոյս է աշխարհային գծուծ հաշիւներէ եւ ապականութիւններէ. դպրոցական գրասեղաններու վրայ ծնունդ առած բարեկամութիւնը միշտ տեւական, հաստատուն եւ անկեղծ կ'ըլլայ. ասկից զատ ցմահ կ'ամրապնդեն նորա կապերը դըպրոցական կեանքի քաղցր, անմեղ եւ անմոռանալի յիշատակները... այո՛... անմոռանալի՛... Ժամանակը թերեւս կարենայ ջնջել օր մը կեանքի ամեն յիշատակները. սակայն դպրոցի յիշատակները, որ երանութեան, անմեղութեան եւ սիրոյ յիշատակներ են, երբէ՛ք... երբէ՛ք չի կրնար խլել մեր մտքէն ու սրտէն...։

*Ուսանողնե՛ր, դուք որ դպրոցի կենսատու մըթնոլորտին մէջ կ'ապրիք դեռ, լաւ գիտցէք ձեր անգին օրերուն յարգը. միշտ յիշեցէք թէ կեանքի գեղեցկագոյն եւ ի տրտմութենէ անխառն օրերը ձեր ուսանողի օրերն են. վայելեցէք զանոնք, եւ գիտցէք թէ դպրոցէն դուրս կատարեալ երջանկութիւն չկա՛յ բնաւ . . . :*

Մատթ. Գ. [illegible]



# ԲԱՄԲԱՍԱՆՔ



*Բամբասանքը սովորական մոլութիւն մ'է ամէն խաւերու մէջ. ընտանեկան շրջանակին, ինչպէս նաեւ աշխարհի մէջ. արբուն հասակի, ինչպէս ծերութեան մէջ. սկիզբն անիրաւ եւ հետեւանքը՝ կարի վնասակար. կանխաւ զինենք նոր սերունդը, մանաւանդ իգական սեռը, չարախօսութեան ստուարաթիւ հրապուրանաց դէմ:*

*Բամբասանքը, որ այլոց նկատմամբ գիտցուած եւ կամ ենթադրուած չարախօսութիւն մ'է, յոռի եւ զզուելի բնաւորութեան մը դրոշմն է: Արդարեւ բամբասողին նպատակը միշտ ուրիշին վնաս հասցնել չէ. բայց որովհետեւ իրական վնաս մը կը ծագի անկէ, ապա ուրեմն յաչս ամենեցուն անախորժ երեւոյթ մը կ'ունենայ բամբասանքը, ա՛յնքան անախորժ, որքան չենք կրնար հաւատալ թէ բամբասողն անխորհրդաբար կը խօսի: Ա.—գաղտնապահութիւնը բամբասանաց տենչ կը ներշնչէ մարդուս. սակայն այս մոլութեան կիրառութիւնն անխորհուրդ եւ ակամայ չ'ըլլար: Արդ, այն որ պարկեշտ կեանքի մը վրայ գէշ մտածումներ կամ անզգուշութեամբ անխոհեմ խօսքեր կը մտաբերէ՝ ոչ միայն թեթեւակի պախարակելի է, այլ նաեւ յանցաւոր: Մայրենի լաւ դաստիարակութիւն ընդունած աղջիկը մը՝ դուն ուրեք կ'իյնայ այս մոլութեան մէջ. ա՛յն ատեն երբ, օրինակի համար, անակնկալ պատճառաւ մը, կամ*

մօրը բացակայութեամբ եւ հիւանդութեամբ, եւ կամ ինքն անփոյթ ազգականի մը տունը գտնուելով՝ առ ժամանակ մի մայրական հսկողութեան ուղիղ եւ լաւ գծուած ճամբէն շեղի, յայնժամ այլոց նմանելու փափաքէն կը յափշտակուի, եւ զայս օրինակելու վտանգին կ'ենթարկուի։

Եթէ լաւ խորհինք, բաց ի բամբասանքէն ո՛չ մէկ թերութիւն այնքան ներհակ չէ կրօնական պատուէրներուն. ի՞նչ կ'ըսէ Աւետարանի բարոյականը. — Պարտինք ամէնքը եղբայր նկատել. առաջին քայլը մենք կը նետենք մեր ընկերոջ. վասն զի մենք ալ պարսաւէ զերծ մնալու ապահովութիւնը չունինք, եւ թէ ի վնաս մեր նմանեաց արտասանեալ ամէն բառ կ'ենթարկէ զմեզ աստուածային բարկութեան։ Բամբասող աղջիկ մը, մինչեւ իսկ ճշմարտութիւնն ալ խօսի, թող որ շատ անգամ իւր բամբասանաց ճշդութիւնն ալ ստուգած չէ, աստուածային օրէնքը դրժած կ'ըլլայ, եւ խիստ դատաստանի ներքեւ կ'իյնայ։

Երբեմն կ'ըսեն. «Ի՞նչ վնաս ունին ընտանեկան ազատ խօսակցութիւններն որոց նիւթը խօսուած միջոցին կը ցնդի, եւ կամ աշխարհ արդէն առ ոչինչ կը գրէ իւր սովորական փուճ խօսակցութիւնները, եւ կամ բաւական է որ սուտ բան մը չհնարեմ, յանցաւո՞ր կ'ըլլամ ճշմարտութիւնը վկայելով, դիցուք թէ այս ճշմարտութիւնն ալ մէկուն վնասէ։» Ասոնք չնչին եւ խեղճ փաստեր են. բամբասանքը կը վնասէ ուրիշին, եւ ոչ ոք իրաւունք ունի ուրիշին վնասելու։ Շատ սխալ է սա մտածումը՝ թէ բամբասանքը կ'անհետանայ առանց հետք մ'իսկ

թողլու․ ո՛չ, գէշ լեզուի մը հարուածներն աւելի խոր վէրքեր կը բանան քան պողովատեայ սուրի մը հարուածները ։ Մայր մը պէտք է կանուխէն զգուշացնէ իր աղջիկն այս թերութենէն, եւ հաւատարմօրէն ցոյց տայ անոր չարախօսութիւնն իր զզուելի գոյներովը, ըստ որու՛մ կանանց սեպհական վիճակն առաւել կը մօտեցնէ զանոնք այս թերութիւնն ըստանալու վտանգին․ զի կանայք, արանց նման, չունին շարժուն կեանք եւ արտաքին գործոց զբաղում, այլ ընդհակառակն՝ տանը մէջ պահուած, նստողական աշխատութեամբք զբաղեալ են, որք կը կատարուին բազմոցի մը անկիւնը կամ կրակարանի մը շուրջը ։ Ի կանայս խօսակցութեան նիւթերն անսպառ չեն․ ընտանեկան գործերէ ու սովորական խօսքերէ վերջը խօսակցութիւնը տակաւ կը դառնայ դէպ ի այլոց գործերը, այլոց յայտնի կամ կարծեցեալ թերութիւնները, այլոց անկարգութիւնները․ կը սկսին այս հոսանքին տալ ինքզինքնին մտերմական շրջանակին մէջ, եւ ահա կը տեսնես որ անուշադրութեամբ շրջանակը կ'ընդլայնեն․ մտերմական խօսակցութիւնը կ'ըլլայ հրապարակային, եւ հուսկ ուրեմն՝ անզգալապէս կը սովորին ուրիշին համբաւն աղարտելու մտածման ։ (Բացառութիւնները միշտ յարգանաց արժանի են․ այս անուրանալի է ։)

Բամբասանք յառաջ բերող այս զօրաւոր պատճառին աւելցուր նաեւ կանանց ուրիշ թերութեանց տպաւորութիւնը․ զոր օրինակ, աշխատութիւն չըսիրող աղջիկ մը կ'ուզէ չարախօսութեանց մէջ գըտնել զբաղում մը՝ զոր չ'ուզեր գտնել ուսման եւ կամ առտնին գործոց մէջ ։ Անգործութիւնը ձան-

ձրայթ կը բերէ իրեն, բամբասանքն որ կծու ու սաստիկ համ մ'ունի՝ կը խթէ կ'արթնցնէ զինքը։ Կին մը՝ որ իւր չարախօսութեանց համար ուրիշներէն չողոքորթուելու դժբաղդութիւնն ունի, կին մը՝ որուն անձնասիրութիւնը կը սնանի գովեստներով, անխտիր մատուցուած իւր խօսած բարւոյն եւ չարին համար, այն կինն ապահովապէս այլոց գովեստը խլելու եւ ի վնաս այլոց զբօսնլու փորձութեան մէջ կ'իյնայ։ Յիշենք հոս Աղկեստեսի[1] բարկութիւնը Մարդատեացի գեղեցիկ կատակերգութեան մէջ. երբ դերակատարներէն մին կ'ըսէ իրեն՝ թէ բամբասանքի համար զգացած զայրոյթը Սելիմէնին[2] ուղղէ եւ ոչ թէ անոր ծաղրաբանութիւններէն զուարճացողներուն, Աղկեստէս կը պատասխանէ ազդու կերպով.

«Ո՛չ, դո՛ւք ձեր ներողամիտ ծիծաղներով ծնունդ տուիք անոր կծու չարախօսութեանց. Սելիմէնին երգիծական բնաւորութիւնը ձեր չողոքորթութեան մեղապարտ խունկովը կը սնանի, եւ անոր ծաղրելու տենչը գոհացում չպիտի գտնէր, եթէ տեսնէր որ իւր ծաղրաբանութիւնը չէք քաջալերեր, չէք ծափահարեր։»

Բաց աստի, նմանելու փափաքն ալ բամբասանք կը թելադրէ։ Ամենէն կանոնաւոր տան մէջ անգաղտնապահ այցելուներ կը պատահին. դեռահաս աղջիկ մ'այս կամ այն բացակայ անձին նկատմամբ եղած բամբասանաց ներկայ գտնուելով՝ կը սո-

---

(1) Մոլիէռի Մարդատեաց կատակերգութեան գլխաւոր մէկ անձն։

(2) Տիպար գեղեցիկ, պչրող եւ բամբասող կնոջ։

վրրի այդ արհամարհելի ունակութեան եւ չի զգար այցելուաց յոռի վարմունքն ու անիրաւ խօսքերը ։

Անզգալաբար ինքն ալ կը համոզուի՝ թէ այս կերպ խօսակցութիւնն աշխարհի մէջ ընդունուած ձեւ մ'է, եւ թէ մարդս զայդ չմշակելով՝ անտարբեր կամ տգէտ կ'ըլլայ ։ Այս համոզումը կը զօրանայ աղջկան մտաց մէջ․ ինչ որ մենք կը նախընտրէինք արգիլել, մեր զաւակն անմիջական ազդեցութենէ եւ սիրելի անձէ մը կ'ընդունի․ իրաւ է որ աշխարհի սովորութիւնն եւ բարուց մեղկութիւնը կը քաջալերեն չարախօսութիւնը, սակայն բամբասող ճանչցուած անձն աղէտ մը կը նկատուի ։ Ընդհանուր առմամբ քաղաքավարական ընդունելութիւն կ'ըլլայ բամբասողին․ կը փայփայեն, վասն զի կը վախնան անկէ, միով բանիւ կը շողոքորթեն զայն ։ Իսկ գալով աղջըկան մը՝ սա շատ չի կրնար վստահիլ այս խեղճ եւ չնչին առաւելութեան ։ Աւելին այլոց հակակրութիւնը կը շարժէ իւր դէմ քան երկիւղը ։ Իբր վնասակար անձ կը վախնան անկէ․ բայց որովհետեւ հասակաւ մեծ չէ, ակնածանօք չեն վարուիր անոր հետ ։ Թողո՞ւնք որ մեր զաւակն այս տխուր ճակատագրին մատնուի ։

Տակաւին ուրիշ հետեւանքներ ալ ունի չարախօսութիւնը ։ Բամբասողին խօսքերէն վիրաւորեալ եւ վնասեալ անձինք, առաջին տպաւորութենէն վերջն ալ, չեն կորսնցներ առ յաւէտ իրենց ընդունած չարեաց յիշատակը ։ Ասկից ծագում կ'առնուն մշտատեւ եւ անհաշտ ոխեր եւ վաղ կամ անագան ողբալ կուտան իրեն՝ իւր անխոհեմութեանց վրայ ։ Իւր յարուցած կասկածներն եւ իւր պատճառած դժտութիւններն իւր

դէմ կ'ելլեն ։ Ինքն որ պախարակելի մոլութեամբն առաջ ուրիշները կը հալածէր, այժմ ինքը կ'ըլլայ զոհ այն ոխակալութեանց՝ զոր իւր վրայ հրաւիրեց լեզուին հարուածներովն ու յարձակումներովը. այն ատեն, բաց ի մօրմէն եւ իրեններէն, ամէնքն անտարբեր կը լինին չարախօս աղջկան կրած նուաստութեանց վրայ, եւ ոչ ոք կ'արգահատի անոր վրայ ։

Չարախօսութեան բուռն հակումն ամենամեծ վըտանգ կը սպառնայ. կը վարէ չարախօսը թերութենէ ի մոլութիւն, եւ մոլութենէ յոճիր ։ Թէ ի՞նչպէս .— Նախ կը սկսի ականջէ լսել ինչ որ գիտէ ուրիշին վրայ գէշ. քիչ վերջը՝ աւելի համարձակօրէն ընդարձակ շրջանակի մը մէջ, ժողովոյ մէջ ։ Ժամանակ մը վերջը, եթէ ճշմարտութիւնը՝ այսինքն իրողութիւնը խիստ թեթեւ է եւ խայթիչ հանգամանք չունի, առանց շրջահայեցութեան կը յաւելու անմեղ յաւելուածներ, որք սակայն տարբեր կերպարանք մը կուտան իրողութեան ։ Այսպէս տակաւ կը սկսի դիւրութեամբ գտնել, հնարել պարագաներ, նոր գոյներ՝ իւր պատմածն աւելի շողշողուն ընծայելու համար յաչս ամենեցուն, փոյթ չէ թէ մնասակար ըլլայ ։ Ահա այսպէս ստախօսութիւնը կ'ըլլայ օժանդակ չարախօսութեան. եւ որքան այս աղտոտ օժանդակը զօրանայ, սոսկալի մոլութիւն մը՝ որոյ գործերն ոճիրներ են, նաեւ զրպարտութիւնն ըսել կ'ուզեմ, այնքան կը բարձրացնէ եւ ցոյց կուտայ իւր թունալից գլուխը ։ Ալ այնուհետեւ աղջիկը կորսուած է. այլ եւս չպիտի ունենայ իւր հասակի առաքինութիւնները, այլ զզուելի կանխահասութիւն մը պիտի ստանայ ։

Ուրեմն չարախօսութեան տխուր հետեւանքները թո՛ղ չվրիպին մարց հեռատեսութենէն ։ Մայր մը թո՛ղ կշռէ իւր բերնէն ելած խօսքերը , չարտասանէ ընաւ բառ մը՝ որ նմանի բամբասանքի եւ կամ ակնարկէ մէկուն նկատմամբ չարախօսութիւն մը ։ Չեմ ըսեր թէ իւր աղջկան ներկայութեան՝ պախարակելի իրողութիւն մը չյիշէ ընաւին որո՛ւն նկատմամբ որ ըլլայ ։ Ո՛չ , ասիկա թէ խօսակցութիւնը կը դըժուարացնէ եւ թէ արգելք կ'ըլլայ մօր մը , ի հաստատութիւն բարոյական դասի մը , օգտակար օրինակ մը տալու ։ Բայց սա կարելի եւ կարեւոր է որ երբեք մէկուն գործած թերութիւնը չպատմէ գոհութեան ժպիտով մը , յաղթական զրուցուածքով եւ կամ կարեկցական այնպիսի չեշտով մը՝ որ միայն շրթանց վրայ կը տեսնուի . ասոնք ամէնքը նշան են չարախօսութեան եւ չարութեան ։ Այլ չափաւորութիւն՝ լեզուի մէջ , սէր՝ բացատրութեանց մէջ ։ Այսու աղջիկը կը սովորի մօր պէս խօսիլ , անոր նման դատել , կ'ուսանի քողարկել եւ ինչ որ աւելի լաւ է՝ ստուերին մէջ թողուլ . կ'ուսանի անկեղծօրէն արգահատիլ մոլորեալներուն վրայ , խորշիլ այն ամէն մտերմական խօսակցութիւններէ՝ որք վնասուց պատճառ կ'ըլլան ։

Մի միայն բարի օրինակն բաւ չէ . բարի խրատներ ալ պէտք է տալ ։ Իրաւ է որ գործնական դասն ամենէն զօրաւորն է , բայց առիթները կը յապաղին . Մայր մը առիթներ ստեղծելու է չարախօսութեան տուի վիճակը զաւկին ցոյց տալու համար . դիտել տալու է զաւկին հետեւեալ երկու պարագաներն . առաջին՝ ըսելով . «Երբ դու, զաւակս, մէկը կը բամ-

բանս, այն անձը կը պատրաստուի քեզ բարիք ընել. երկրորդ՝ դու տասն հոգւոյ գաղտուկ անախորժ պատմութիւն մը կ'ընես մէկու մը վրայօք. եթէ այդ անձերէն մէկը կամ երկուքն անգաղտնապահութեամբ ելլեն խօսին բոլոր աշխարհի, եւ լսուի թէ դո՛ւ ես այս պատմութեան հեղինակը. մանաւանդ եթէ իրողութեան վերայ յաւելուածներ ալ բարդած ես, չե՞ս շառագունիր, կը հանդուրժե՞ս այս նուաստութեան՝ որ է լրումն ամօթոյ:»

Եթէ դժուարին թուի քեզ, ո՛վ մայր, այս թերութիւնը բնաջինջ ընել զաւկիդ վրայէն, քանզի այս կամ այն միատակար ընկերութեանց մէջ կը գտնուի, մի՛ դեգերիր, լուծէ՛ իսկոյն, խզէ՛ տռանց ցու ըղ-գալու ամէն յարաբերութիւն չարախօս մարդոցմէ, քաղաքավարութեամբ հեռացուր այսպիսիները քու ընտանեկան յարկէդ, կամ պարզապէս անոնց ըսէ՛ թէ որ քու մայրական շահդ եւ աղջկանդ ապագային շահը կը հրամայէ քեզ յայտարարել: Հեռացուր զաւակդ ամէն մոլորեցուցիչ ազդեցութիւններէ, եւ ապահով եղիր որ բարի մարդոց համակրութիւնն ու հաւանութիւնը պիտի ստանայ: Աղջիկդ զրկուելով բամբասանաց անուշէն, եւ ի բաց թողլով այս մոլութեամբ այլոց հաճոյ երեւելու խորհուրդը, լաւ խորհրդածութեամբ պիտի բանայ աչքերն, եւ տեսնելով այս գզուելի մոլութեան անդունդը՝ պատուաւոր կերպով յետս պիտի ընկրկի:

## ԱՆՀՈՒՆԱՄԻՍ ՓԱՌՔԵՐԸ

Որքան ահաբեկիչ են տարափոխիկ հիւանդութիւնք եւ որքան առաւել՝ համաճարակք։ Ասոնց գործած նախճիրներուն ի տես երբեմնի մարդկութիւնն շատ տկար զգալով ինքզինքը՝ պատուհաս կը համարէր զանոնք զորս մերթ կ'առաքէր Երկինք զայրանալով ընդդէմ մարդկային ամբարշտութեան։ Առողջապահութիւնն անգամ.— եւ առողջապահութիւնը գոյութիւն ունեցած է շատ հին ժամանակներէ ի վեր գէթ ժողովրդոց ոմանց մէջ, ինչպէս առ Քաղդէացիս, յԵգիպտոս, ի Պարսկաստան, յետոյ առ Յոյնս եւ առ Հռովմայեցիս.— անզօր մնացած էր համաճարակներու հանդէպ, իր կանոններն ու յորդորներն յօդս կը ցնդէին սպառող շունչերու, շիջանող նայուածքներու առջեւ. զոհերը կը համրուէին հարիւրներով, հազարներով։ Որովհետեւ այդ հիւանդութեանց բնութիւնն երկար ատեն գաղտնի մնաց, եւ մարդկային միտքը չկրցաւ թափանցել անոնց փոխանցման ու ծաւալման պատճառներուն։

Բայց ահա Փասթէօր, Ֆրանսացի անեզերահռչակ գիտունը, հիմնեց իր գրութիւնը. միքրոպեան դպրոցը հաստատեց, եւ հորիզոնը յանհունս ընդլայնեցաւ. այլ եւս գաղտնիք չմնաց. տարափոխիկները եւ համաճարակները առանձին առանձին բնութիւնները

եւ անոնց փոխանցման ու յառաջխաղացման պատճառները գտնուեցան․ առողջապահութիւնն ալ իր վերջին կերպարանքն ստացաւ, եւ իր կանոնները վճռական եղան։ Այլ ամէն ոք կը կարծէ տեսնել ու չօշափել իր թշնամին որ մինչեւ ցարդ անտեսանելի ոգի մ'էր, բայց այսօր, երբ նիւթեղէն ինչ, մանրադէտի տակ կ'ամփոփուի․ ամէն ուշադրութիւն անհունապէս փոքրերու դարձած է․ զանոնք չտեսնողն անգամ կը կասկածի թէ կրնայ պաշարուած ըլլալ անոնցմէ եւ ըստ այնմ կը զինուի, կը ջանայ ինքզինքը պաշտպանել․ եւ եթէ յաղթուի իսկ, իր ոսոխը ճանչած է։

Այս անհունապէս փոքրերը շատ տեսակ կ'ըլլան, ձեւով, մեծութեամբ ու բնութեամբ իրարմէ տարբեր գործարանաւորութիւններ, որ ընդհանուր առմամբ միքրոպ կ'ըսուին եւ որք պարագային համեմատ պասիլ, պաքթէրի, վիպրիոն եւայլ անուններով կը զանազանին։ Այս մանրադիտային էակները, որոց ամէնէն մեծերը $^1/_{300}$ հազարորդամէթրէն աւելի չեն, այնքան պարզ գործարանաւորութիւն մ'ունին' որ անոնց բոյս թէ կենդանի լինելը տակաւին անորոշ կը մնայ։

Միքրոպներէն կան որ բարեխառնութեան 0°ի եւ 100°ի միջեւ կրնան դիմանալ․ բայց ամէնքն ալ 0°ի մէջ կը դադրին բազմանալէ․ այս է պատճառն որ ցուրտը միքրոպային հիւանդութեանց վրայ բարեբար ազդեցութիւն կ'ընէ։ Միքրոպի ո՛չ մէկ տեսակն 150° է վեր բարեխառնութեան չի կրնար դիմանալ ու կը տարբաղադրուի, կը ջնջուի․ ուրեմն պէտք է որ միքրոպ պարունակող ջուրը, կաթն եւ

այլ հեղուկներ 100⁰ է վեր տաքցուին գործածութեան դրուելէ առաջ ։ 20⁰ ի եւ 37⁰ ի միջեւ շատ արագ կ'ըլլայ միքրոպներու աճումն ու բազմացումը ։

Ինքնաբուխ ծնմամբ չէ որ կը բազմանան այս էակները , ո՛չ · Փասթէօր ջրեց ինքնաբուխ ծնման վարդապետութիւնը · սփօրներով կը բազմանան եւ այս կերպով կը մօտին մամուռներու , սունկերու ։ Բայց միքրոպներու ի-րաքանչիւր տեսակը իրեն յարմար միջավայրն ունի բազմանալու համար ։ Եթէ միքրոպները միշտ յարմար միջավայրի մէջ գտնուէին, ինչ որ կարելի չէ , բազմացումն ահագին համեմատութիւններ պիտի առնէր ։ Քոհ գերմանացի գիտունը հաշուած է որ , եթէ միքրոպ մը միջին հաշուով մէկ ժամէն կարենար երկուքի վերածուիլ , երեք օրուան մէջ 47 տրիլիոնի պիտի հասնէր թիւն , իսկ ծանրութիւնը՝ 7 1/2 միլիոն հազարակրամի · հինգ օր պիտի բաւէր որ պաքթէրի մը ովկիանոսին պարունակութիւնը լեցունելու չափ բազմանար ։

Ախտաբանական տեսակէտով միքրոպներն երկու կարգի կը բաժնուին , ախտածին միքրոպներ ու անտարբեր միքրոպներ ։ Վերջինք անվնաս են առողջութեան , միայն խմորումներ ու փտութիւններ կը պատճառեն · իսկ առաջինք զանազան ախտերու ծնունդ կուտան ։ Այս երկու տեսակներն ալ մի եւ նոյն տեղերը կը գտնուին , երեք ահագին ընդունարաններու մէջ որք են ջուրը , օդը եւ հողը ։ Քաղաքներու մէջ ամէն աղտեղութիւն կը թափուի գետի , ծովու մէջ , հողուն վրայ , կամ կը ցնդի օդին

մէջ։ Այս երեք ընդունարաններուն մէջ է որ կը գոյանան, կ՚ապրին ու կ՚աճին միքրոպները. մենք ալ այդ երեք տեղերուն մէջ պիտի քննենք զանոնք։

Ջուրը կրնայ պարունակել միքրոպներ որք հոն գործելու ազատ ասպարէզ կը գտնեն, եւ եթէ այդ միջավայրն իրենց յարմարի, անսահման կերպով կը շատնան։ Համաճարակներու ծաւալումն ամէնէն աւելի ըմպելի ջուրին միջոցաւ կ՚ըլլայ. ասոր ապացոյց սա ունինք թէ գետափնեայ քաղաքներու մէջ համաճարակը կարգաւ կը յառաջանայ։

Ջուրը ջրային ըմպելիներու տիպարն է. կը ծառայէ ծարաւն անցունելու, մորթին ու թոքերուն ջրային զատուցումները փոխարինելու, արիւնը չափաւոր հեղուկութեան մէջ պահելու։ Այսպիսի բազմակողմանի դեր մը կատարելու համար՝ ջուրը պէտք է որ քիմիական եւ բնախօսական կարգ մը պայմաններ գոհացնէ։ Քիմիապէս՝ ըմպելի ջուրը պէտք է բաղադրուած ըլլայ թթուածնէ ու ջրածնէ. նաեւ պէտք է լուծեալ ունենայ օդ ու կարգ մ՚ալ հանքային նիւթեր, որք մեր ուրիշ տեսակ սննդեաց բաղադրութեան մէջ ալ կան, ինչպէս են սիլիս, փոսփորատներ, ածխատներ, ազօտատներ, ծծմբատներ, քլօրուրներ, պրօմուրներ, եօտուրներ, որք աղանիւթ ունին կիրը, սոտիոմը, փոթասիոմը, երկաթը, մանեզիոմը, եւայլն։ Բնախօսապէս՝ ըմպելի ջուրը պէտք է որ մաքրութեան այն աստիճանին մէջ գտնուի որ ձկանց, թուլամորթներու ու այլ կարգի կենդանեաց ինչ ինչ տեսակներուն բնակութեան, ինչպէս նաեւ բուսոց ինչ ինչ տեսակներուն իր մէջ աճելուն յարմարի։

Գտնուած ջուրերուն մէջ ամէնէն առողջարարն աղբիւրին բերնէն առնուածն է. այսպիսի ջուր մը ըմպելի ըլլալու ամէն պայմանները ունենալով հանդերձ բնաւ միքրոպ չի պարունակեր. բայց ջուր մ'իր աղբիւրէն հեռու ո'րքան միայն օդին դիմացը կամ հոսի հողուն երեսէն, այնքան կը չատնան իր մէջ միքրոպք եւ ջուրը կը կորսնցնէ իր ազնուութենէն։ Գետերուն ջուրին գալով, որովհետեւ քաղաքներու աղտեղութիւնք հոն կը թափուին, աւելի ապականեալ պէտք է ըլլայ այն։

Ամէն տարի ճահճային տեղեր եւ խոնաւ հողերու մէջ կը ծնին, կը մեռնին ու կը խճողուին անհամար բոյսեր ու կենդանիներ, եղէգ, մամուռ, որդ, ինֆիւզուար, եւայլն։ Զմեռը ցուրտը կ'արգելու ատոնց խմորումը. բայց երբ ամառը գայ, փտութիւնը կը սկսի ու կը տեւէ մինչեւ տաքերուն վերջը. այս փտութեան պատճառ են անտարբեր միքրոպներն, որք անհամեմատ կը բազմանան հոն եւ կը բազմացընեն նաեւ ուրիշ տեսակ միքրոպներ, ախտածինները։ Այս խմորումներէն վնասակար կազեր ալ կ'ելնեն որք գարշահոտութիւն կը բուրեն. բայց ատոնք չեն ճահճի մը վտանգները, այլ այն միքրոպները զորս հովը կը վերցնէ այն տեղերէն ու կը ցրուէ ամէն կողմ. ատոնք կ'ըսուին ճահճային միազմներ։ Այսպիսի տեղեր ճահճատենդ կը պատահի. բայց ըստ տեղւոյ եւ պարագայի կը պատճառեն նաեւ ժանտատենդ, քոլերա, ժանտամահ եւ այլ համաճարակներ։ Ուրեմն ամենէն վտանգաւոր ջուրը ճահիճներն է, որ ատկէ չի խմուիր իր պղտորութեան ու գարշահոտութեան պատճառաւ։

Ջուր մը որոյ մէն մի խորանարդ հարիւրամէթրին մէջ մի քանի պաքթէրի հազիւ կը գտնուի՝ անչուշտ նուազ կասկածելի է քան այն ջուրն որ այդ պաքթէրիներէն հազարներով ունի։ Ուրեմն ջուրէն կասկածուած վտանգը կ'աճի պարունակած միքրոպներուն թուոյն համեմատութեամբ։

Երբ ջուր մը կը ցամքի, հովը կը վերցնէ հոն չորցած միքրոպներն, որ օդոյ մէջ կ'առկախին կամ կ'իյնան հողու վրայ, զգեստի եւ այլ առարկաններու վրայ, ջուրերու մէջ։ Միքրոպք օդոյ մէջ չեն կրնար բազմանալ ու անգործ են. բայց երբ ջրոյ մէջ կամ խոնաւ տեղ մ'իյնան, հոն կը վերսկսին ապրիլ ու բազմանալ։

Օդը միջնորդ մ'է. հեռաւոր տեղերն ու մարդերը իրարու հետ յարաբերութեան մէջ կը դնէ, գրեթէ իրարու հետ շօշափման մէջ կը պահէ զանոնք մի եւ նոյն միջավայր մը կազմելով ամէնուն համար. ուստի օդոյ հոսանքներ շատ դիւրաւ կը փոխադրեն հիւանդութիւնները տեղէ տեղ։

Եթէ ջուրը մարսողութեան խողովակի ճամբով մեր ներսը կը մտցնէ միքրոպներն, օդը նոյնը կ'ընէ թոքերու ճամբով։ Շնչելի օդը 20 առ հարիւր թթուածնէ եւ 80 առ հարիւր ազօդէ բաղկացեալ ըլլալով՝ կրնայ պարունակել նաեւ ջրոյ շոգի, ածխային թթու եւ այլ կազեր աննշան քանակութեամբ, նաեւ փոշիներ։ Փոշիներն հանքային ու գործարանաւոր մարմնոց բեկորներ են. բայց հոն կան նաեւ միքրոպներ որ օդին ապականութեան գլխաւոր տարրը կը կազմեն։ Այս միքրոպներ ճահիճներու, ապանդանոցի, գերեզմանոցի, կոյանոցի եւ այլ աղտեղութեանց մէջ

գոյացեալ ըլլալով՝ օդին մէջ բարձրացած են հովերու միջոցաւ եւ երկու կարգերուն ալ կը վերաբերին, այսինքն ախտածիններէ ու անտարբերներէ կը բաղկանան։ Օդն ցորքան պարունակէ զանոնք՝ անշընչելի, վնասակար կը համարուի. որովհետեւ այսպիսի օդ մը արիւնը կը թունաւորէ, մինչդեռ մաքուր օդն արիւնը պիտի մաքրէր։

Գետնի հողն, մանաւանդ քաղաքներու մէջ, ահագին քանակութեամբ միքրոպ կը պարունակէ, մինչդեռ դաշտերու, գիւղերու հողը շատ աւելի մաքուր է։ Հող մը ուր առաջին անգամ երկրագործին արօրը կը մխուի կամ որ մարդկային քայլերու հարուածները կ'ընդունի, այն օրէն կը սկսի ապականիլ, միքրոպներու բնակարան դառնալ. ա՛լ անկից վերջը հետզհետէ կ'իջնէ մաքրութեան աստիճաններէն։ Հողուն միքրոպներէն մեծ մասն առողջութեան անվնաս են, այսինքն թէ անտարբեր միքրոպներ ըլլալով խմորում եւ փտութիւն միայն կը պատճառեն. ասոր ապացոյց, եթէ վէրքի մը վրայ քիչ մը հող դրուի, կպցուի, վէրքը ծանր վիճակ կ'առնու, մինչեւ իսկ փտախտի կը դառնայ։

Կը մնայ քննել թէ միքրոպներու արշաւանքէն ու ազդեցութենէն պաշտպանուելու համար, ի՞նչ միջոցներ հնարուած են յորմէ հետէ իրաց բնութիւնն երեւան ելած է։ Հիւանդութեանց փոխանցումն երկու կերպով կ'ըլլայ, անմիջական տարափոխում եւ միջնորդաւոր տարափոխում։ Անմիջական տարափոխումն առողջին ու հիւանդին իրարու շօշափուելովն, միոյն վիրուսին միւսէն ծծուելովն, արեան մէջ անցնելովն կը լինի. իսկ միջնորդաւոր տարա-

փոխումը կը լինի օդի, ջուրի, զգեստի, կարասեաց եւ այլ առարկայներու միջոցաւ, որք հիւանդէն թափած միքրոպներն կը կրեն։

Ջուրը մաքրելու համար երեք միջոց կայ, մզել, եռացնել ու թորել։ Մզելով ջուրը՝ անոր մէջէն պղտորութեան պատճառները կրնանք բառնալ. այն ատեն ջուրը պիտի ըլլայ վճիտ ու մաքուր։ Բայց համաճարակներու ատեն մզելը բաւական չէ. պէտք է եռացնել կամ թորել ջուրը, որպէս զի անկէ խոյս տան վնասակար կազերն եւ ջնջուին միքրոպները. բայց խմելէ առաջ այսպիսի ջուր մը պէտք է չքթեցնել մի քանի վայրկեան, որպէս զի օդ լուծուի հոն։

Շրջափակեալ օդը մաքրելու համար հնարած են հովահարութիւնը, որոյ միջոցաւ օդը կը նորոգուի. բայց համաճարակներու ատեն պէտք է զայն հականեխել։

Հականեխել կը նշանակէ օդէն, տան մէջէն, սենեակին պատերէն, զգեստներէն, կարասիներէն, ի մի բան հիւանդին կամ անոր շունչին հետ չօշափման դրուած ո եւ է նիւթերէ ջնջել վնասակար կազերն եւ միքրոպներն որովք նեխաւորեալ են։ Հականեխական եւ հակափտական կոչուող դեղեր բաղադրած են այս նպատակին համար. առաջինք կը ջնջեն կամ կը ծածկեն փտութենէ կամ ուրիշ պատճառաւ արտադրուած գէշ հոտերը. իսկ վերջինք աւելին կ՚ընեն, գործարանաւոր մարմնոց տարբաղադրուիլը կ՚արգելուն։ Հնարած են էթիւվ անուն կազմած մը, որոյ միջոցաւ կը հականեխեն վարակեալ զգեստ, կարասի եւ այլ առարկայներ։ Համաճարակներու ատեն

լաւ միջոց մ՚է դարձեալ վարակեալներն առանձնացընել . այս բանիս համար քառանթէն , առողջապահական շղթայ , եւ այլն կը հաստատեն ։

Բայց մեծագոյն գիւտ մ՚է պատուաստը , որոյ վրայ մեծ յոյս դրուած է ապագային համար . սոր միջոցաւ տարափոխիկներու դէմ մարդն եւ կենդանիք պիտի պաշտպանուին ։ Պատուաստը Ճէններ անգլիացին գործածեց առաջին անգամ ծաղկախտին դէմ պաշտպանելու համար մարդը . բայց յետոյ Փասթէօր նոր մէթոտ մ՚երեւակայեց որ շատ բանաւոր է ։ Միքրոպները մասնաւոր պայմանի մէջ մշակելով , այսինքն զանոնք տարբեր միջավայրի մէջ փոխադրելով , կը բարեչրջէ զանոնք . այն ատեն անոնց ազդուութիւնը կը մեղմանայ առանց ձեւական փոփոխման . այսպէս պատրաստուած միքրոպները պատուաստի միջոցաւ ներմուծելով մարդուս կամ կենդանեաց մարմնոյն մէջ՝ զանոնք տոկուն եւ անյաղթելի կ՚ընէ այլ եւս մահացու միքրոպներուն դէմ ։ Այս մէթոտը Փասթէօր գործադրեց ածխախտի ու չնախտի համար եւ յաջողեցաւ ։

Արդ , գտնուելէ ետքը հիւանդութեանց տարափոխման պատճառը , անշուշտ պիտի գտնուին հետզհետէ անոնց դէմ պաշտպանուելու եւ վարակեալն հիմնովին բժշկելու միջոցներն ալ ։ Այսօր ունինք պատուաստը , հականեխականներն ու հակափտականները , որք թէեւ տակաւին թերի , սակայն յոյս կուտան կատարելագործուելու ։ Միւս կողմէն առողջապահութիւնն աւելի ազդուապէս պիտի կատարէ իր նախախնամական դերը , իր բարերար կանոններով ու յորդորներով ի զգուշութիւն հրաւիրե-

*լով միշտ զմեզ ։ Անգամ մը որ գիտութիւնը յաջողի սանձել միքրոպը , ալ ո՞վ կը մտածէ ժանտախտը , քոլերան , հիւծախտը , կեղծմաշկը , կարմրախտը . մեր ամրակուռ մարմինն այդ անհունապէս փոքրերուն մառախուղին մէջ պիտի շրջի աներկիւղ ու անտարբեր ։*



## ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ



*Խորհրդածութիւնք պաշտպանողական օրինաց օգտից ու վընասուց վրայ. — Նախաձեռնութեանց կարեւորութիւնն յառաջդիմութեանց նկատմամբ։*



Վերջին դարուս քաղաքական տնտեսագէտք ազատ փոխանակութեան առաւելութիւնքն այնչափ ճարտարօրէն ջատագոված են, որ անոր վրայ պահ մը տարակուսիլն իսկ ներելի չէ։

Հարկաւ երկրի մը մէջ ուր առատ ցորեան չի բուսնիր, կամ այգիի անյարմար կլիմայի մը տակ, պէտք չկայ օտար արտադրութեանց դէմ մաքսային պատուար մը յարուցանել, որպէս զի տեղացի երկրագործն կամ այգեպանը կարենայ մրցիլ օտարին հետ։

Անշուշտ լաւագոյն է որ ազատ փոխանակութեամբ դրացի երկիրներու ցորեանն ու գինին գնէ նոյն ժողովուրդն աժան գնով, եւ փոխարէն վաճառէ անոնց ինչ որ ինքը կրնայ արտադրել առատօրէն, հում կամ բոյս եւ կամ ձեռագործ։

Այս վարդապետութիւնն այնչափ արմատացեալ էր տնտեսագիտաց սրտին մէջ, որ ասկէց քան եւ հինգ տարի առաջ հակառակը մտածելն ծայրայեղ տգիտութիւն կը համարուէր։

Սակայն Ֆռանքօ-Գերման պատերազմէն վերջ, Գաղիա՝ Թիէռի նախաձեռնութեամբ՝ առաջին փոր

ձրին ըրաւ պաշտպանողական օրինաց դիմելու, եւ անով յաջողեցաւ իւր խանգարեալ ելմտացոյցը ճշդել։

Գաղիա վերջերն սկսաւ տուժել իւր այդ օրէնքէն քաղած օգուտը. վասն զի դրացի ազգերն, օրինակէն օգտուելով, սկսան իրենք եւս պաշտպանել իրենց արտադրիչներն, որով զանազան արուեստք ծնան Գերմանիոյ եւ Աւստրիոյ մէջ։

Ռուսիա զանազան արտաքին արտադրութեանց դէմ մաքսը կրկնապատկեց ու քառապատկեց հետ ըզհետէ. եւ այսպիսաւ յաջողեցաւ, իւր լայնածաւալ երկրին մէջ, արուեստից ծաղկելուն օժանդակել իրապէս. որոյ օգուտն լիուլի կը վայելէ այսօր Ռուս ժողովուրդն, թէ եւ անշուշտ, անթիւ պարագայից մէջ, զրկուեցան աժան գներով օտարի արտադրութիւնքը վայելելէ. բայց ի հարկէ այսպիսի ժամանակաւոր զրկանք մը կ'արժէր արուեստից Ռուսիոյ մէջ ծագումն. սակայն եթէ այդ պատուարն մշտատեւ լինի, անշուշտ ժողովրդոց ստուար բազմութեան շահն մասնաւորներու օգտին զոհուած կը լինի։

Վերջապէս Ամերիկա եւս պէտք կը զգայ Եւրոպիոյ ճարտարարուեստից դէմ դռները դարձնելու, մտածելով թերեւս որ, եթէ Եւրոպա Ամերիկայի ցորենին պէտք ունենայ, չի կրնար արդելք դնել նորա ներմուծմանն, վասն զի ցորենի զրկանքը կենսական խնդիր է ամէն ժողովրդոց համար, նա մանաւանդ Գաղիա արդէն ըրաւ ինչ որ կարելիութեան սահմանը կը ներէր։

Ամերիկայի հաստատած արդի մաքսային դրութիւնն իմաստութիւն է թէ չէ, յառաջիկայն միայն պիտի կարենայ որոշել. վասն զի կարծիքներն այս մասին շատ բաժնուած են։

Ինչ որ ստոյգ է, այն է որ տգէտ ժողովուրդ մը՝ տղու պէս ըստ ամենայնի պաշտպանութեան կարօտ ու արժանի է. սակայն երկրի մը անյարմար մէկ գործը պաշտպանողական օրինօք ծաղկեցնելու ջանքին իմաստութիւն չէ. վասն զի, ինչպէս ըսուեցաւ, ընդհանուրին շահը մասնաւորներու կը զոհուի, եւ բաց աստի, եթէ ամէն կառավարութիւն նոյնն ընէ, ժողովուրդք կը զրկուին ազատ փոխանակութեան առաւելութիւններէն։ Այս սկզբան ճշմարտութիւնն աւելի դիւրաւ կ'ըմբռնէ ոք. օրինակն աւելի սահմանափակելով մտածենք պահ մը որ, եթէ մարդս պարտաւորէր իւր ամէն պիտոյքն անձամբ հոգալ, այսինքն՝ իրեն պէտք եղած ցորենըն ալ ինք ցանէր, կօշիկն ալ ինք կարէր, եւն. ի՞նչ կ'ըլլար վիճակնիս։

Հակառակ Գաղիոյ, Ռուսիոյ եւ Ամերիկայի ըրածներուն, Գերմանիոյ արդի ուշիմ կայսրն, տեսնելով որ իւր ժողովուրդն ըստ ամենայնի կրնայ առաւելութեամբ մրցիլ դրացի ազգաց հետ, վերջին օրերս նախաձեռնութիւն ստանձնեց՝ մաքսային պատուարներուն առաջին հարուածը տալ։ — Մաքսային դաշնադրութեամբք կէս առ կէս գիներն իջեցուց. Պիսմարքի պաշտպանողական դրութիւնը քանդեց, որպէս զի նոյն ազատութիւնը գտնէ ինքն ալ դրացիներէն, եւ Գերմանք կարենան դիւրաւ յաջ եւ յաճախ ղրկել իրենց թէ՛ հողային բերքին աւելորդ մասն եւ թէ ճարտարարուեստից բիւրաւոր արտադրութիւնքը։

Գերմանիոյ մէջ մեծ ուրախութիւն պատճառեց այս նոր առեւտրական յաղթանակն, եւ կը յուսան

մեծ օգուտ քաղել ներկայ դրութենէն. եւ ո՞վ չի գիտեր թէ նախ Անգղիացիք եւ ապա Պէլժք իրենց հարստութիւնն ազատ փոխանակութեան կը պարտին մեծապէս։

Նախաձեռնութիւնք ազգաց միակ յառաջդիմութեան միջոցն եւ նոյն իսկ անհատական հարստութեանց ալ յորդ աղբիւրներէն գերագոյնն են։

Ամերիկացիք նախաձեռնութեանց մէջ ամենէն վեր են. եւ բացարձակապէս իրենց յանդուգն ընդունորութեան կը պարտին այն տարօրինակ յառաջադիմութիւնն եւ այն հսկայ փարթամութիւնն, որուն տիրացած են այսօր։

Արեւելքի մէջ մասնաւորապէս Հայքս քաջ օրինակող եմք. բայց նախաձեռնութենէ յոյժ կ'երկընչիմք։ — Ստոյգ է որ պարագայից բերմամբք ձեռնարկութեանց վարժութիւնը կորանցուցած եմք, եւ կամ աւելի ճիշդ է ըսել թէ չեմք ստացած զայն, այլ պէտք է միշտ յիշեմք այն առածն որ կ'ըսէ թէ բան մը վտանգի դնել չուզողը բան մը չի կրնար շահիլ։

Ընկերական ոգին կատարելապէս կը պակսի մեր մէջէն, որով անկարող կ'ըլլամք քիչ շատ վտանգաւոր երեւցող գործերու հաւաքաբար ձեռնարկելու, թէ եւ գիտնալու է որ ամենէն շահաւոր գործերն վտանգաւոր կարծուածներուն մէջէն կրնան ծագիլ։

Յառետեսութիւնն պոլսեցի դրամագլխի տիրոջ օրէնք դարձած է։ Քիչ անգամ կը պատահի որ, երբ պոլսեցի դրամատիրոջ նոր գործ մ'առաջարկուի, յափշտակուի նա այդ գործին առաւելութեանց վրայ մտածելով. այլ ընդհակառակն միշտ յոռետես կ'ըլլայ, եւ միջոց մը կը գտնէ իսկ իւր խղճին առջեւ

մերժումն արդարացնելու։ Հոս դարձեալ կը կրկնեմ թէ այս ընթացքով հետզհետէ պիտի տկարանամք։ Պէտք է որ ընկերական գործառնութեանց վարժիմք, եւ փոքրագին բաժիններով բազմաթիւ ընկերութիւններ ստեղծեմք՝ մեր սովորականէն դուրս գործոց ձեռնարկելու համար, որոց գլխաւորագոյնք պէտք է լինին ո՛չ թէ առեւտրական, այլ մշակական գործք, եւ ճարտարարուեստից վերաբերեալ գործառնութիւնք. սոցա հետ կը կապակցին անասուն մնուցանել, կարագի, պանիրի, գինւոյ գործարաններ հաստատել, որք ո՛չ մենաշնորհի եւ ոչ ալ այնչափ մաքսային պաշտպանողականութեանց կը կարօտին. եւ եթէ այսպիսի գործեր կանոնաւորապէս յառաջ տարուին, եթէ մէկ ձեռնարկն կորուստ ընէ, երկրորդն ու երրորդը անտարակոյս պիտի շահին, ըստ առեւտրական տրամաբանութեան։

Ներկայ դրութեան մէջ առաւելութիւն մ՚ալ կայ, այն է որ հաստատուելիք ընկերութիւնք բնականաբար քիչ շատ աժան հողի տէր պիտի լինին, եւ մեծ յոյս կայ որ մօտակայ ապագայի մէջ հողի գինն անհամեմատ կերպիւ բարձրանայ. վասն զի Տաճկաստանի բարեբեր հողին աժանութիւնն որ եւ է տեղ օրինակը չունի։

Վերոգրեալ համոզումներս, որ անշուշտ մեր մեջէն շատերուն եւս է, այլ եւս կարելի չէ այսօր իբր պարզ վարդապետութիւն նկատել։

## ԼԵԶՈՒԱՔՆՆԱԿԱՆ



*Հայ գրականութեան պատմութիւնն* (1) *ուշի ուշով ուսումնասիրուելով կը տեսնուի որ թէ՛ Յաբեթական* (*Հնդ-Եւրոպական*) *եւ թէ՛ Սեմական բարբառները* (dialecte) *միապէս, եթէ ոչ հաւասարապէս, ազդած են մեր լեզուին կազմակերպութեանը վրայ. առաջինը՝ Պարսիկ եւ Յոյն մատենագրութեան, իսկ երկրորդն Ասորւոյն միջոցաւ։*

*Աշխարհագրական դրից, քաղաքական կացութեան եւ այլ տոհմային եւ կրօնական հանգամանաց բերմամբ, Թերեւս եւ անդր-պատմական ծագման մը վերբերութեամբ, պարսիկ տարրը միշտ գերակշռութիւն ունեցած կ'երեւի այս յօրինուածութեան մէջ։*

*Իրաւ է որ հելլենամոլն եւ հելլենաբանն Խորենացին որ, «Ոչ դանդաղի զբոլոր իսկ զՅոյնս մայր կամ դայեակ ասել իմաստից,» յոյն մատենագրութիւնն ալ առընթեր կը դնէ պարսկին, եւ զերկոսին իսկ զուգակշիռ եւ զուգընթաց ցուցնել կը նկրտի. «Քանզի,» կ'ըսէ, մեր նախնեաց անիմաստասէր բարքը պարսաւելով, «զտանին եւ միջոցք լքեալ պատերազմացն, եւ* գիր Պարսից եւ Յունաց, *որովք այժմ գիւղից եւ գաւառաց եւս եւ իւրաքանչիւր տանց առանձնականութեանց եւ հանուրց հակառակութեանց եւ դաշանց այժմ առ մեզ գտանին անբաւ զրուցաց մատեանք ...։»*

---

(1) Ոչ դասագրքերը։

*Բայց եւ այնպէս դժուարին է հաւատալ որ, Նախ քան զՔրիստոնէական մեծ շարժումն, ծանօթ եղած լինի յոյն լեզուն մերայնոց, ուր, զորին հակառակն, կը տեսնենք որ, մինչեւ իսկ յետ քրիստոնէութեան, ասորի լեզուաւ կը կատարուէին եկեղեցական պաշտամունք, եւ ոչ թէ յոյն, ինչպէս կը վկայէ Փարպեցին։*

*«Քանզի հոգացեալ յարաժամ տրտմէր երանելի այրն Մաշթոց,» կ'ըսէ, «տեսանելով զմեծաջան ծախս մանկանցն . . . աշխարհիս, որք բազում թոշակօք եւ հեռագնաց ճանապարհօք եւ բազմաժամանակեայ դեգերմամբք մաշէին զաւուրս իւրեանց ի դըպրոցս ասորի գիտութեան։ Քանզի* պաշտօն եկեղեցւոյ եւ կարդացմունք գրոց ասորի ուսմամբ վարէին ի վանորայս եւ յեկեղեցիս . . . ժողովրդոցս, *յորմէ ոչինչ էին կարող լսել եւ օգտել ժողովուրդքն այսպիսի մեծ աշխարհի, յանլրութենէ լեզուին ասորւոց։»*

*Եւ թէպէտ ինքն Մեսրովպ «Ի տիս մանկութեան իւրոյ ուսեալ էր զդպրութիւն յոյն,» (1) սակայն եւ այնպէս աթութայից փոխատրութեան մեծ գործոյն մէջ դարձեալ Մեծին Սահակայ օժանդակութեանը կը կարօտէր «ստէպ հարցմամբ եւ ուսանելով ի նմանէ զաթութայիցն գաղափար, ըստ անսայթաքութեան յունին։ Վասն զի ոչ լինէին բաւական ի վճարել անսխալ ուղղակի՝ առանց առաջնորդելոյ նորա սրբոյ հայրապետին Սահակայ, որ յոյժ առ-*

---

(1) Նոյն՝ անդ։

լցեալ անցուցանէր վարժիւք զբազում գիտնովք Ցունաց» (1)։

Բաց աստի, նոյն իսկ Թարգմանութեան հոյակապ եւ տաժանակիր աշխատութեան մէջ մեծագոյն եւ երեւելի մասը դարձեալ Ս. Սահակին կը ձգէ Փարպեցին։ «Երանելին Մաշթոց եւ որ ընդ նմա պատուական քահանայք էին,» կ՚ըսէ, «ոչ զօրէին համարձակել յայսպիսի սաստիկ եւ կարեւոր գործ, թարգմանել գիրս ի յոյն լեզուոյն ի հայ բարբառ. վասն զի ոչ ինչ էին այնպէս տեղեակ գիտնապէս հրահանգի յունարէն ուսման։»

Արդ, եթէ մի մեծ եւ բովանդակ աշխարհի մէջ մի քանի անձինք եւեթ ունէին յունական հմտութիւն, եւ անոնց մէջ ալ մին միայն «կատարելապէս հմուտ երգողական տառիցն (2) եւ հռետորական յորդասաց յայտնաբանութեան,» եւն. (Ղ. Փ.) յայտնի է որ ժողովուրդն, այսինքն՝ ազգին լրութիւնն անճաշակ եւ անգէտ էր այն ուսման։

Նա զի, ի թարգմանելն Սահակայ զՍ. Գիրս, ասորի բնագրին վրայ աշխատեցաւ ի սկզբան՝ յոյն օրինակ չգտնուելուն. ինչպէս այս մասին ալ բացորոշ կ՚ըսէ Փարպեցին որ, յետ պատմելոյ զդարձ Մեսրովպայ յԱղուանից աշխարհէ՝ կը յաւելու. «Գտանէ զՄեծն Սահակ թարգմանութեան պարապեալ յասորւոյն՝ յոչ լինելոյ յունին։»

Ի դարման այս բացակայութեան յոյն ձեռագրաց,

---

(1) Նոյն՝ անդ։

(2) Հելլէն բանաստեղծութեան եւ տաղաչափութեան կ՚ակնարկէ անշուշտ, եւ զՀոմերի եւ այլ հելլէն հրաշակերտից խորին հմտութիւնը կ՚իմանայ։

Խորենացին Մեսրովմայ հրընկեցութիւնը յառաջ կը բերէ. «Քանզի նախ ի Մեսրովմայ այրեալ լինէին ընդհանուր աշխարհիս յոյն գիրք:» Այլ մեզ աւելի հաւանական կը թուի նոյն պատմագրին յառաջ բերած միւս պատճառը՝ թէ «Ի բաժանել զ . . . Հայոց՝ չտային Պարսիկ վերակացուքն յոյն ուսանել դպրութիւն ումեք յիւրեանց մասին, այլ միայն ասորի:»

Ցորմէ կը հետեւի թէ ոչ միայն ընդհանուր եւ բացարձակ էր յոյն լեզուի անգիտութիւնն առ մեբազնեայս, այլ եւ մանաւոր փոյթ եւ նպատակ կար զայն խափանելու, հեռացնելու կամ բնաւ իսկ մերժելու: Զայս կը հաստատէ նաեւ Մեսրովմայ ի հուր դատելն զյոյն գիրս:

Որ ինչ եւ իցէ, պատմութեան ուղղութենէն սա եզրակացութիւններն ինքնին կը բղխին.

1. Թէ ի հնումն, այսինքն՝ նախ քան զմուտն քրիստոնէութեան, երբ դեռ կրօնական խորութիւնք հին ընկերութիւնը քայքայած՝ անջատած չէին, հին Արիական լեզուն, Հնդիկ եւ Զանդիկ եւ ապա Պարսիկ ձեւոց տակ, իւր իշխանութիւնը կը տարածէր եւ կը պահէր բոլոր ցեղական հատուածոց կամ հատուածեալ ցեղից մէջ: Եւ, թէ՛ իբրեւ արեանառու կամ մերձաւորագոյն քան զայլս, եւ թէ՛ իբրեւ սահմանակակից, բնակակից, ամնդակից եւ նոյն եւ նման այլ ամենայն հանգամանօք, բնական էր որ Հայ ժողովուրդն, աւելի քան զայլս կրէր եւ պահէր այն հին Արիական նախնւոյն տիպն եւ կերպարանքն եւ ընդհանուր ազդեցութիւնն իւր լեզուին մէջ:

Վասն որոյ ընաւ ամենեւին զարմանալու տեղի չկայ՝ թէ Պարսից եւ Հայոց մէջ այսչափ հասարակ եզրեր կը գտնուին, որոց թիւը, խուզարկութեամբ, աւելի եւս պիտի բազմանայ անշուշտ. ուր, ընդ հակառակն, ո՛չ միայն զարմանալի՝ այլ եւ ցաւալի պիտի լինէր, եթէ արդարեւ զուրկ գտնուէինք լեզուական այս առընչութեան ծանօթութենէն, որ ցեղագրական (éthnographique) պատմութեան ա՛յնչափ մեծ լոյս կը ծագէ։

2. Թէ Քրիստոնէութեան հետ կը սկսի նաեւ Ասորի դպրութիւնը մուտ գտնել առ մեզ, այսինքն՝ ի Լուսաւորչէ եւ այսր մինչեւ ի Մեծն Ներսէս, մանաւանդ մինչեւ ի Սահակ։

3. Թէ Ս. Գրոց թարգմանութենէն քիչ յառաջ, եւ մանաւանդ անոր հետ, կը սկսի յոյն դպրութիւնն ալ ծանօթանալ մերայնոց եւ խոր եւ անջնջելի կնիք մը դրոշմել Հայ գրականութեան վրայ։

Այս է, ըստ մեր իմացուածոյ, այս եռամասնեայ տարերաց իւրաքանչիւրին դերը, դիրքն եւ ժամանակը, ցորչափ կը զօրէ եւ կը ներէ ճշդել պատմութիւնը։

Արդ մեք, ի բաց թողլով այժմ ասորի եւ յոյն տարերքն, իբրեւ օտար մեր նիւթոյ, պարսիկ տարրին վրայ պիտի ամփոփենք մեր յառաջիկայ հակիրճ տեսութիւնը։

Սակայն եւ այնպէս, բանասիրական հայեցուածով, պարսիկ լեզուի մշակութեան կարեւորութիւնն ի վեր հանելու համար, անհրաժեշտ թուեցաւ մեզ վերի պատմական բացատրութիւնը։

Քանզի արդարեւ, ինչպէս ի վեր անդր յիշեցինք,

պատմական եւ նախապատմական սերտ առնչութեամբ մը կապուած են հայ եւ պարսիկ լեզուները . եւ եթէ այս ընտանութեան յայտնի նշաններէն մեծ մասը քողարկած եւ աննետացուցած է ժամանակը, կամ եւ կը նշմարուին տակաւին ոչ սակաւ հետքեր, որոց առաջնորդութեամբ այդ հեռաւոր անցելոյն վերստնել անկարելի չէ ։

Ասոնք են այն հասարակ բառերն որք մեր եւ Պարսից լեզուին մէջ կը գտնուին, որք ոչ ի մէնջ անոնց անցած եւ անոնցմէ մեզ անցած են, ինչպէս ոմանք կը կը կարծեն տակաւին, այլ մի եւ նոյն հեռաւոր հասարակ բունէ մ՚ընձիւղուելով, փոքր ինչ կերպարանափոխութեամբ, թէ՛ նոցա եւ թէ մեր լեզուին մէջ անցած են եւ մնացեալ անցեալի մը կենդանի վկայներն են այսօր ։

Վասն որոյ, այս հասարակ եզերաց համեմատութեան մէջ, Պարսից արդի հնչումը մեզ համեմատութեան չափ առնուլ՝ սխալ է . զի, յընթացս դարուց, Պարսիկ ազգն իւր հնչումը զգալապէս մեղմացուցած եւ ի հնոյն, ի Թաւ Զանդէ, բաւական հեռացած եւ խոտորած կ՚երեւի ։ Թէ եւ այս մասին ալ կանոնաւոր միօրինակութիւն չտեսանք անոնց մէջ . զի այլապէս կը հնչէ Խորասանցին, այլ՝ Շիրազցին եւ այլ Թէհրանցին ։ Ուստի բանաւոր կը թուի կարծել՝ թէ մեր հնչմունք կը պատասխանեն աւելի հին պարսկականին, Բեհլեվիին, Տերիին կամ լաւ եւս Զանդին ։ Նոյն իսկ ուսեալ եւ հմուտ պարսիկք, որոց հետ բազում անգամ առիթ ունեցած ենք խօսելու, կ՚ընդունին այս հաւանականութիւնը ։

Եւ արդի պարսիկ հնչմամբ կ՚իմանանք ո՛չ թէ մեր

Տաճկաստանցւոց բերնին մէջ ծռած ծեքած պարսկերէնը, այլ նոյն իսկ Պարսից սեփական արտասանութիւնն, որ կարի տարբեր է ի մերայնոյն եւ ոչ երբէք այնքան խրթնացած օտարացած յիսկականէն, որպէս է մերս։

Ձի ուր մեք կ'ըսեմք նուրբ՝ լերկ եւ թեթեւ ձայնիւ [illegible], կիւֆքէն, նոքա կը հնչեն կօֆքէն. եւ մեր [illegible] ֆեարկեահը նոցա բերնին մէջ կը լսուի ֆարկահ, մեր պարզ آن ա՛նը նոքա կը հնչեն աօ՛ն կամ աո՛ւն, եւն.։

Այս պատճառաւ, լեզուագիտական համեմատութեան մէջ, օրինաց կարգ անցած է մանաւանդ ձայնաւոր տառից բնաւ ուշադրութիւն չընծայել. զի չիք ինչ այնպէս անհաստատ եւ անկայուն որչափ անոնց արտասանութիւնը. Եւ հնութիւնն ալ կարեւորութիւն տուած չ'երեւիր անոնց. քանզի ահա շատ մը հին լեզուներ որոց մէջ ձայնաւոր տառ անգամ չի գտնուիր։ Լոկ բաղաձայններն են որ կուտան բառին յօրինուածը եւ իբր կմախքն են անոր։

Ի՞նչ զարմանք ձայնական հնչմանց համար, ուր կը տեսնենք որ նոյն իսկ բաղաձայններն ազգէ յազգ եւ լեզուէ ի լեզու եւ աշխարհէ յաշխարհ, դարուց հոլովմամբ, այնպիսի փոփոխութիւններ կրած են եւ այնպիսի մութ եւ քողարկեալ ձեւերու տակ կը ներկայանան՝ որ բազում դժուարութեամբ եւ չրջահայեցութեամբ հազիւ հնարաւոր կը լինի իսկն եւ ստոյգը գտնել։

Այս տեսութեամբ մարթ է երեք կարգ որոշել բառից.

Առաջին կարգն յորում համեմատելի բառերն այն-

չափ պարզ, մերկ եւ մեկին են՝ որ ամենեւին դըժուարութիւն չի կրուիր անոնց խնամութիւնը՝ մերձաւորութիւնն ըմբռնել եւ հաստատել, զոր եւ հասարակ աչքերն ալ կրնան նշմարել եւ որոշել. զոր. հազար = هزار, hĕzar. — խրատ = خرد, khirds. — խոստովան = خستوان, khustĕvan. եւն.։

Երկրորդ կարգի բառերն են անոնք որք թէ եւ ձեւով հնչմամբ եւ այլ ինչ ինչ հանգամանօք բաւական հեռացած կ'երեւին իրարմէ, այլ որոց նոյնութիւնը նմանօրինակ դիպաց առաջնորդութեամբ եւ խելամտութեամբ դարձեալ կը գտնուի եւ կը հաստատուի. զոր. կծանեղ, որոյ համապատասխանող բառն է պրս. كديز, kĕdhyeskĕ, յորում բաց ի ձայնական փոփոխութենէ, զ բաղաձայնն ալ կը տեսնենք որ ծ ի փոխուած է։ Այսպէս է նաեւ գանձ որ է گنج, kĕnĕ — եւ գոյն = كون, kiunĕ։

Երրորդ կարգ մ'ալ կայ յորում բառերն ա՛յնքան հեռացած եւ օտարացած են իրարմէ որ անոնց մէջ, ոչ թէ նոյնութեան, այլ նմանութեան նշոյլ մը գտնելու համար բաւական յամառ կամեցողութիւն եւ շատ մեղկ յօժարութիւն պէտք է։ Այս կարգին մէջ, յիրաւի, անստուգութիւնը ծայրէ ի ծայր կը տիրէ։ Ամենայն ինչ խախուտ եւ ամենայն ինչ սահուն է անդ։ Աւազուտ անապատ մը ուր ոտից կռուան բնաւ չկայ. կամ ապառաժուտ լպիրծ ափափայք, ուստի ամէն վայրկենին վտանգ ի վերայ կայ անդունդն ի վար գարահոսելու։ Ուր, վերջապէս, առանց պատկերի խօսելով, թուիք եւ կարծիք, հաւանականութիւնք եւ ենթադրութիւնք այնքան խռնեալ խճողեալ զիրեար կը մղեն՝ որ կարծեցեալ

ստուգութիւնն իսկ երկբայելի կը մնայ, եւ միտք , ի կամս հողմոց , իբրեւ յՈվկիան , տարուբերեալ կը տատանին ։

Դժուար է զգոյշ կալ այս վտանգէն որ լեզուաքննականին մէջ բռնազբօսութիւն կ'ըսուի , եւ որ եթէ քիչ մ'աւելի ստիպաւ եւ փութով յառաջ մղուի՝ մինչեւ ի տղայականն կը զառածի ։ Բազում լուրջ եւ յանձնարարելի հեղինակք գայթած ինկած են , դժբաղդաբար , այս վտանգին մէջ , յորմէ սակաւուց բաժին է զերծ մնալ ։

Մեք , չվստահելով մեր լուսոյն , փոխանակ այս խաւարամած անդնդոց մէջ առ խարխափ գնալու , նախընտրեցինք բնաւ իսկ չյանդգնիլ մատչիլ այս սահմաններուն , այլ արքունի արահետ պողոտայն մեզ ճանապարհ եւ առաջնորդ բռնեցինք , յորում երկիւղ չկայ բնաւ ո՛չ մոլորելու ո՛չ սայթաքելու ։

Ուստի մեր որոշած երկրորդ կարգին մէջ կուգան կը խմբուին մեր ի քնին առած բոլոր բառերը , որոց վրայ ըստ կարի ջանացած եմք որ երկբայութեան նշոյլ չկենայ ։

Երրորդ կարգն , այսինքն մոլորաչաւիղ ուղին , ընտրած է մեր վաղամեռիկ ողբացեալ բարեկամ Հ. Ս. Տէրվիշեանը , որ թէեւ քանի մը համարձակ քայլեր առած է , այլ ընդհանրապէս դժուար է հետեւիլ նմա . զի բազում ուրեք այնպիսի առապարաց մէջ կը խրի , ուր ինքն իսկ ելք եւ չաւիղ որոնել կը թուի ։

Ցընթացս գործոյս առիթ պիտի ունենամք նշանակել մի քանին այս դժուարութեանց ։

Արդ , ահաւասիկ բառից այն դուզնաքեայ պաչա-

*րը զոր մերթ ընդ մերթ պատահաբար ժողոված էինք, եւ որոց թէպէտ շատ աւելի էր թիւը, այլ մեք ի-բաւունք չհամարելով այլոց վաստակը մեզ սեփականել, խնամով ի բաց թողած եմք ամէն այն բառերը զորս տեսեր եմք թէ, յառաջ քան զմեզ, գտած նշանակած է բանասէր Յակոբ Տիւզեան՝ քաղելով Պալատցի բարեյիշատակ Գէորգ դպիր Տ. Յովհաննէսեանի պարսկահայ մեծահատոր Բառարանէն։*

*Նոյնպէս ի բաց ձգած եմք նաեւ զանոնք որք Հ. Տէրվիշեանի գործոյն մէջ կը գտնուին, եւ որոց մասին համամիտ եմք իրեն։*

I. *Ածուխ* = آزخ ազէխ, *զոր մարթ է նաեւ հընչել ազոխ, ազուխ, եւն. ձայնաւորը հաստատուն օրէնք չունենալով, ինչպէս յիշեցինք։*

*Գալով զ ի փոխուելուն ի ծ, սա ալ հազուադէպ չէ, ինչպէս վերը օրինակաւ մը ցուցուցինք. մերձաւոր բաղաձայնից մէջ շատ անգամ կը տեսնուի այս, որպիսիք են լծորդ ըսուած տառերը։*

*Սոյն օրինօք եղած են նաեւ ծունկն եւ ծունր =* زلفی՝ զուլֆի, زلفو՝ զալֆու, *եւ ծեր* = زر՝ զէր։

*Արդ՝* آزخ ազէխ *կը նշանակէ, ըստ Գէորգայ դպրի, «հօտեցեալ (յօտեալ) այրելի ճիւղք որթոյ.» յորմէ բանաւոր կը թուի ենթադրել թէ ամէն կարգի այրելի փայտերու ալ տարածուած է իմաստը, մանաւանդ մանաւորապէս պատրաստուածներուն որք ածուխ են։*

*Քանի որ մի մայր գաղափարէն (որթ) կը մեկնուի իբրեւ չուսկէտ, աննհաւանական չէ կարծելը թէ որթոյ մի այլ մասէն՝ բերքէն ալ ձեւացած լինի ազոխը։ Այսպիսի պէսպիսութիւնք յանցառ չեն։*

*Հ. Տէրվիշեան* ag, ang, *անծ, արմատներ կը գտնէ, որոց քով կը շարէ նաեւ հնդիկ անգա՛րա, ագ-նի. լտ.* ig-nis, *լիթ.* anglis, *եւն., որոցմէ ուղիղ գծով կ'իջեցնէ մեր ածուխը։*

2. *Ամուսին* = آموسی, *ամուսնի, երբ համատուն, համամնունդ, սննդակից, զի այսու անուամբ կը յորջորջեն զիրար կանայք որ ընդ միում առն կը բնակին։ Գաղափարին մէջ փոքր ինչ փոփոխութիւն մտնելով, որ անօրինակ չէ, առն եւ կնոջ սեփականուած է առ մեզ այս ձայնը։*

*Հ. Տէրվիշեանը հոս սին արմատին վրայ* çu, çvan, χῦρος. χε·νέος, *սունեա, սավա, եւն., եւն. կուտակելով՝ երկա՛ր եւ դժուարամարս վարդապետութիւն մը կ'ընէ։*

3. *Ակատան* / *յԱկատանի կալ* } = آکسق՝ *ակիշքեն*, آقشق՝ *ակիսքեն, որ կը նշանակէ յապահովի լինել։*

4. *Ապաստան* = آبشق՝ *ապիշքեն, թաքուցանել՝ ծածկել՝ պահել։*

*Ցիրաւի ապաստան լինել կամ ապաստանել ու մեք կը նշանակէ ապաւինել, այսինքն դիմել ումեք որպէս զի հովանաւորէ՝ պահէ՝ թաքուցանէ կամ, յընդարձակ միտս, օգնէ՝ պաշտպանէ։*

*Տե՛ս նաեւ, նոյն արմատէն, յափշտակել։*

5. *Ակիշ* = آکیش՝ *ակիշ = կարթաձեւ կեռ երկաթ։*

6. *Ասպար* / *Սպար* } = آسپ՝ *իսփեր*, سپ՝ *սիփեր, վահան, մկունդ, յորմէ ասպարապետ, եւն։*

7. *Աստառ* = آستر՝ *աստեր, նոյնիմաստ։*

8. *Ատր* = آدر՝ *ատեր*, آذر՝ *ազեր*, آذر՝ *ազիւր, հուր։*

*Հայերէնի մէջ այս ասր արմատին միայնակ գործածուածը չկայ, այլ բարդութեանց եւ ածանցմանց մէջ կ'երեւի. ինչպէս, ասրագոյն, ասրահիւն, ասրաշէկ, ասրորակ, եւս եւ ասրուշան։*

*Նոյն թուքի լինելէ նաեւ մեր այր (իմ) արմատը, զի ի եւ ց տառից փոխադրութիւնը յաճախադէպ եւ գրեթէ միօրինակ է, ինչպէս այլ առթիւ պիտի տեսնենք։ Որով կարի պատշաճապէս կը զուգակցին ասր եւ այր արմատները, որոց նշանակութիւնը մի եւ նոյն է։*

*Զարմանք որ Հ. Տէրվիշեան այսպիսի պարզ եւ բանաւոր մեկնութիւնը թողլով դարձեալ անյարիր ենթադրութեանց կը դիմէ ապացուցանելու թէ ասրը եկամուտ է առ մեզ առանց ո՛ եւ է առնչութեան ընդ այր ի, եւ թէ սա հայաբուն բառ մ'է, որոյ ծագումը կը փնտռէ չգիտեմ ո՛ր լեզուի* idh *արմատին մէջ։ Այլ որովհետեւ ր տառն ի տագնապի կը դնէ զինք, կը վարէ՝ կը վանէ զայն իբրեւ ոչ-արմատական տարր, այլ լոկ մասնիկ համարելով, «Որու առջեւ կրնար, կ'ըսէ, դիւրաւ ստամնականն իյնալ, ինչպէս արդեամբք համդիպած է երբեմն»։ Եւ այս ճշմարտութեան ալ անսուտ վկայ կը կոչէ ե-րէփ, ե-րէս, ե-րաւշս, նախաւոր ձեւերը, «որք աներկբայապէս բրէ-փ, սրէ-ս, բրաւշ-ս, էին ի սկզբան»։*

*Բարի յօժարութենէն աւելի բան մը պէտք է առանց մէջ ո՛ եւ է առնչութեան, կամ իւր սիրած բառով աղերսի կապ մը նշմարելու համար։*

9. *Արդ(իւնք) = ارس ars, որ կը նշանակէ ալիւր ցորենոյ՝ գարւոյ, եւն. ուր հայ. արդ արմատը, որ*

*միայնակ գործածուած չէ ուրեք , արդիւնք ձեւի տակ կը յիշեցնէ մայր գաղափարը , ընդհանրացնելով զայն եւ հողային բոլոր բերոց եւ բարեաց տարածելով ։*

*Ունինք նաեւ* արդու , *չափ ինչ ցորենոյ՝ ալիւրի , եւն . որ նոյնպէս այս արմատէն եւ իմաստէն սերեալ կ'երեւի ։*

10 . *Արճիճ* = ارزيز արզիյզ = *անագ , անդիկ ։*

11 . *Բաստեան* = پستر փիսթէր = *անկողին ։*

12 . *Գէշ* = *Թերեւս* كژ ֆէժ *եւ* كچ ֆէճ = *Թիւր ։*

13 . *Գրաւել* = كرودن կիրէվէյսէն , *որ նոյն է նշանակութեամբ ։*

*Հ. Տէրվիշեան այս բառին հնդիկ եւ զանդիկ արմատները լաւ կը գտնէ . բայց* كرفتن կիրիֆթէն *ին դէմ հանելով կը սխալի . զի այլ է* كرفتن *ին նշանակութիւնն եւ այլ՝* كرودن *ին ։*

14 . *Գրտակ* كرده կիրսէ , *հացի տեսակ մը ։*

15 . *Դահլիճ* = دهليز տէհլիյզ ։

16 . *Երանգ* = رنك րէնկ ։

17 . *Զքօս(նում)* = سپوز սիւփուզ *եւ* سپوز سيوز սիւփուժ , سپوزيدن սիւփուզիյսէնէն *որ յամել ուրեք , կասիլ , դանդաղիլ , դեգերիլ , եւն . կը նշանակէ ։ Յիրաւի զքօսնուլն ալ ուրիշ բան չէ , յընդարձակ միտս ։*

18 . *Թանկ* = تنك թէնկ = *ծանր գնու եւ հազուագիւտ ինչ ։*

19 . *Թոշակ* = توشه թուշէ = *պաշար ճանապարհի , պարէն ։*

20 . *Լախտ* = لخت լախթ ։

21 . *Լկամ* — لكام լիկէամ ։

22. Խաւար = خاور խավէr, զոր ոմանք արեւելք եւ այլք արեւմուտք կ'իմանան, եւ յայս միտս կ'ըսուի նաեւ خاوند խավէնs, خاوندی խավէնsի: Մտիցն արեւու եւ խաւարի առնչութիւնն ակներեւ է. զի մին ծնունդ կուտայ միւսոյն:

23. Խնդալ = خنده խէնտէ եւ خندان խէնտան:

24. Կապէն } Կապէնք } = کابین կէապին, նիքեահի ժամանակ առն կողմանէ կնոջ խոստացուած գին արծաթոյ առ Մահմետականս:

25. Կարագ = كره fէrէ:

26. Կենդանի = زنده զինտէ:

Հ. Տէրվիշեան դարձեալ երկար պտոյտ մը կ'ընէ, մեկնելու այս բառը: Հնդ. ջի, ջիվ, Հնդ. ջի, Հպ. ջիվ, Հպ. زیستن զիյսթէն, Հոլ. ժիզի, Լտ. vivere (?) էն կը բերէ կը կազմէ կե-ալ, կե-նդանի, կե-նցաղ:

27. Կուժ = كوزه կիուզէ:

28. Համախոհ = همخواه հէմ-խահ:

29. Համար = همار հէմար:

30. Համապատիւ = همپا հէմ-փա կամ همپایه հէմ-փայէ: Տես եւ պատիւ:

31. Համոզել = اموزیدن ամուզիյտէն եւ آموختن ամուխթէն, որք կը նշանակեն ուսանիլ եւ ուսուցանել: Եւ համոզելն ալ բնականաբար ուսուցանելով կը լինի: Ցորմէ

32. Համոզկեր = اموزکار ամուզկեար, հրահանգիչ:

33. Հանապազ, իբր համապազ = همه باز հէմէ-պազ, բաղդեալ ի բառից همه հէմէ (համայն, ամենայն) եւ باز անգամ: Որպէս կան նաեւ همه شب հէ-

մէշէպ, ամէն գիշեր եւ همروز հէմէrուզ, ամէն օր ։

Հոս դարձեալ կը զատուի մեզմէ Հ. Տէրվիշեան, որ Վեդա, սանսկրիտ, լտ. յոյն, գոթացի եւն. մէջ բե-րելով՝ sana, senex, ἡμέρα, sin-ista, sin-teino էն կը ճգնի հանել հայերէն նախ հին ը, (որպէս զի հնութեան՝ ծերութեան իմաստը չօշափէ.) յետոյ հանին, եւ ապա հանապազը որ ոչ իմաստիւ եւ ոչ ձայնիւ մերձաւորութիւն մ'ունի յիշեալ բառից հետ։

34. Համգոյն՝ իբր համագոյն = همکون հէմկիւն։

35. Համճար همجوار հէնճար, ճանապարհ արտուղի, եւս եւ գնալ ընդ կարճ եւ ընդ կտրուկ ճանապարհ։ Որով կը մեկնուի, ընդլայնմամբ իմաստի, համճարոյ հնարիմացութիւնն որ, արդարեւ, ամենէն կարճ եւ կտրուկ եղանակաւ կը տնօրինէ եւ կը վարէ, մինչ հասարակ միտքերն հետեւակ միջոցներով չատա-ցեալ կը տկարանան։

36. Համտ — յորմէ համտատեմ, համտեմ, եւն. որք իրենց համազօրն ունին իրանս هست հէսթ, هستی էսթէն, هستان հէսթան, որք կը նշանակեն ստեղծել, առնել եւս եւ ամրապնդել, նստուցանել, ագուցանել եւն։ Հ. Տէրվիշեան հոս դարձեալ հե-ռաւոր աղբիւրներու կը դիմէ եւ արարչութեան գա-ղափարէն հեռանալով ամրութեան, պնդութեան աւելի կը յարի։

Սակայն հայերէնի մէջ հաստատել ինքնին իսկ ստեղծելու՝ յօրինելու գաղափարին մօտ է, եւ յայս միտս գործածուած ալ է։

37. Հարազատ. Հ. Տէրվիշեան կը մեկնէ զայս فرزند փէrզէնտով. թէեւ հաւանականութենէ հեռի չէ, բայց սովորական կիրառութենէն քիչ մը կը հեռա-

նայ իմաստով ։ Զի հաrազաsը՝ հայերէնի մէջ աւելի եղբայր եւ նոյն հօրմէ եղած եղբայրներ կը նշանակէ, մինչդեռ אחי յաճախապէս որդի կը նշանակէ ։

Վասն որոյ ոչ նուազ բանաւոր կը թուի մեզ պարզել բառն այս ձեւով. իբր հա(յ)r-ա-զաs, այսինքն հայր-ա-ծին ։ Քանզի זאש զաs, որ ծին՝ ծնունդ կը նշանակէ, առանց այլայլութեան, ուրիշ տեղ ալ գործածուած կայ ի նոյն միտս, այսինքն պայազաs որ պարզել ըստ տարազաւ պայ-ա-զաs կամ՝ թա-հնչմամբ՝ բէկ-ա-զաs, կը ներկայացնէ ամբողջութեամբ בקש բէկ-զաsk կամ պէյ-զաsk բառը որ պայ-ազատ ընել է ։

38. Ճիշդ, ըստ իւր սովորութեան Ջրհեղեղէն դարձեալ կը սկսի Հ. Տէրվիշեան եւ, իբրեւ ի Բաբելոն, հնդիկը՝ զանդիկը եւն. ի հանդէս հանելէ յետոյ, կը գտնէ չգիտեմ որ լեզուաւ ki-kin, զոր կը դիմադրէ հայ. ճիճի, յորմէ կը հանէ ճի-ճ-եղ, «իբր ճիճ-ճիճ-եղ» կ՚ըսէ. յետոյ կ՚անցնի լատիներն, յորմէ կ՚առնու quae-s-o, quae-r-o (խնդրել), եւ հուսկ ապա կը հետեւցնէ մեր ճիշդը եւ ճշմարիտը ։

Մեր միւս պատուական բարեկամն, Տ. Յովհ. Հիւնքեարպէյէնտին ալ լտ. justusէն կը բերէ այս բառը, եւ իբրեւ յատուկ անուն Յուստոս ձեւ մ՚ալ ունինք Ս. Գրոց մէջ, կ՚ըսէ, յապացոյց ։

Տ. Հիւնք. Հօր դաւանութիւնը գիտեմք, որ մեր նախնիք լատիներէնի ալ հմտութիւն ունէին, կ՚ըսէ, եւ իւր այս կարծիքը, առ ի չգոյէ պատմական հաստատութեան, մի քանի բառից վերլուծութեան վրայ կը հիմնէ, որոց վրայ լատինական ծագում կը նշմարէ ։

Տկար ենթադրութիւն ։

Քանզի մեր նախնիք, նախ քան զՔրիստոնէութիւն, Հռովմայեցւոց հետ պարզ քաղաքական ծանօթութենէ մ'աւելի ո՛ եւ է կապ՝ առնչութիւն՝ յարաբերութիւն ունեցած չեն։ Եւ առաջի աչաց բերելով այն ժամանակի երթեւեկութեանց եւ փոխադրութեանց անհնարին դժուարութիւնը, եւ տեղեաց եւ աշխարհաց անհուն հեռաւորութիւնը, եւ բարուց եւ կրօնից ահագին խտրութիւնը, անհնար էր որ մեր հիւսիսաբնակ նախնիք Իտալիոյ ջերին կլիմային մերձենալու մղուէին։

Յետ Քրիստոնէութեան, կամ զոյգ ընդ նմին, Լուսաւորչի Հռովմ գնացած ըլլալու զրոյց մը կար որ աւանդաբար կը յիշուէր, եւ դաշանց թուղթ անուն անոճ՝ անոպայ եւ անհեթեթ գրութիւն մ'ալ իբր վաւերագիր ի հաստատութիւն կը բերուէր։ Բայց լուսահոգի Շահնազարեան բազմարդիւն վարդապետը մեծ դժուարութիւն չկրեց պատմական անհերքելի փաստիւք խախտել՝ ցրել այդ աւանդութիւնը եւ յօշ յօշ պատառել, յօդս ցնդել այդ զառանցական թուղթը։ Որով եւ այդ թիւր եւ մոլար կարծիքն ալ իսպառ բարձաւ ի միջոյ։

Գիտենք որ Թարգմանչաց խմբէն գնացողներ եղան Հռովմ. բայց ի՞նչպէս եւ ի՞նչ առթիւ, լսենք զԽորենացին։

«Նաւել յԵլլադա կամելով, յԻտալիա բռնութեամբ անկաք հողմոց, եւ ողջունեալ ի հանգիստ Սրբոյն Պետրոսի եւ Պաւղոսի, ոչ բազում ի Հռովմայեցւոցն կացեալ քաղաքի, անցանելով ընդ Ելլադա յԱտտիկէ, սակաւ ինչ մնացաք յԱթէնս։ Եւ ի կատարման ձմերայնոյն՝ դէմ եդեալ ի Բիւզանդիոն

*ելանել, փափաքելով մերոց հայրենեացն»։*

*Ուր յայտնի կը տեսնուի թէ ո՛չ թէ դիտմամբ եւ ուսումնական մասնաւոր նպատակաւ մը հանդիպած են Հռովմ, այլ պատահմամբ եւ օդոց աններողութեան պատճառաւ ակամայ հոն ինկած են, որ եւ ժամանակի կորուստ մ'էր իրենց համար, իրենք որ կը փութային ժամ յառաջ յիւրսն վերադառնալ։ Ուստի չյամելով անդ երկար՝ առաջին առթիւ եւ դիւրութեամբ յԵլլադա անցան։*

*Տեղի չկայ ուրեմն կարծելու թէ Հռովմէական լեզուի եւ հրահանգաց ո՛ եւ է պէտք եւ կարօտութիւն մը զգացած լինին մերայինք ի թարգմանել զՍ. Գիրս։ Մինչդեռ հաւանական է ենթադրել թէ, թէպէտ եւ Եօթանասնից վրայ ըրին հայ թարգմանութիւնը, Եբրայեցի բնագրին ալ մասամբ ծանօթութիւն ունեցան. գէթ զայս կ'ակնարկէ Խորենացւոյն մի այլ խօսքը որ, մթութեամբն հանդերձ, դարձեալ բաւական հաստատական է։*

*Քանզի յետ պատմելոյ յԵդեսացւոց քաղաք հասնելն, կը յաւելու. «Թեթեւակի ընդ խորս դիւանին նաւեալ՝ անցաք ի սուրբ տեղիսն երկրպագել, եւ մնալ վայրկեան ի Պաղեստինացւոց հրահանգս»։*

*Արդ, ի՞նչ էին այս հրահանգք Պաղեստինացւոց ի Ս. Երկրի, այսինքն՝ Հրէական կեդրոնի մը մէջ։ Ցոյն լեզուի մշակութեան համար բնական չէր որ ի Պաղեստին յամէին, ուր Աղեքսանդրիա, իբրեւ Նոր Աթէնք, մեծապանծ կը խրոխտար եւ համայն աշխարհի լուսաւորութեան վառարանն հանդիսացած էր, ուր եւ մերայինք կատարելագործած էին իրենց ու-*

տումն, «ի լեզու պանծալի, ի սորա յօրանալով ճեմարանին վերաքանութեան»։

Յայտնի է որ Եբրայեցի լեզուին հրահանգաց կ'ակնարկէ սաս պատմիչը։ Եւ եթէ լեզուի խոր եւ բազմանշանակ հմտութիւն ալ չենթադրուի, որոյ համար շատ ժամանակ ունեցած չեն, գէթ տեղական հանգամանաց եւ այլ պիտանի հրահանգաց գլխաւոր ծանօթութիւնքն անհրաժեշտ էին եւ մեծապէս պիտի սատարէին իրենց առաջադրած մեծ գործոյն։

Ինչ որ ալ լինի, դառնալով բուն մեր նիւթոյն, կ'ըսեմք թէ Ս. Գրոց Թարգմանութեան մէջ եւ հարուստ իսկ դարեր, յետ այնորիկ, լատին լեզուն մեր լեզուին վրայ բնաւ ո՛ր եւ է ազդեցութիւն ունեցած չէ եւ չէր ալ կրնար ունենալ։

Վասն որոյ բացէ ի բաց մերժելով այս կարծիքը, որով եւ ի Տ. Հիւնք. Հօրմէ առաջարկեալ justus բառը, մեք ամենայն վստահութեամբ եւ համարձակութեամբ կ'առաջարկեմք պարսիկ جست ճիւսթ արմատը՝ խնդրուած ճիշդ բառին համազօր։

Ցիրուսի ճիւսթը կը նշանակէ քննել՝ զննել՝ խուզել՝ (եւ հետ զհետէ աստիճանաբար լայնելով իմաստին) ստուգել՝ ի վերայ կալ՝ հասու լինել, որով եւ օրինակին եւ նախատիպին մէջ կեցած նոյնութիւնն ի վեր հանել։

Ո՞չ ապաքէն այս է նաեւ հայերէն ճիշդ՝ ճշդել բառին իմաստը։

Եթէ, արդարեւ, ուշադրութեամբ նայուի այս բառին կիրառութեանը, պիտի տեսնուի որ, ո՛ւր ուրեք որ գործածուած է, յայտնի կամ լռելեայն, միշտ քննութեան՝ զննութեան՝ հետազօտութեան

գաղափար մ՚ ընդ իւր կը բերէ եւ կը պատասխանէ գաղ. exacte բառին. Մինչդեռ ճշմարիտը բացարձակ առումամբ բանի մը դոյ կամ անդոյ, կամ անցքի ունեցած կամ չունեցած ըլլալը կը ցուցնէ եւ կը պատասխանէ vrai ին ։

Մեր միտքն աւելի որոշ եւ յստակ բացատրելու համար ըսենք միանգամայն՝ թէ ճիշդը սխալին կամ թիւրին հակառակն է. իսկ ճշմարիտը՝ սուտին ։

Մինչդեռ լատ. justusը առանց ոչ միոյն եւ ոչ միւսոյն կը պատասխանէ. այլ ուղղութեան՝ արդարութեան գաղափարը կուտայ եւ équitable ի, légitime ի կը պատասխանէ եւ, իբր այս, կը հակառակի անիրաւութեան ։

Գալով Ս. Գրոց մէջ գործածուած Յուստոս յատուկ անուան, սա ընաւ յապացոյց չի կրնար ծառայել առաջիկայ գատին ։ Առ առաւելն սա՛ կրնայ ապացուցանել՝ թէ ի հնումն Հռովմայեցւոց եւ հռովմայեցի Հրէից մէջ ալ սովորութիւն էր, որպէս զարդիս, բարուց յայտարար հասարակ անուններն իբրեւ յատուկ եւ սեփական մակդիր կամ պատուանուն գործածել եւ յորջորջել ։ Եւ Ս. Գրոց անկնարկելի համարին մէջ ուր կը կարդանք. «Եւ կացուցին երկուս զՅովսէփ՝ որում Բարսաբայն կոչէին, որ անուանեցաւն Յուստոս, եւ զՄատաթիա» (Գործ. Ա. 23), Յովսեփայ ուղղութիւնն եւ արդարութիւնը կը հռչակուի, մանաւանդ այն Յուստոս մակդիրով որ առաջի ժողովրդեանն վայելած յարգանաց՝ վստահութեան եւ համարման արտաքին յայտարար նշանն էր ։ Վասն այնորիկ բուն իւր Յովսէփ անունն ալ գրեթէ խափանելով անոր տեղ անցած էր ։

Հայ Թարգմանչաց համար դժուար չէր այս բառը հայերէն համազօր բառով մը թարգմանել, զոր օրինակ ուղիղ կամ արդար . ինչպէս բազում ուրեք կը տեսնենք թէ ըրած են, որդի Յեմենայ ըսելով փոխանակ Բենիամինի, եւն ։ Այլ մեր գերիմաստ թարգմանիչք աւելի զգուշաւոր երկիւղածութեամբ մը բուն իսկ Յուստոս լատին ձայնը եւ յօրջորջումը պահել նախընտրեր են՝ աւելի հաւատարիմ մնալու համար յոյն բնագրին որ նոյնպէս Ἰοῦστος կ'ըսէ, առանց թարգմանելու . եւ անտի եւ այսր հին եւ նոր բոլոր թարգմանիչք պահած են այս ձայնը ։

Ուստի կարծել թէ մեք միայն Յուստոս ձեւ մը ունիմք լատինին համազօր՝ սխալ է ։

Համոզում գոյացնելու չափ ճշդուեցաւ, կարծեմ, առաջարկեալ բառը ։

Իսկ ճշգրիտ եւ ճշմարիտը, ձեւոյն եւ կազմութեան նայելով, ճիշդ էն չատ հեռի չեն թէ եւ, ինչպէս Հ. Տէրվիշեան կ'ընդունի, սակայն մեք, աներկբայ վերլուծութեան մը յանգած չըլլալով՝ լաւ կը համարինք անգիտութիւն խոստովանել, քան վարկպարազի ենթադրութեանց մէջ ընկղմել ։

Յիշե՞նք արդեօք հոս դարձեալ Տ. Հիւնք. Հօր կարծիքը որ ճշգրիտին վրայ լատին եւ յունական՝ եւ ճշմարիտին վրայ ալ լատին եւ պարսկերէնի խառնուրդ մը կը տեսնէ ։ Առաջնոյն մէջ սկզբնական երկու գիրը միայն լատինական է, կ'ըսէ, իսկ մնացածը յոյն χριτής (դատաւոր .) երկրորդին մէջ ալ առաջին սկզբնատառ ճ ն միայն լատին՝ միւս մնացած շմարիտն ալ պարսիկ شمرده եւ شماریدن շիւմարիյտեն կը համարի, որոց նշանակութեանը մէջ

յունարէն ὀρθόδοξος գաղափարը կը գտնէ ։

Այս մասին յիշեալ մեծարոյ բանասէրն երկար վարդապետութիւն մ'ալ կը դնէ․ բայց, մեզ համար, հիմն արդէն խախուտ ըլլալուն՝ զանց ընենք ։

Արդ, մեկնելու այս լայն եւ արձակ կերպին մէջ, ուր սեղմիչ նկատողութեամբք նեղուելու՝ կասելու բնաւ տեղի չկայ, մի գիրը լատինէն, երկու տառը յոյնէն, վանկ մը զանդիկէն եւ մասնիկ մ'ալ սանսկրիտէն եւն․ բերելով վերլուծելու եւ մեկնելու, այլ եւս դժուարութիւն չի մնար ։

Այլ թէ ուղիղ եւ բանաւո՞ր է այս մեթոտը․— այն ուրիշ խնդիր է ։

Թողլով ուրեմն զայս, շարունակենք մեք մեր համեմատական զննութիւնը ։

39․ Մարգարիտ = مروارید միւրվարիյտ ։

40․ Ցափշտակել = آبشتن ապիշքեն ։ Հ․ Ա․ Տէրվիշեան հնդիկ ապ եւ զանդ․ աֆ արմատները կը ցուցնէ հաստանել՝ կապտել նշանակութեամբ ։ Ուստի մեր բառը բայացեալ պարսիկ آبشتن ապիշքենին լաւ կը պատասխանէ, թէ՛ ըստ ձեւոյ եւ թէ՛ ըստ նշանակութեան որ, ինչպէս վերն ապաստանի առթիւ տեսանք, թաքուցանել՝ պահել կը նշանակէ եւ, յայս միտս, ճահողապէս կը պատշաճի նաեւ մեր յափշտակելին իմաստին․ քանզի ծածկել՝ թաքուցանելու մէջ կապտել՝ կողոպտելու գաղափարն ալ կը պարունակէ ։ Պարզապէս իմաստի մերձաւորութեան խնդիր մ'է այս որ երկու ձայնից ալ միապէս ծնունդ տուած է ։

41․ Ցետկար = یادکار եատկեար, յիշատակ, յիշեցուցիչ ։ Արդարեւ յետկար որ պաշտօնական թուղթ

կամ վաւերական գիր ըսել է, կարի յարմարապէս կը պատասխանէ յիշեղիք կամ յիշեցուցիչ իմաստին, որ սովորական գործածութեանց մէջ այսպիսի վաւերական թուղթք (հուճճէթ) յառաջ կը բերուին որք զամենայն վէճ կը բառնան, յիշեցնելով եւ առաջին բերելով եղելութեան ամէն պարագաներն եւ հանգամանքը ։

42 . Նախ = نخست նուխուստ, սկիզբն՝ առաջին ։

43 . Նման = نمون նումուն, نمونك նումունէք, նումունա, որք نمونسك նումունսքն բայէն կը ծագին եւ կը նշանակեն ցուցանել, ցոյց, օրինակ, նման, հանգոյն ։

Լսենք հիմա Հ. Տէրվիշեանը .

« Ma, man չափել, ձեւել, համեմատել, հնդ . եւ զնդ . մա՛, յուն. μέτρον չափ, μῖμος նմանող, μιμώ կապիկ, լատ. mê-tior չափել, հայ. ման, որմէ ն նախդրիւ՝ (?) ն-ման, ապէ նմանել . դարձեալ մա-ան եւ ամի-ս ու սահմանաւոր (?), եւ մաս » ։

Այս մա արմատէն կը բերէ նաեւ իմանալ, իմացայ, իմաստ, միտք ։

Եւս եւ մնալ, մնացորդ, մնացուած, մանել, մանուած, մանեակ, վերջապէս ուր ուրեք որ մա-ն կամ մին հոս եւ նշմարանք կայ ։

44 . Նշխար = نشخار նիշխար, نشخوار նիշխար եւ نشخور նիշխուր = 1 . որոճալ, 2 . մնացորդ՝ մաս՝ կտոր՝ հատուած, եւն ։ Այս երկրորդ առմամբ կը գործածուի մեր մէջ ։

45 . Շահասպրամ = شاه اسپرم շահ իսփէրմ, տեսակ մը ռեհան որ կ'ըսուի նաեւ شاهسفرم շահիսփէրմ եւն ։

45. Շայեկան = شایکان շայկեաՆ, բազում՝ առատ, եւ առ մեզ չահաւոր՝ օգտակար՝ պտղաբեր՝ արդիւնաւոր, եւ յայս միտս՝ փոքր ինչ տարածութեամբ իմաստի, առատ՝ գեղումն՝ լի։ «Բանզի երկիր՝ որ ըմպիցէ զանձրեւ բազում անգամ եկեալ ի վերայ նորա, եւ ծնանիցի արդիւնս շայեկանս նոցա վասն որոց գործեցին...։ Եբր. Զ. 7. ուր առատութեան գաղափարն ակներեւ է։

47. Շապիկ = شپی շէպի, ագանելիք գիշերոյ կամ որ եւ է ծածկոյթ։ Եթէ այս ձեւը ծանօթ լինէր Հ. Տէրվիշեանի, փոխանակ վարանելու՝ պիտի վճռէր տիրապէս, քանի որ այնքան մօտ գնացած էր։

48. Շտապ = شتاب շիթապ։

49. Պայազատ = بكزاد պkյqաs կամ بكزاده պkյ-qusk (*)։

50. Պարիշտ = پرشت փkrkup։ Մեր մէջ այս արմատը բարդութեանց եւ ածանցմանց մէջ միայն գործածուած է, զոր օրինակ կռա-պարիշs, ամպարիշs։ Այս արմատէն սեղմեալ եւ ամփոփեալ ձեւ մ'ալ ունիմք պաշs, յորմէ պաշsօն, եւն. եւն։

51. Պատասխանի = پاسخ փաuիւխ։ Այս երկու ձեւերն, որ ի սկզբան անդ իրարմէ բաւական հեռի կը թուին, միմեանց հետ բնական կերպիւ կապելու համար դիտելի է որ پاسخ պարսիկ բառը բարդեալ է ի پا (փա=ոտք) որ پای (փայ) ի կրճատեալն է, եւ ի سخ (սիւխ=խօսք) արմատէն որ سخن (սիւխէՆ) ի կրճատեալն է։ Որով پاسخ իբր پای سخن կը նշանակէ, բառական իմաստով խօսքին ոտքը։ Եւ որովհետեւ պատասխանը միշտ այն խօսքն է որ իրմէ առաջ

(*) Վ. Արմաշը աւելի Թուրք լինել կը Թուի։

*անցած խօսքը կ'ենթադրէ, այն է հարցումն մը որուն կը հետեւի, ըստ իմիք կ'արդարանայ վերի ըմբռնումը, իբրեւ ոտք եւ հետեւորդ գլխաւոր խօսքին ։*

*Իսկ թէ ինչո՞ւ փայսիւխէն կամ, ձայնաւորաց միրձաւոր հնչմամբ, փայսախէն՝ կը լինի առ մեզ պաsասխան եւ ոչ գոնէ պայսախան որ աւելի ողջ կը պահէր հնչումը . դիտել կուտամք որ و ով ներբացեալ բառերն առ հասարակ ﺩ (տ) ով պահուած են մեր մէջ, զորօրինակ پيكر փէյքէր = պատկեր . پيوند փէյվէնտ = պատուանդ, پيوست փէյվէսթ = պատուաստ ։ Այս սովորութիւնը այնչափ յաճախադէպ է որ կրնայ մինչեւ իսկ կանոնի տեղ ընդունուիլ ։*

*Ապացոյց որ ի հնումն պարսից մէջ ալ թաւացեալ s հնչումը կար, ունիմք ماية մայէ բառն որ թէ այս ձեւով եւ թէ ماسه մասէ հնչմամբ կայ եւ կը համապատասխանէ մեր մաsակին ։*

*Սակայն երբեմն ալ, դուն ուրեք, պահուած կը տեսնեմք و գիրը հայերէնի մէջ, որպէս . پيكار փէյքեար = պայքար ։ Երբեմն ալ վերջին ٥ (հէ) գիրը փոխուած կը տեսնեմք ի s, զոր օրինակ نكاه նիկեահ = նկատ եւն ։*

*Ուստի սոյն օրինօք եղած է փայսախէն առ մեզ պաsասխան ։*

52 . *Պատիւ = پاي փայէ ։ Վերի բացատրութիւնը հարկ չի թողուր կրկնելու որ հոս ալ ﻪ եւ s գրոց փոխադրութիւն կայ ։*

53 . *Պատշաճել = پايستن պայիսթէն, պարտ անկ եւ պիտոյ լինել . — դարձեալ նոյն փոխադրութիւն ։*

54. *Պատուհան* = بادخان *պադխան* ։

55. *Պատուհաս* = پاداش *փադաշ* կամ پاداشت *փադաշթ*, *բարի×հատուցումն կամ հատուցումն բարեաց, իսկ առ մեզ հակառակ իմաստով հատուցումն չարի ։ Աստ կը մերձեցնեմք նաեւ պադիժը որ փադաշին մի այլ ձեւն է, եւ յարմարապէս կը զուգորդի պատուհասին ։*

56. *Պատրաստել* = پیراستن *փիյրասթէն*, *յարդարել՝ հանդերձել՝ կազմել՝ պատրաստել ։ Այս ալ վերի օրինաց կը հետեւի ։*

57. *Ռոճիկ* = روزه *ռուզէ*, *օրական թոշակ* ։

58. *Սկահ, ծագեալ ի Սկիհ* سکی *(սիկի)է, որ յիշատակեալ է յայլոց եւ կը նշանակէ նոյնպէս գաւաթ՝ բաժակ ։*

*Անկէ կ'երեւի նաեւ սկաւառակ, ուր ւ ը թաւանալով կը նոյնանայ գրեթէ հ ի հետ ։*

59. *Սկեսուր* = خسر *խիւառ (աներ)*, خسور *խիւառւր (սկեսրայր) եւ* خسوره *խիւառւրէ (զոքանչ) ։ Առ մեզ այս նուրբ զանազանութիւնը կորսուած կամ բնաւ առնուած չէ, եւ լոկ մի առումն եւ եթ պահուած է։*

*Բառին այս լրին մերկութեան եւ պարզութեան առջեւ, այլ եւս հեռաւոր աշխարհներ երթալով* sva-sar, sru-sa, su-na-sa, sva-su-ra, sva-çva, *եւն. մինչեւ իսկ յոյնէն* κύριος *փնտռելու տեղի չկայ, կարծեմ ։*

60. *Սպայ* = سپاه *սիփահ որ եւ* سپه *սիփէհ եւ* اسپاه *իսփահ որք կը նշանակեն զօրք՝ զօրական՝ սպայ ։ Յորմէ սպասալար* = سپهسالار *սիփէհսալար, եւ սպարապետ կամ սպայապետ* = سپهابد *սիփէհապէդ կամ* سپهبد *սիփէհպէդ ։*

61. Սպանդարամետ = سپندارمد սիփէնտարմիւտ եւ اسفندارمذ իսֆէնտարմիւտ, որ բազում այլ իրաց հետ կը նշանակէ նաեւ դիվ, երկիր, իբր գէք բարեկենդանութեան գործածուած է առ մեզ։

62. Սպառ = سپری սիփէրի, կատարած՝ վախճան՝ լրումն։ Յորմէ ի սպառ։

63. Սպար եւ ասպար = سپر սիփէր, վահան, մկունդ։

64. Ստէպ = شتاب շիթապ որ նոյն է ընդ շտապի, որոյ եղանակաւորեալ մի ձեւն է։ Զի հաւասարապէս կ'ըսուի չտապաւ եւ ստիպաւ։

65. Ստուար = استوار իւսթիւվար։ Հոս Հ. Տէրվիչեանը հասկնալ կարելի չէ. ուստի չպիտի փորձենք ի մէջ բերել։

66. Վանդակ վանէդ արմատէն, որ է بند պէնտ, կապ՝ արգելան։

67. Վարժ = ورز վէրզ, ի բայէդ ورزيدن վէրզիյտէն, որ կը նշանակէ ուսանել՝ ուսուցանել՝ սովորել, եւն։ Ասոր մի այլ ձեւն մարզել, մարզպան, մարզիչ։ Ասոր մօտ ձայնէ մը ورد վիրտ (աշակերտ) բառէն կուգայ նաեւ մեր վարդապետը, իբրեւ պետն աշակերտաց, ուսուցիչ նոցա եւ մարզիչ եւ հրահանգիչ։

Հ. Տէրվիշեան ալ որոյ հետ բաւական խօսած էինք սոյն նիւթին վրայ, թէ եւ քիչ մը ճապաղ՝ այլ գոհացուցիչ կերպիւ կը մեկնէ այս բառերը։

Իսկ Տ. Հիւնք. Հայր դարձեալ լատինին կը դիմէ եւ veritas (ճշմարտութիւն)էն կը բռնազբօսէ բերել վարդապետը։

Ասոր հերքումն իւր մէջ ըլլալով երկարելու տեղի չկայ։

68 . *Վարունգ* = وارڭ *վարէնկ* ։

69 . *Վաւեր* = باور *պավէր* , *հաւատ* , *ի բայէն* باوريدن *պավէրիյէնն* , *հաւատալ* ։ *Որով վաւերական*, *վաւերացնել* , *եւն*. *կը նշանակեն հաւատալի* , *հաւատարիմ եւ հաւատարիմ առնել կամ գործել* , *հաւատարմացնել* , *եւն* ։ *Այս է նաեւ ստոյգ իմաստն վաւեր եւ այլ բառից առ մեզ* ։

70 . *Տաճար* = *Թերեւս* چكر *թէճէր*, *որ ձմեռնատուն ըսել է* ։ *Բառի մը իւր նախնական նշանակութենէն ելլելով տարբեր եւ անոր մօտ բաներու այլ տարածուիլը հազուադէպ չէ* ։ —

*Հոս կնքելով մեր այս փոքր հաւաքածոյն եւ որ եւ իցէ աշխատութիւնը , հարկ կը համարինք , այս առթիւ , հրաւէր կարդալ ազգային բանասիրաց որ եթէ ունին այս եւ այլ ծանօթ ցանկերէ դուրս բառեր , կամ եթէ պատահին յետ այսորիկ , թող հաճին ի հրատարակութիւն տալ հետ զհետէ , որպէս զի ըստ կարի ամբողջութիւն մը կազմէ եւ լրանայ գրական այս մասը* ։



## ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ

Թանձր ու խաւարչտին գիշեր մ՚է․ աղջամղջին հաստ ամպեր կը ծածկեն երկնից պայծառ երեսը, նման սգոյ անթափանց քրէփին որ գեղեցիկ կնոջ մ՚անուշակ դէմքը կը քողարկէ։ Թաց տղմուտ սալայատակին վրայ փողոցին կանթեղները դժգոյն լոյս մը կը հեղուն․ տանիքներէն կաթկթող ջուրի կայլակները մեռելոց զանգակին զանգիւններուն ազդեցութիւնը կ՚ընեն վրաս, եւ անզուսպ փափաք մը կը զգաս ապտակելու այն անցորդն որ, անտարբեր սրտիդ ցաւին, անտարբեր այն գիշերուան անհուն տխրութեան, կ՚անցնի թեթեւոտն՝ ծիծաղկոտ խօսակցելով իր ընկերոջ հետ։

Հասած ես այն տարիքին յորում մարդ իր առաջին ցնորքներէն հմայաթափ կ՚ըլլայ, եւ իր պատանեկութեան երազներն, այն ոսկի երազներն զոր յուսոյ երփներանգ թեւերուն մէջ օրօրած, իր սըրտին ամենէն փափուկ, ամենէն զգայուն մասովը սնուցած ու աչաց ամենէն քաղցր արցունքովը ոռոգած է, այն գեղափայլ յոյսերը բաղդին մէկ անգութ հարուածով կը ցնդին կ՚անհետանան, եւ սիրտը կը մնայ թափուր՝ կ՚արծես դադրելով բաբախելէ, դադրելով զգալէ։ Եւ անսահման տրտմութեան մը մատնուած՝ կը քալես մութ գիշերին մէջ, սահելով թաց սալայատակին վրայ, գրեթէ թմրած՝ անզգայ չուրջըդ անցած դարձածին, դիտելով մութ երկինքն, ուր ոչ մէկ լուսոյ աստղ չ՚երեւիր, ոչ մէկ սիրական

դէմք չի ժպտիր, ոչ մէկ բարեկամ ձեռք քեզ չի կարկառիր ։ Աչերդ միայն դատարկութիւն կը տեսնեն, եւ հառաչներդ մեռնելով կոկորդիդ մէջ կը խեղդեն զքեզ· եւ կ'անիծես զայն որ առաջին անգամ ճանչցուց քեզ ցաւը, ցաւն անագորոյն որ իւր ոսկրուտ թեւերով զքեզ կը սեղմէ ու սրտիդ վէրքը կ'արիւնէ, կ'անիծես օրն յորում ծնար, եւ մոլար քայլերով կը յառաջանաս մութին մէջ . . . ցանկալով մեռնիլ գերեզմանին խաւարին մէջ առ յաւէտ թաղելու համար վիշտդ . . . ։

Այլ յանկարծ . . . գիշերուան ծոցին մէջ նուաղող աւաչի մը նման մեղմիկ մրմունջ մը կը վրդովէ չուրջդ տիրող չարագուշակ լռութիւնը . անոյշ նուագ մը հեշտօրօր տակաւ կուգայ ունկդ գգուել եւ անզգալաբար զքեզ դէպ յինքը կը քարշէ ։ Երազի մէջ քալողի մը նման յառաջանալով դէպ յերանաւէտ բնակարանն ուրկից կը լսուի երաժշտութիւնն, ինքզինքդ կը գտնես բարեկամի մը տանն առջեւ, ուր մտերմական երեկոյթ կայ . դողդոջ ծունկերդ ակամայ զքեզ կը տանին սանդուխն ի վեր, եւ կը հասնիս շողշողուն սրահն որ կարծես պարիկներու բնակավայրն է . այնքան լոյս, այնքան բոյր, այնքան շնորհ կայ հոն . գեղեցիկ կանայք զարդարուն՝ փայլուն, դիցուհւոյ արձաններու նման անխօս, շարուած են թաւշապատ աթոռներու մէջ, եւ արք սեւազգեաց մեռելակիրներու նման լուռ ու տխուր կեցած են յոտին . այլ դու անուշադիր այդ ամենուն՝ անձկակարօտ աչօք կը դիտես մի միայն այն դժգոյն աղջիկն որ, գանգուր վարսերը ուսերն ի վար, սեւ հիանալի աչերն երկնային խանդով հրավառ,

սպիտակ մատանցը ներքեւ կը դողացնէ վիթխարի դաշնակ մը։

Ի՜նչ անբացատրելի զգացումներ կ'արտայայտէ իւր եղանակը. նախ՝ մաքուր է եւ ջինջ, անհուն տխրութեամբ մը համակուած, նման այն մելամաղձոտ հեծծիւնին զոր մարդ մութին մէջ գերեզմանոցէն անցած պահուն նոճիներուն մէջէն կը լսէ, եւ ուր իւր վաղամեռիկ բարեկամաց հոգիներու տըրտունջն ըլլալ կը կարծէ։ Յետոյ անզգալաբար մեղմիկ նուագը տեղի կուտայ ահարկու եւ հնչուն խազերու. փոթորիկը կը սկսի, մութ անտառներու մէջ հովը կը սուրայ, երկինք որոտընդոստ կը գոռայ, սոսկումը կը տիրէ. մարդկային կրքերու ահռելի պայքարն է այն, կարծես սատանան է որ կ'անցնի, դժոխային ժխորով, ամէն տեղ սարսափ սփռելով... քրտանց խոշոր կայլակներ կը սկսին հոսիլ ճակտէդ ի վար, եւ սիրտդ կը սեղմուի...։ Այլ իսկոյն մրրիկը կը խաղաղի, հանդարտ շունչ կ'առնես, բուռն հովին տեղ անոյշ զեփիւռը կը թեւածէ, նորածիլ տերեւոց մէջ իւր սիրոյն վրայ ողբացող սոխակի երգին նման մեղմիկ եւ մխիթարիչ հրեշտակի մը բարբառին պէս քնքոյշ նուագներ կուգան հոգիդ գգուել, ու երեւակայութիւնդ կը սաւառնի ներդաշնակութեան անհուն ովկէանին վրայէն մեղմօրօր դէպ յերանաւէտ վայրեր զոր դեռ մահկանացուաց ոտքը չէ պղծած, եւ հոն կը ստեղծէ քեզ աշխարհ մը լուսածածան, ուր ոչ ատելութիւն կայ, ոչ քէն. այլ համայն լոյս եւ յոյս, ուր երկինքը պայծառ է յաւէտ, ուր օդը ջինջ է, եւ ուր մշտալար ոսկի քնարներու արձագանգը կ'երթայ միանալ ար-

ծաթի վտակին հեզիկ մրմունջին, եւ կը թուխս ապրիլ հոն՝ շրջապատեալ անոյշ ու հրեշտակային արարածներէ, որոց աչաց մէջ երկնային բարութեան մը ցոլացմունքը կը շողայ, որք համայն գորով են, համայն խանդաղատանք, որոց տեսքն իսկ բաւ է ամէն թախիծ ճակտէդ վանելու... եւ արցունք կ'ողողեն այտերդ։

Եղանակը նուաղած է դաշնամուրին փղոսկրեայ մատերուն վրայ, որք կարծես տակաւին կը թրթռան սեւահեր աղջկան փափկիկ ձեռաց ներքեւ. եւ դու քու սքանչացմանդ մէջ կարծելով տակաւին լսել այն մարգարտաշար խազերու արձագանգը՝ սիրտդ զեղուն դուրս կը սլանաս սրահէն, ուր հասարակ շնորհաւորութիւնք կը տեղան արուեստագէտ օրիորդին գլխուն։

Անձրեւի կաթիլներն ոչ եւս տխրահնչուն կը կաթկթին տանիքներն ի վար, ոչ եւս խաւարին է սալայատակը տղմուտ, ուր լուսնոյ շողերն արծաթափայլ կը ներկեն ջրալից ակօսները. աղջամղջին հաստ ամպերը փարատած են, եւ մաքուր անբիծ երկինք մ'աստեղազարդ կը հակի գլխուդ վերեւ. հոգւոյդ վիշտն եւս փարատած է. յուսոյ նշոյլներ սկսած են տակաւ լուսաւորել միտքդ. ցնորք խօլ թիթեռնիկներու նման կը թեւածին շուրջդ, ու աչերդ իւրաքանչիւր աստղի մէջ կը կարծեն տեսնել բարեկամ դէմք մը՝ որ քաջալերական անոյշ ժպիտ մը կ'ուղղէ քեզ, եւ կենաց մթին ուղւոյն մէջ կ'առաջնորդէ քայլերդ տակաւին անհաստատ։ Փափաք մը կը զգաս ձեռքը սեղմելու այն անտարբեր անցորդին որ՝ հոգւոյդ վիճակին անտեղեակ՝ թեթեւոտն կ'անցնի

*քովէդ խօսակցելով․ սփոփանաց հառաչը կուրծքդ կ'ուռեցնէ, եւ կ'օրհնես այն աղջիկն որ ցաւդ ամոքեց ու կարծրացեալ սրտէդ նորածիլ վիշտդ վանեց, եւ ժպտագին կ'ընթանաս սահելով սալայատակին վրայէն, զոհ ապրելուդ, տրամադիր օրհնելու օրն յորում ծնար։*

Զապէլ Ասատուր



## ԿՆՈՋ ՍԻՐՏԸ



Անիրաւաբար ըսուած է թէ կնոջ սիրտը փափուկ է։ Այո՛, դիւրազգած է կնոջ սիրտը, շուտով կը կարեկցի, դիւրաւ կը վշտանայ. այլ կարծուածին չափ փափուկ չէ։ Կեանքի ամէն պարագաներուն մէջ, երբ սիրտը դեր մ'ունի կատարելիք, հո՛ն է կինը։ Երբ թշուառութիւն մը կայ սփոփելու, հո՛ն կ'երեւնայ, եւ շատ անգամ հրաշքներ կը գործէ իր քաղցր եւ սփոփիչ խրատներով։ Եթէ վշտակիր մը կայ մխիթարուելու, հո՛ն ալ կը տեսնես զինքը, ուր կ'ամոքէ ցաւերը իր կենարար սպեղանիով. սրտին բոլոր սփոփիչ գանձերը կը թափէ, եւ կը յաջողի մեղմացնել վշտացեալ սիրտը։ Կինն իր կրած ցաւերուն ալ կը դիմադրէ. սրտի ամէն պայքարներուն մէջ յաղթող կը հանդիսանայ միշտ. եւ եթէ երբեմն կքի, երբեք չի կոտրիր. առակի եղեգին պէս։ Երբ թշուառութեան մէջ գտնուի, սրտապինդ եւ անվհատ կը մարտնչի անողոք ճակատագրին դէմ. ի՛նչ որ այր մարդը պիտի վհատեցնէր ու կասեցնէր, կինն աննկուն կը մնայ անոր մէջ։ Եթէ վիշտ մը ունի, այդ վիշտին որքան ալ բուռն ըլլայ, գիտէ դիմադրել անոր. չ'ընկճիր բնաւ վշտի բեռին տակ։ Ո՛ւր որ այր մարդը յուսահատ կ'ողբայ, կինն յուսալից կը ժպտի։

Ինչէ՞ն է այս ոյժը կնոջ սրտին մէջ. ինք որ մարմնով տկար արարած մ'է, ի՞նչպէս կ'ըլլայ սիրտն այնքան զօրաւոր։—

Չի հաւա՛տք ունի։ Եւ այս հաւատքն է որ, Սանդուխտէն մինչեւ Կատարինէ, ո՜րքան վսեմ արարքներ գործել տուած է հայ կիներուն իսկ։ Ուստի մաղթենք՝ որ հայ կինը միշտ հաւատքով միայ։

## ԸՆԹԵՐՑՈՒՄԸ ՄԵՐ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐՈՒ ՄԷՋ

Մեր վարժարաններու մէջ հասարակ ընթերցումի շատ կարեւորութիւն չի տրուիր ընդհանրապէս. եւ այդ պատճառաւ՝ հոգ չի տարուիր որ տղայ մը իր ընթերցանութեան առաջին տարիներուն մէջ կարենայ, անսխալ կարդալէն զատ, պէտք եղածին պէս կարդալ, այսինքն գիրքը մտիկ ընողին հասկնալի ընէ իր ընթերցումը։

Վարժարաններու մէջ՝ առ հասարակ՝ կը բաւականան աշակերտին անսխալ ընթերցում սորվեցնելով. ա՛լ նկատողութեան չեն առներ թէ անոր կարդացածը հասկնալի կ՚ըլլա՞յ թէ ոչ. կիտադրութեան ուշադրութիւն կ՚ընէ՞, շեշտերը պատշաճօրէն կը գործածէ՞. մինչեւ անգամ, եթէ կարդացած առենը եղանակ մը դնէ, անոր ալ անփոյթ կը գտնուին շատ անգամ ուսուցիչները։ Ասկէ առաջ եկած է որ մեր վարժարաններէն՝ այսինքն Կ. Պոլսոյ հայ վարժարաններէն ելլող շատ մը աշակերտներ, մանչ կամ աղջիկ, յոռի ընթերցում մը ունին։ Անոնց ո՛չ հնչումը ուղիղ է եւ ո՛չ կէտերուն եւ շեշտերուն ուշադրութիւն կ՚ընեն. իսկ ձայնի ելեւէջ բնա՛ւ չկայ

Պաշտօնական կերպ մը, արուեստակեալ ձայն մը կ'առնեն աշակերտները, երբ գիրքը ձեռք առնեն կարդալու համար։ Եւ այս ամէնը՝ գիտէ՞ք ինչու. վասն զի առաջին տարիներուն մէջ տղան սխալ ըմբռնած է ընթերցումի կանոնները. չէ գտնուեր մէկը որ իրեն ճանչցնէ իր սխալները։ Մէկ խօսքով՝ կարեւորութիւն չէ տրուեր վարժարանի փոքրագոյն կարգին։

Եւրոպական ազգերու մէջ մասնաւոր գիրքեր կան որոնք կը սորվեցնեն՝ թէ ի՛նչպէս կարդալ պէտք է։ Մեր մէջ կը պակսին այդ տեսակ գիրքեր. — եւ դեռ շատ տեսակներ՝ նոյնքան կարեւոր. — ուրեմն մի միայն ուսուցիչներուն պարտքն է սորվեցնել տըղուն՝ իր առաջին քայլերն ուղիղ առնել։

Կը յիշեմ որ, անկէ քառորդ դար առաջ, հայ աղջիկներու վարժարանի մը մէջ, որու խնամակալութիւնը թաղին տիկիններէն կը բաղկանար, այբուբենի դասը բարձրագոյն կարգի աշակերտներուն հայկաբան դասատուին յանձնուեցաւ։ Արդեօք ամէն դպրոցի խնամակալութիւն իգական սեռէ՞ն պէտք է բաղկացած ըլլայ, որպէս զի հոգ տարուի ապագայ սերունդին դաստիարակութեան տարրական ընթացքին։

Գալով արտասանութեան դասին, ինչ որ կ'աւանդուի մեր վարժարաններու մէջ, ուրիշ բան չէ, այլ լոկ բերանացի սորված շատ մը բառեր, որոնք աշակերտներուն գլխին մէջ զետեղուած են։ Եւ այս ալ իր արուեստակեալ կերպն ունենալէ զուրկ չէ։ Աշակերտը երբ ոտքի կ'ելլէ գոց սորված ոտանաւոր մը արտասանելու համար, մտիկ ընողը՝ քեր-

*Թուածին մի միայն յանգերն եւ տողերուն քանի վանկէ բաղկացած ըլլալը կրնայ ըմբռնել . իսկ իմաստը՝ բնա՛ւ ։*

*Ոտանաւոր գրուածք մը արտասանելու համար ընդհանուր կերպ մը ունին . արտասանող աշակերտը իւրաքանչիւր տողէն վերջը անպատճառ շունչ մը կ'առնէ . առաջին տողին ծայրը՝ ստորակէտի քով կենալու չափ կը կենայ , իսկ երկրորդ տողին ծայրը վերջակէտի մը քով կենալու չափ . եւ ա՛յս՝ քերթուածին առաջին տողէն մինչեւ վերջը այսպէս կը շարունակուի . իւրաքանչիւր տողին մէջտեղէն ալ՝ կէս շունչ մը կ'առնէ արտասանողը ։*



## ՍՓՈՓԱՆՔ ԳԻՏՈՒԹԵԱՆ



*Երանի՜ գիտունին ։*

*Պատանի է դեռ, այլ վաղ իսկ անուշադիր իւր չուրջբոլորը պատող ունայն հրճուանաց հրաւէրներուն, ուրիշներէ աւելի հրճուանք կը զգայ, երբ կուգան հետզհետէ պարզիլ իւր առաջ համայն արարչութիւնը վարող անխախտելի օրէնքներն ։*

*Նման անփորձ ճանապարհորդին որու ամեն քայլ մի նորութիւն է, որու ամեն հայեացք տենչանք կը բերէ մօտենալ տեսնուած առարկային եւ չըգոհանար երբէք մինչեւ չ'ընտելանայ անոր հետ, ուսանողն գոհունակութեան մի չունչ կ'առնու ամեն անգամ որ կը զգայ իւր միտքը պարարտիլ ։*

*Կ'ուսանի անդադար, եւ անդադար իւր ուսանելու ախորժն անյագելի կը լինի ։ Ժամանակին արտադրած եւ համբարած հմտութեանց պաշարն է որ կը վայելէ ։*

*Ժառանգն է նա ժառանգութեանց պատուականագունին՝ զոր սերունդներն դարէ ի դար, ուղեղէ ուղեղ կ'աւանդեն իրարու ։*

*Աչքի առաջն ունի այն հոյակապ անձանց օրինակն, որք ուժգին եւ յանկարծական մի մղում տուած են մարդոց վիճակը դէպ ի բարելաւութիւն տանելու համար. զի դա՛ է ճշգրիտ գիտութեան արդիւնքն եւ ճշմարիտ գիտունին նպատակը ։*

*Եւ կ'իմանայ որ իւր անձն օր քան զօր կը բար-*

ձրանայ սովորական մարդոց մակերեւոյթէն վեր, եւ սիրտն արդէն յուսով եւ ցնծութեամբ լեցուն է։

Երանի՜ գիտունին։

Չափահաս է այժմ եւ մշտական գործաւոր մի շէնքի՝ որու հիմերն իսկ հազիւ թէ նախագծուած են։

Չը տեսներ թէ ի՜նչ տքնութիւնք եւ յուսախաբութիւնք կ'սպասեն իւր ճամբուն վրայ, եւ կը քալէ միշտ։

Կը բերկրի հոգին ամեն անգամ որ խելամուտ կը լինի տարերաց պէսպէս յատկութիւններուն եւ կը լուծէ աստիճանաբար տիեզերային հանելուկներն, որք միմեանց կցորդ՝ անընդհատ մի շղթայ կը կազմեն։ Գիտէ թէ բնութեան մէջ ծածկեալ ույժեր կան, զորս մարդ չ'է կարողացած տեսնել տակաւին, եւ թէ հանճարն յերեւան պիտի բերէ մի օր։

Չըկայ իրեն համար գիտութեան մէջ մի մանրամասնութիւն որ արհամարհելի լինի։ Չըկայ պարզ մի օրէնք նիւթերու սեպհական՝ որ աւելի բազմայօդ օրէնքներու լուծման չ'առաջնորդէ։ Եւ այսպէս ծանօթէն դէպ ի անծանօթը յառաջանալով՝ կը յանգի կենաց օրէնքներուն լուծման։

Եւ գիտութեան ամեն յաղթանակը կը գործածէ մարդկային կեանքն աւելի հեշտ եւ երկարատեւ ընելու։

Երանի՜ գիտունին։

Նա տարածութիւններն կը սեղմէ, մարդկութիւնն ի մի խուրձ կ'ամփոփէ, շահերն կը հաւասարէ, հա մապարտ ընելով ամենքը։

Նա կ'ընէ հողն աւելի արգաւանդ եւ նորա արտադրութիւններն ամենուն մատչելի։

Նա՛ կ'որոնէ եւ կը գտնէ մեր մէջը ապաստա-նուած, մեր շուրջը պատած անդր քան զԹիւ Թըշ-նամեաց լէգէոնները, որք ամենափոքր եւ անտե-սանելի՝ առաւել քան զայլս նեխիչ եւ քանդող են։ Եւ կը սպառազինի անոնց դէմ եւ կը յաջողի խլել միլիոնաւոր կեանքեր տարաժամ քայքայումէ։

Եւ կը Թուէ գիւտերու հետզհետէ յառաջ բերած բարիքներն, Թշուառ եւ կարեկցութեան արժանի արարածներուս նկատմամբ։ Եւ ի՞նչ անխառն սփո-փանք իրեն, երբ կ'որոշէ իւր բաժինն այդ բարե-գործ վաստակոց մէջ։

Երանի՜ գիտունին։

Կենաց առօրեայ եւ միօրինակ տաղտկութիւններն չ'են կարող երբէք վհատութիւն բերել իւր հոգւոյն։ Երեմն հազիւ Թէ կը ժպտի, երբ կը սփռեն իւր ա-ռաջ այն հասարակ ցոյցերն որք սնապարծներն եւ եԹ կը փառաւորեն։ Հատուցում չը մուրար։

Իւր վարձքն ընդհանուրին յարգանքն է եւ երբեմն իսկ ապագային երախտագիտութիւնը։

Եւ վերջի ժամուն, երբ մեծ ճամբորդութեան ազդը կը տրուի իրեն, մի վիշտ միայն կը զգայ որ չըպիտի տեսնէ իւր յաւէտ երազած մարդկային երջանկու-թիւնը։ Բայց ինքն իւր պարտքը հատուցած կը մեկնի։

Եւ գոհ է յոյժ իւր կեանքէն։

Երանի՜ գիտունին։

## ԱՌ ՆԱՒԱԶՆ ԵՐՋԱՆԻԿ



Հանգիր այդպէս, իմ քա՛ջ նաւազ, քաղցրաքուն.
Ննջէ յանդորր ընդ հովանեաւ նաւակիդ.
Քանի՜ հեշտ է կապոյտ յերկնից անթաքուն
Ընկողմանիլ ծովուն ալեաց մօտ վըճիտ:
Դու զօրն ի բուն կը պատառես անխընայ
Կոհակս անթիւ, կուրծ տաս հողմոց վըտանգին.
Կտրես անդունդս, ընդ որ սրաթեւ նաւդ գընայ,
Դիւցա՛զըն ջուրց, յոչինչ գրելով կեանքդ անգին:
Դու սրտահեշտ առնուս քրտանց քոց ի պսակ
Ձկներ պէսպէս. ծով մեծ պարզէ քեզ երկիր,
Երկինք՝ պայծառ աստեղց հոյլեր, ջինջ լուսնակ.
Փոյթ չէ թէ մերթ գոչեն տարերք քեզ՝ Երկի՛ր,
Կռուիս, պարզես նաւուդ թեւեր կարապի,
Երգեն չըթունքդ ընդդէմ ամպոց որ գոռան.
Դու ծիծաղիս, մինչ նաւդ հողմէն տառապի,
Անփոյթ թէ ծով կուլ տայ շատեր քեզ նըման:
Այլ երբ դադրի մրրիկ հողմոց գլխապտար,
Ու՚երկնի երեսք վառ շողերով յարդարին,
Դու մոռանաս անցեալ ամէն պատահար
Եւ գոհութեան յըղես մըմունջս Արդարին:
Իսկ թէ հանդարտ է ծով եւ օդ խաղաղիկ,
Արեւ անամպ քեզ աւետէ երկին զուարթ,
Ոգի՛դ ալեաց, յայնժամ լինիս երանիկ՝
Քաղեալ առատ արշալուսոյ քըքում, վարդ:
Նաւակդ ո՛րչափ սիրեմ փոքրիկ եւ ի գոյն

Սպիտակ, թեթեւ եւ տարահոծ ի նաւել.
Զի յարաժամ ցանկայ սերտիւ սիրտ հիքոյն
Ելնել ի ծով, խոյս տալ յաղմկաց առաւել։
Բի՜ւր երանի քեզ, ո՛ նաւակ դեռատի,
Երբ կը թռչիս ընդ կոհս ալեաց ջուրց հսկայ.
Դու ի ծովու գտնես ըղձարծ աղքատի,
Յանչու՜նչ տարերց. առնուս պարգեւ մշտակայ։
Ի տղայ տիոց սիրել ըղձնաւ միշտ ուսար,
Քեզ ցանկալի եղեւ ծովու կեանքն ազատ.
Զիք լաւագոյն ինչ ասպարէզ, մի՛ յուսար
Գտնել այլ բախտ, ալեաց զաւակդ հարազատ։
Առ ի՞նչ, աղէ, սիրել տըխուր զայս ցամաք.
Զի՞նչ փոյթ թէ մերթ ծովն ամբոխեալ խռժոռի,
Երբ ցանկ պատեն աղէտք զերկիր մեր համակ,
Ուր բարք մարդոյ են միշտ անարգ եւ յոռի։
Հանգիր այժմիկ, արի՛ նաւակ, յանոյշ քուն.
Ննջէ խաղաղ աստ առընթեր նաւակիդ.
Քանի՜ քաղցր է ի ջինջ երկնից անթաքուն
Ընկողմանիլ ծովուն ալեաց մօտ վըճիտ։
Եւ երազէ՜ անհունութիւն, փոթորիկ,
Յաղթանա՜կ մեծ՝ զոր կը տանիս դէմ տարերց,
Երկին անբաւ, ջուր անյատակ, նաւդ փոքրիկ՝
Երբ զերդ կարապ ճախրէ սուրայ ծովահերձ։

## ԱՌ ՇՈԳԵՆԱՒՆ



Վայրիկ մ'ալ կաց, ա՜հ, շոգենաւ, մի՛ հեռանար ափունքէս,
Թո՛յլ տուր տեսնել ինձ սիրելույս դէմքըն վայրիկ մ'առաւել.
Օ՜ն, կասեցուր քո սուր ընթաց, սակաւ մի վերջ փութա գնալ,
Մի՛ շտապեր լինել անհետ յեզերց զըւարթ Մարմարայ.
Կա՛ց սակաւիկ, զի բանք են իմ ընդ պաշտելի մըտերմիս.
Կաց, ո՛ անգութ, այդպէս փութով մի՛ խուսափիր դու յինէն։
Ցըռուկովըդ սեւագոյն ճեղքես կապոյտ ծովն ընդարձակ,
Յանձնեալ շոգւոյն իրանդ հսկայ սուրաս արագ, եւ մենաւոր
Թողուս զիս աստ ի ծովեզեր՝ բիբերս ի լճակ արտասուաց,
Այլ եւս անզօր տեսնել սպիտակ ըզթաշկինակ սիրելույս,
Զոր շարժէ կարօտակէզ կանգնած յեզեր սեւ կողիցդ։
Օ՜ն, դարձիր յետս անդրէն, մի՛ լըքաներ զիս միայնակ,
Տե՛ս, մեկուսի սիրտ իմ բեկեալ քեզ աղերսէ պաղատագին.
Օդակոտոր թեթեւաթռիչ կը սուրայի դէպ ի քեզ,
Թէ մի վայրկեան... ո՛չ, մի բոպէ՛, արծուին փոխ տայր ինձ իւր թեւեր.

Իցի՛ւ թէ խուլթ ես լինէի , եւ փշրէի՛ր յիս , անգութ .
Է՞ր հեռանաս այդպէս երագ՝ զիս ի պատրանս թող-
լով սաստ .
Տուր ինձ տեսնել գէթ հուսկ նուագ մըտերմիս
դէմքն անձկալի . . . ։
Գէ՛թ դու , թռչնիկ , թըռիր արագ , տար կաթոգին
ողջոյններս .
Երգէ խանդիւ , պատմէ սրտիս թախիծ ու սուգ եւ
ջերմ արտօսր .
Ա՜հ , տար այս թուղթ , իմ անձկակէզ հոգւոյս պատ-
կերն այս թերթիկ .
Թող ա՛յս պատմէ իմ պաշտելւոյն բոցածաւալ սէրս
ըսպառիչ ։

Այլ հեռացա՛ր . . . չըզգաս երբեք . — փայտերն ու-
նի՞ն սիրտ հոգի .—
Լինիս անհետ , զերդ սեւ մի բիծ արատես ծածկն
ըսպիտակ . . .
Ա՜հ , սիրելիս հանէ ցամաք , եւ չա՛նթ պայթի քո
վերայ ։

Ղ. Ա. Ալիշան

# ԱՋՆ ՈՒ ՁԱԽԸ



*Առաջարկ մը.*

*Իմաստուն բնութիւնը շնորհած է մեզ երկու համանման եւ համագործ աչքեր՝ մի եւ նոյն նպատակի համար, որ է տեսութիւն. եւ երկու համանման եւ համագործ ականջներ՝ մի եւ նոյն նպատակի համար, այն իսկ է լսողութիւն։ Այս երկեակ գործարաններ ի մուտս բնակութեան բանին, ներուի ինձ նըմանեցնել երկու զուգայարմար բանալիներու, որոնց մին եթէ մնասուի կամ փճանայ, պահեստէ զուրկ չենք մնար. հիանալի նախատեսութիւն Արարչին։*

*Արդարեւ այս գործարաններու միջոցաւ ամբարին ի միտս մեր, ըստ մեծի մասին, գաղափարք, առանց որ զգալի ըլլայ մէկ աչքի կամ մէկ ականջի բացարձակ առաւելութիւն միւսին վերայ պաշտօնի, քանի որ առողջ վիճակի մէջ են, եւ ինքնաբերաբար համընթաց։ Սակայն առ ի՞նչ պիտ՚ օգտէին գաղափարք, եթէ նոյն կանխատես բնութիւն շնորհած չըլլար մեզ միանգամայն յար եւ նման երկու բազուկներ եւ ձեռքեր, կատարելապէս յարմար յաշխատութիւն իբրեւ սպասարկուք բանին։ Բայց այս վերջի քոյր անդամք չեն առջիններուն պէս համագործ, հետեւաբար՝ ոչ համապատիւ։ Եւ ուստի՞ այս անպատեհ խտիր, եթէ ոչ մեր կամաց ինքնահաճ մանաւանդ քան օրինաւոր միջամտութենէ ի գործս ձեռաց, որով մին՝ զոր աւելի բանեցուցեր ենք,*

այն իսկ է աւելի կրթեր ենք, կոչուեր է աջ. եւ միւսը՝ զոր հրահանգելու մի եւ նոյն խնամքը չենք տարած, անուաներ է ձախ։ Ի վաղուց անտի աջ ու ձախ, անուանց տարբերութիւնը չէ հոգ. բայց խըտիրը՝ ոչ այդպէս, քանի որ երկրորդն իր բնական իրաւունքէն զրկուելով՝ եղեր է առաջնոյն, առ առաւելն, օժանդակ կամ վարպետի քով արուեստ ուսնելու յաւէտ անընդունակ ստորին մի սպասաւոր, ոչ թէ ընկեր։ Եւ աստի որպիսի՜ անպատեհութիւնք։ Նախ ամբողջ ձախակողմը նուազ թափ է ստացեր իբրեւ նուազ աշխատող, որով ուժերու զուգակշիռք ճիշդ չեն պահուած։ Հոս խնդիրն առնու, ձեռնահասի համար, մի բնազննական կերպարան. մինչ ինձ համար գիտականէն աւելի բարոյականն է ուշագրաւ, այնու զի մարդիկ նոյն իսկ բարեչնորհ բնութեան վերագրելով իրենց անհոգութեան տխուր հետեւանքը՝ ձախին սեպհականներ են ամեն ձախորդութիւն, ամեն ինչ որ յոռի է կամ անհաճոյ. մինչ աջին ընծայեր են ամեն յաջողուած, ամեն ինչ որ բարի է կամ հաճելի. բացատրութեանց եղանակ՝ զոր սովորոյթը միայն կարող է արդարացնել։

Կարելի է սակայն ըսել. «Աջ ու ձախի խնդիրը հանրական է, հետեւապէս ընդունելի.» Այս առարկութիւն չի թուիր լիովին համոզական, քանի որ կային (եւ կան տակաւին) հանրական համարուած գաղափարներ՝ զորս տգիտութիւն կամ մի բիրտ ունակութիւն ընդունելի էր ըրած. բայց ապա գիտութիւնը մերժեց զանոնք ի բաց, կամ կրթութիւնն ամոքեց։

Արդ, միթէ իսկապէս անհնա՞ր է մարդոյ երկու

ձեռքերն ալ հաւասարապէս վարել ի գործ, մինն՝ միւսին ընելով օժանդակ, ի պէտս, անխտրաբար.— անշուշտ ոչ։ «Լաւ աստիճանաւորեալ մարզանք յաղթեն շատ դժուարութեանց.» իրաւացի առած մի է այս, առ որ ի դէպ է յաւելուլ թէ մատաղ հասակի մէջ այդ մարզանաց յաջողութիւնն ապահովագոյն է եւ դիւրագոյն։ Սակայն յիշեմ ես ուսանող պատանի մը որուն աջ ձեռքը կարի վնասուած անգործածելի էր. բայց ուսաւ գրել եւ գծագրել իսկ՝ ձախովը. աններկբայելի փորձ հաստատ կամաց ազդեցութեան, որով անհնարին կարծուածներն իսկ կրնան ըլլալ հնարաւոր։ Այժմ որ կոյրերն ալ ուսանին ընթեռնուլ, առողջ աչօք մարդիկ չպիտի՞ կարենան իրենց ձախ ձեռքն աջին պէս տակաւ կրթել ի գործ, մանաւանդ զի երկաջողակք (ամպի-տեքսթր) անօրինակ չեն, թէպէտ կարի սակաւաթիւ։ Բայց դու այժմէն իսկ տես սա նորատի օրիորդը որ ձախ ձեռքովը չէ կարող թելն ասեղին անցընել, մինչ դաշնակի ստեղնաշարին վրայ երկու ձեռքերն ալ սուրան հաւասարապէս. եւ միւս պարոնը՝ որ չէ կարող ձախով մկրատ գործածել, զոյգ դաստակներու տասը մատերով սրնգի վրայ նուագէ ազատօրէն. մինչ անդին ջութակահար մը աղեղակալ աջէն աւելի ձախովը գործէ լարերու վրայ իբրեւ քաջ արուեստական։

Այս երեւոյթք այլ եւս տեղի չեն թողուր տարակուսի՝ թէ այն ամեն արտադրութեանց մէջ յորս երկու ձեռքերու համաշխատութիւնն անհրաժեշտ է, մարդիկ արդէն իսկ են «յերկոցունց ձեռաց աջողակ,» ինչպէս ըսուած է առ մեզ. մինչ այլուր առ հասա-

*րակ այն ունի բացարձակապէս առաջին դերը, եւ եթէ երբեք սա վիրաւորի կամ տկարանայ, աշխատութեան առջին պիտի մնանք բոլորովին ապիկար։ Խորհինք վայրկեան մ'աս կէտին վրայ, եւ կարծուածէն աւելի կարեւոր պիտի նկատենք դարմանը, զոր դիւրագոյնս գտնելու համար հարկ է հետեւեալ միակ բնական միջոցին դիմել։*

*Այն ու ձախի խնդիրը, իբրեւ մարմնոյ մարզանք, դաստիարակութեան կրնայ պատկանիլ. ուստի յուշ ածեմ ընթերցողին թէ մանկավարժի գործէն առաջ որ ուսուցչինն է, կայ մանկաբուծի գործը որ ծընողացն է, յատկապէս մօր։ Արդ մենէ աւելի կիրթ, մենէ աւելի ժիր մի սերունդ ունենալու համար հարկ է համոզուինք՝ թէ* Օրրանն է առաջին դպրոց, *ուր բնական դասատուին (սիրուն մօր) խնամօք պէտք է, ըստ կարելւոյն, ստանան մանկունք տարրական ուղիղ սկզբունք։*

*Արդ, եթէ Տիկին Մայրերը հաճին ընդունիլ իմ առաջարկս եւ յատկապէս հոգ տանին իրենց մանկիկներուն փոքրիկ ձեռքերը միօրինակ մարզել, պիտ՝ ունենան շատ ճարպիկ եւ աշխատութեան յարմարագոյն զաւակներ. եւ այս պիտ՝ ըլլայ իրենց համար, անտարակոյս, հաճելի փոխարինութիւն եւ ինձ համար առիթ գոհունակութեան, որ այսու ծառայութիւն մ'ըրած պիտի համարիմ ինքզինքս մեր մատաղատի սերունդին։*

———

## ՈՒՂԵՐՁՔ

### Առ Քուեն.

*Մօր կաթի խառն որբանի մեղր, կենաց առջի քաղ-ցրութիւն.*
*Խոնջ անդամոց դու կազդուրիչ, ի կեանս մահու վարժութիւն.*
*Ճոխ թէ աղքատ ի մոռացօնս՝ քեզմով միմեանց հաւասար.*
*Թէ խղճի խայթ զքեզ չը խռովէ, դու մեր վերջին մըխիթար ։ —*

### Առ Հայ օրիորդն.

*Վարդի զարդն է պարզ տերեւ.*
*Պարզութիւնը դու սիրէ,*
*Եթէ վարդ մ'ես արդարեւ ։—*

### Առ Պենասէրն.

*Աղուոր դէմքի կոկիկ մի զարդ՝ է պարզ խնդիր ճա-չակի,*
*Զոր չունեցողն անընտրաբար քսակ պարպէ նորոյթի.*
*Համեստ դէմք մ'ալ՝ բընականով կը յաջողի հրապուրել.*
*Ծաղրելի է տան մէջ հաւիկ՝ դուրսն հնդկահաւ երեւել։*

## ՆԿԱՐԱԳԻՐՔ

———

### Մեծամիտն.

*Ծոխ թէ գիտուն, կամ արի,*
*Կամ թէ գեղով շըպարի,*
*Կարծեօքն միշտ վեր քան զոր է,*
*Բարձրէն մեզ փոքր կը տեսնէ.*
*Հա՞րկ է զգածուիլ. —*
*Կարծեմ ոչ.*
*Օր մը, դէպքի հարուածով՝*
*Տիկն ուռուցիկ մնայ անհով,*
*Եւ մեծամիտն՝ ամօթով։—*

### Փառամոլն.

*Իրմէ ստորնոց միայն զարմանք՝ փառամոլն է ծաղրելի,*
*Ոչ թէ միայն քանի կ՚ապրի՝ այլ եւ յետ որ մեռանի.*
*Երբ զինքն այլ եւս ոչ ոք յիշէ, նա թողու յաչըս մարդկան,*
*Անշուք հոգւոյն յետին վկայ, մի մեծաշուք գերեզման։*

### Շողոքորթն.

*Բազմապատիկ կենդանի, գիտէ սողալ եւ սուզիլ,*
*Ըստ իւր հաշուոյ պահանջման՝ ոստնուլ, թաքչիլ կամ փախչիլ.*
*Տեսքովն անկեղծ, մերթ ապուշ, բայց իրօք միշտ երկդիմի,*
*Շահու համար բարեկամ, չահու համար թշնամի։—*

## Բանասարկուն .

*Բարի բան մը զրուցելու՝ խօսքը պակաս, լեզուն մունջ,*
*Բամբասելու առիթ գըտնայ՝ արագ անուոյ է մըմունջ.*
*Բերան բանալն՝ իրեն համար է որոմ մը սերմանել,*
*Մօտաւորը անխիղճ խամրել, հեռաւորը տոչորել։*
*Ամեն չարիք մէկ տեղ գալով՝ նուազ քան զայն ի կըշռի,*
*Ճշմարտութեան այնչափ մօտ ես, որչափ անկէ ես հեռի։*



## ԺՊԻՏԸ



Ամրան հեղձուցիչ ու տօթակէզ օրերու անտանելիութենէն ու միաձեւ կեանքի մը ձանձրոյթէն պահ մը խոյս տալու համար, Վօսփոր կ'ելնեմք ու կանգ կ'առնունք Պէօյիւքտէրէի Քազինօին առջեւ։

Խուռն բազմութիւն մը պաշարած է Քազինօն։ Հոս, հոն շարժում կայ, կեանք կայ. կը խօսին, կը կանչուըռտեն, կը ճլուըլան, կը շաղակրատեն, կը խնդան, կը զբօսնուն։ Գեղեցիկ նուագերգութիւն մը կ'որորէ զմեզ։

Եւ ես, որ Օրթաքէօյի ամայութենէն վերջ յանկարծ ժխորի մը մէջ կը գտնեմ ինքզինքս, կէս վայրենիի մը ձեւն առած կը դիտեմ։

Կը դիտեմ ծովը, այն անսահման խորութիւնն որ իւր մէջ խորհուրդ մ'ունի, վսեմ ու անթափանց, իւր յարածուփ տարածութեան մէջ։

Երկինք վճիտ է. հոն, հեռուն, Ուշա-Տէտէի բարձունքը, մշտականաչ մարմանդներուն վրայ, արեւը իւր վերջալուսոյ բեկբեկ ցոլմունքը կը ցայտեցնէ։

Եւ միշտ ուշադիր կը դիտեմ շուրջս։

Մեզ դրացի են երկու ալեւորուս ծերունիներ, որք տօմինօի մը խաղն ամբողջացնել կը նկրտին։ Ակնդէտ կը հետեւիմ իրենց շարժմանց, ու խորշոմած դէմքերնուն ամենափոքր մէկ ծամածռութիւնը աչքէս չի վրիպիր։

Ցանկարծ ծերագունին դէմքին վրայ ժպիտ մը կը ցոլայ, ժպիտ մ'անհուն գոհունակութեան՝ որ անցեալի մը մրրկալից կեանքէն ու ապագայի մը մտահոգութիւններէն զերծ անփոյթ մարդու մը ժպիտն է· խաղը շահած է ու կը ժպտի։

Դիմացս դեռատի կին մը կայ, ճոխութեամբ եւ սեթեւեթով հագուած. գեղանի է ու խարտիշահեր, եւ խորահայեաց կապուտակ աչացը մէջ անմեղութեան դրոշմ մը կայ գոգցես։ Ոտիցը տակ, աւազին վրայ, կը թաւալի ժանեակներու մէջ փաթթուած փափկասուն մանկիկ մը. մանկիկը կը ժպտի, ու մայրն ալ նոյն անմեղունակ ժպիտը կը փոխանակէ։

Մանկիկը կը հեռանայ ստնտուին հետ. նոյն անվերջանալի ժպիտը մօրը դէմքին վրայ նկարուած է։ Կանացի նրբամտութեամբս կը գուշակեմ ամէն ինչ։ Տիկինն ինձ դրացի եղող պարոնին կը ժպտի։ Նենգաւոր ու կեղծաւոր ժպի՛տ, որ զանմեղ մանկիկը կը խաբէ։

Կը նողկամ, կը սարսռամ ու երկաթեայ վանդակէն դուրս կը սեւեռեմ ակնարկս։ Հոն թշուառութիւնն՝ պերճանքին, վիշտը՝ խնդին, արցունքը՝ ծիծաղին այնքան մօտ են։

Մինչ հոս ամէն ոք հանգիստ ու անդորր կը զբօսնու, անդին վանդակին ետին խռովայոյզ ոգիներ ցեխի ու վշտի մէջ կը թապըլտըկին։

Նիհար ու դալկատիպ տղեկ մը կը մօտենայ երկաթեայ վանդակին. կ'արտասուէ, կը պաղատի, հացի մը գինը կը խնդրէ։ Եւ հոն, ներսը, հարուստը որ լիաբուռն մսխել գիտէ իւր անձնական հաճոյից համար, չ'ուզեր տալ իւր լումայն աղքատին. տղան

յուսահատ կը տարածուի գետնին վրայ։

Եւ ահա կնոջ մը սեւ ու ջղուտ ձեռքը ներս կ'երկննայ, ու հարուստի մը ակրատին մնացորդն եղող հացն ու պանիրը մարմարէ պաղ սեղանին վրայէն կ'անհետացնէ։ Կիսանուաղ մանկան մօտենալն ու զանոնք վտիտ ձեռացը մէջ սահեցընելն ակնթարթի մը գործը կ'ըլլայ։ Տղան գոհ է. մայրը կը ժպտի, մայրենի գորովալիր ժպի՛տ՝ որ ոսկիով չի գնուիր։

Այս մաշած գրգլեակներու մէջ փաթթուած մանկիկը քիչ մ'առաջ տեսնուած ժանեկազարդ մանկիկէն երջանկագոյն է, զի մայր մ'ունի որ իրեն միայն կը ժպտի . . . ։

Սոյն պահուն կ'անցնի անկից գեղջուկ տղեկ մը, ոտքը տրեխներու մէջ սեղմած, քրտնաթոր ճակատը սրբելով, լեռնաբոյս մորով լեցուն կողով մը թեւին տակ, անցորդին կը կարկառէ զայն անհոգ ու զուարթադէմ. Կ'ընդունի իւր վարձքը, հեգնելով կը նայի հարուստին ու միանգամայն մատղաշ մուրացկին ու կը հեռանայ ժպտելով։ Աշխատութիւնն է այն որ ծուլութեան կը ժպտի գոհութեամբ։



## ՍՓՈՓԱՆՔ ԿՐՕՆԻ

*Երկրիս վրայ շատ խեղճութիւններ տեսայ ։ Ականատես եղայ մեծ եւ անդարմանելի աղէտների եւ զրկումների ։ Հէք մարդկային ցեղը ահռելի հարուածոց ներքեւ կը տառապի ։ Բնական պատահարք մի կողմէն եւ բարոյական թշուառութիւնք միւս կողմէն կը չարչարեն ու կը տառապեցնեն մարդկութիւնը ։ Տառապի՛լ. ա՞յս է արդեօք միայն դժբաղդ մահկանացուացս բաժինը.— չեմք կարծեր ։ Զի Աստուծոյ բարութեան դէմ է այս ։*

*Վերջին ժամանակներս աշխարհի երից մասանց, Եւրոպիոյ, Ասիոյ եւ Ամերիկայի մէջ ողողումների, սովու, նաւաբեկութեանց, սոսկալի համաճարակների երեսէն մարդկութեան կրած տառապանքն շատ սրտաճմլիկ եւ աղէխարշ են ։ Բիւրաւոր կեանքեր հնձուեցան, ընտանիքներ կործանեցան, հազարաւոր աչերէ դառն արտասուք հոսեցան, հեծեծանաց անհուն աղաղակներ առ Աստուած բարձրացան. բայց Ամենակալին արդարութիւնը տակաւին անողոքելի կը մնայ ։*

*Զի համաճարակը—քոլերան—կարծես թէ դեռ յագեցած չէ եւ կ'սպառնայ պարբերաբար շարունակել իւր կոտորած եւ անճիտել մարդկային ցեղը ։ Թերեւս մարդիկ ասոր ալ դարմանը գտնեն, բայց Աստուծոյ ձեռքը գործէք կամ միջոց կը պակսի՞ միթէ, պատուհասելու համար ամբարիշտ աշխարհը ։*

Գիտեմ, Աստուածային արդարութիւն եւ պատուհաս բառերը շատերու ծաղրը պիտի շարժեն։ Ի՞նչ փոյթ. Միթէ նոցա անհաւատութիւնը պէ՞տք է արգելու զիս հաւատալէ՛։ Միթէ Առաքեալը նուա՞զ համարձակութեամբ քարոզեց զխաչելեալն Քրիստոս, երբ հրեայք կը գայթակղէին եւ հեթանոսք յիմարութիւն կը սեպէին զայն։ Թող ուրեմն անհաւատք բնութեամբ կամ դիպուածին վերագրեն զոր ինչ մեք պատուհաս կ'անուանեմք. թող նոքա աներկիւղ ըլլան, եթէ կրնան. մեք կը սոսկամք՝ Աւետարանի սա հետեւեալ ազդարար եւ, մի եւ նոյն ժամանակ, փրկաւէտ պատգամը յիշելով. «Կը կարծէ՞ք որ այն Գալիլեացիք բոլոր Գալիլեացիներէն աւելի մեղաւոր էին. կը կարծէ՞ք որ այն տասնեւութ անձինքը Երուսաղեմի բոլոր բնակիչներէն աւելի յանցապարտ էին, որ այնպիսի անցքեր կրեցին. ո՛չ. —կ'ըսեմ ձեզ. եթէ դուք ալ չապաշխարէք, ամէնքդ նոյնպէս պիտի կորսուիք։» Պատգա՜մ աստուածային, որ կ'ահաբեկէ զմեզ. բայց ընդ նմին կը մխիթարէ առաւելապէս։ Զի նախ մատնանիշ կ'ընէ անոր գթութիւնը, որ պատրաստ է ներել մեզ եւ հեռացնել մենէ մահացու հարուածը, երբ կ'ապաշխարենք։ Կրօնը, ամէն ատեն, ամէն հաւատացեալ սրտերու մէջ կը հեղու սոյն հոգեպարար եւ մխիթարիչ յոյսն ու լոյսը՝ նոցա ո եւ իցէ դժբաղդութեան ու զրկմանց մէջ։

Թէպէտ, տարաբաղդաբար, յոյժ բազմաթիւ են այնպիսիք, որոնք իրենց անհաւատութեամբ, մեղսասիրութեամբ եւ անզղջութեամբ ո՛չ միայն կը պատուհասուէին, այլ եւ յաճախ նոյն պատճառներով

անմխիթար եւ անյոյս կ'ապրին եւ վերջ ի վերջոյ կը կորնչին. սակայն ճշմարիտ եւ երկիւղած հաւատացեալները, եթէ երբէք իրենց կամ այլոց մեղօք եւ ձեռօք փորձութեանց եւ դժբաղդութեանց հանդիպին, կը փութան սիրով ընդունիլ կրօնի տուած սփոփանքը, եւ ապագային համար փրկութեան քաղցր ակնկալութեամբ մեծապէս կը քաջալերուին։

Կրօնի այս փրկարար մխիթարութիւնը կենաց ամէն պարագաներու եւ սովորական սրտաբեկութեանց առեն ալ, տխուր եւ կսկծագին դէպքերու մէջ ալ կարեւոր եւ անհրաժեշտ է։

Տեսէք սա խղճալի մայրը։ Կորուսած է իր սրտի հատորը—մէկ հատիկ զաւակը—ծաղիկ հասակին մէջ, զոր դառնապէս կ'ողբայ։ Ո՞վ կը համարձակի այս յուսահատ եւ որդեկորոյս մօր մխիթարական խօսքեր ըսել, եթէ ո՛չ կրօնի պաշտօնեայն, որ երկինքը ցոյց տալով նմա՝ լուսագոյն կեանքի մը վրայ կը խօսի, եւ կը յաջողի անոր կարեվէր խոցեալ սրտին վրայ սպեղանի դնել, թէ եւ դժուարաւ։

Ահա մի ծաղկատի պատանի, չատ կանուխէն որբ մնացած։ Պէտք ունի պաշտպանութեան եւ խընամոց չթարչամելու համար։ Եկեղեցւոյ հովանւոյն ներքոյ կ'ապաստանուի։

Տեսէ՛ք սա թշուառ մարդը, որ կորսնցուց իւր քաղցրիկ եւ պարկեշտ ամուսինը. կը թողու իրեն հինգ հատ փոքրիկ զաւակներ, որոց ամենէն պըզտիկն, աւա՜ղ, չճանչցաւ իսկ զիւր ծնողն։ Հէք մարդուն կեանքը խորտակուած է այլ եւս. բայց կրօնը նմա ոյժ կուտայ, չիթողուր որ յուսահատի։ Կը յիշեցնէ թէ պարտի ապրիլ մանկանց համար,

զօրս աստուածային Փրկիչը սիրեց։

Վերջապէս տեսէք մանաւանդ սա գեղջուկ կինը, աղքատ եւ ողորմելի։ Աւազակները զարկին մեռուցին էրիկը։ Այժմ այրի է եւ որբերը սնուցանելու բացարձակապէս անկարող։ Բայց կրօնի պաշտօնեայն հոն է միշտ, կը քարոզէ եւ կը մխիթարէ զնա։ Ասկէ աւելին ալ կ'ընէ։ Դրացի գեղացւոց գութն ու կարեկցութիւնը կը հրաւիրէ եղկելի որբերուն վրայ։ Կուտայ նոցա հաց, կըզգեցունէ նոցա մերկութիւնը։ Այսպէս, երկրիս վրայ, երկնային նախախնամութեան պաշտօն կը կատարէ։ Այս է իր ուխտն ու կոչումը. «Աւետարանել աղքատաց առաքեաց զիս, բժշկել զբեկեալս սրտիւ։» «Որ ունիցի ականջս լսելոյ, լուիցէ»։



## ՆՈՐ ՍԵՐՆԴԵԱՆ ԱՇԽԱՐՀԱԲԱՐԸ

*Գրաբարի եւ աշխարհաբարի խնդիրը դարձեալ հրապարակ նետուեցաւ. երկու դասուն պատկանող ախոյեաններու փաստերը հետաքրքրութեամբ կարդացի. հիները՝ աններող ոգւով՝ չիք փրկութիւն, կ'ըսեն, գրաբարէն դուրս. Նորերը՝ առանց ակնածութեան՝ հիներուն ոճին չեն հաւնիր: Անոնք կ'ուզեն ռամիկ լեզուն ազնուացնել եւ հետզհետէ բարձրացնել մինչեւ գրաբարին. ասոնք կ'ուզեն գրաբարէն զտել աշխարհաբարը եւ կոկելով ժողովրդեան խօսած լեզուին մօտեցընել զայն:*

*Ո՞վ պիտի դատէ այս անվերջանալի վէճը, կամ ո՞վ հաշտարար պիտի ըլլայ, եւ ո՞ր դասուն պահանջածն է որ պիտի արժանանայ կազմել մեր գրական անարատ լեզուն, որոշ սահմաններով գծուած: Խնդիրը իր սուր վիճակին մէջ է. համաձայնութիւն մը գոյացնելու հաւանականութիւն չկայ. ուրովհետեւ հիները յամառ եւ Նորերը յաւակնոտ են, եւ ով գիտէ ապագային մէջ ո՛ր սերունդը պիտի լուծէ զայն: Մինչեւ այն ատեն գրականութիւնը տարտամ պիտի դեգերի եւ տառապի, եւ ամեն ոք պիտի գրէ ու շարադրէ իր քմացը համեմատ խառնաշփոթ ոճով:*

*Ցաւով կը տեսնեմ սակայն որ հիներէն ոմանք, փոխանակ Արջօրէն վիճելու, արհամարհանօք եւ նախատանօք կը պատասխանեն. արդեօք մրցելու յու-*

սահատած՝ իրենց դատը կորսնցնելնուն համոզո՞ւմն ունին արդէն. մինչդեռ նորերը, թէպէտ երիտասարդ, բայց աւելի զգոյշ եւ պաղ արեամբ կը ծաղրեն ու-կը ձաղկեն զիրենք ։

Ո՞վ կ'ուրանայ թէ գրաբարը, նախնեաց գրքերուն մէջ, ճոխ ու վսեմ լեզու մ'է. ես ալ զայն գնահատողներէն եմ. բայց եթէ ճգնինք մշակել զայն, գիտենք թէ չպիտի կրնանք երբեք բարձրանալ այն կատարն ուր կը թառին մեր նախնիք. այլ շատ հեռու պիտի մնանք եւ միշտ յոռի նմանող եւ կեղծ պիտի ըլլանք ։ Սակայն կը սիրեմ աշխարհաբարը աւելի գուրգուրանօք, թերեւս անոր համար որ մեր մանկութեան ծիծաղներուն լեզուն է. նախկին բառը, առաջին իղձը այդով արտասանած եւ արտայայտած ենք, եւ բնական է որ զայն աւելի ճկուն կը գտնենք մեր միտքը ու զգացմունքը բացատրելու՝ նուրբ կամ ազդու եւ բազմազան ձեւերով ։

Կ'ըսուի թէ գրաբարը չունի այն յատկութիւնները զորս կը պահանջեն արդի կեանքը ու գրականութիւնը, եւ թէ մեզի պէտք է յստակ, սահուն, դիւրաթեք, այսինքն գործնական աշխարհաբար մը. եւ հիներէն շատերը ասոր համոզուած են ։ Բայց ի՞նչ ըրին քառորդ դարէ աւելի միջոցի մէջ այս նպատակին հասնելու համար. ի՞նչ կանոններով օժտեցին զայն, ի՞նչ ուղղութիւն տուին գործին. — գրեթէ ոչինչ. եւ սակայն գրական պատեհ առիթներ ունէին այս ամենը իրագործելու եւ աշխարհաբարը ծաղկեցընելու համար. հազիւ մասնակի ջանքեր, վարանոտ փորձեր եղան. մեծագոյն մասը գրաբարին սրբազան յարգանք տածելով, անով յափշտա-

կեալ մինչեւ, շատ երկչոտ էր, եւ չէր համարձակեր եւ ոչ իսկ բառ մը կազմել որ նախնեաց բովէն անցած չէ. աւանդը անեղծ պահել ուզելով անշարժութեան դատապարտուած մնաց։

Իսկ նորերը, երիտասարդները, պէտք է խոստովանիլ թէ աւելի գործօն դեր մը կը կատարեն, աւելի կտրուկ եւ խիզախ, աւելի հաստատամիտ, լաւ կամ յոռի՝ որոշ նպատակի մը կը դիմեն. անխոնջ կը գրեն, կ'արտադրեն շարունակ ինքնաստեղծ ոգւով, եւ մէկ քանի տարուան մէջ յեղաշրջում մը ըրին. ու հիմա ըմբոստացած սանձարձակ առաջ կը քալեն, ու արդէն այնքան հեռացած են որ հիները կարող չեն այլ եւս անոնց վազքը կասեցնելու, իրենց ձայնը լսելի ընելու. ու հիներուն ամենապարզ ու սահուն ոճն անգամ՝ մութ, թանձր եւ անճաշակ կը թուի նորերուն, եւ հաւատալու ենք թէ իրենց այս կարծիքը չափազանցութիւն չէ, այլ անկեղծ է։

Կը համակրիմ նոր սերնդեան ձգտումներուն, ախորժով կը կարդամ երիտասարդաց զեղուն եւ վառվռուն գրութիւնները, եւ իրենց յանդուգն ու նորահնար բառերը ու դարձուածները կը ժպտեցնեն զիս։ Կը գովեմ իրենց եռանդը եւ դիտաւորութիւնը. բայց պէտք չէ կարծեն եւ պարծին թէ արդէն նպատակին հասած են յօրինելով նուրբ, գողտր, աշխոյժ աշխարհաբար մը, գրական կեանքին յարմար. նպատակէն աւելի առաջ գացած են. չափազանցութիւնը, չարաչար զեղծումը՝ բարւոքումն չէ. եւ նորակազմ յաջող ու ընտիր բառերու հետ, յաճախ այնպիսի պարբերութեանց կը հանդիպիմ որք օտարամէտ եւ ծպտեալ

հայերէնի շնորհը չունին եւ խորթ կը հնչեն ականջիս. թերեւս վարժուած չեմ տակաւին։

Եթէ հիներն կը ճգնէին գրաբարի ձեւեր գործածել՝ վսեմութեան փայլ մը տալու համար իրենց գրուածոց, միթէ նորերն ալ փա՞ռք կը համարին գրաբարէն բոլորովին հեռանալն՝ ժողովրդական ըլլալու համար։

Այնքան կը պարզեն իրենց աշխարհաբարը որ գռեհիկ կը դառնայ. նախդիրներն անխնայ կը հալածեն. ի մը կցելով միայն գրեթէ ամեն գոյականի եւ ածականի՝ սեռական կը կազմեն, ներդաշնակութեան կանոնաց հակառակ, ինչպէս գօշիի, կենդանիի. եւ չպիտի զարմանամ, եթէ գրեն մայրի, սէրի, փոխանակ մօր, սիրոյ. երբեմն ալ արմատ բառի մը քով անտեղի եղ կամ իղ մ'աւելցնելով՝ բայ մը կը ձուլեն բարբարոսաբար. բայց կը դիտեմ նաեւ որ ի հարկէն անոնք ալ դատալիք կ'ըլլան եւ գրաբարին կը փարին, երբ մանաւանդ նեղը մնան ուսանելոց գրութեանց եւ թարգմանութեանց առթիւ. ասկէ կը հետեւի թէ յորդ եւ ստուար գրութենէ մ'աւելի դժուար է երկու տող համով ոտանաւոր շարելը. եւ թէ բաւական չէ լեզուի հմտութիւնը, բանաստեղծական եռանդը. այլ ներդաշնակութիւն պէտք է ամեն գրութեանց մէջ, մանաւանդ մեր լեզուին համար որ կոկորդային եւ խուժդուժ բառեր ալ ունի։

Իմ եզրակացութիւնս սա է՝ թէ գրաբարէն խըրտչելով հեռանալու չէ, օտար լեզուաց սիրահարելով տիպար առնելու չէ զայնս, եւ ոչ ժողովրդական բարբառին միայն հետեւելու է. մեր ժողովուրդը մտաւոր զարգացումէ զուրկ, լեզուն ալ թէ եւ նկարուն

եւ կորովի , այլ սահմանափակ է եւ չի կրնար գոհացընել գրականութեան բազմաճիւղ արուեստը . պէտք է քաղել այդ ամենէն պատշաճ չափով ինչ որ գեղեցիկ , շահեկան եւ ներդաշնակ է , եւ պէտք է որ Հայկական լեզուի դրոշմը փայլի միշտ այդ ամենուն վրայ ։

Առ այժմ բաց է ասպարէզը ուր կը նետուին երիտասարդները . կը գրեն աշխուժիւ , կը բարդեն ու կը ջարդեն բառերը, կը փոխեն ու կ'ոտնակոխեն կանոնները , կը խզեն գորդեան հանգոյցը , չուզելով կաշկանդուիլ եւ գերի մնալ լեզուին , եւ կուտան անոր ձեւ , կաղապար իրենց երեւակայութեան կամ պահանջմանց յարմար ։ Հիները լքացած , ապշութեամբ կը դիտեն այս տենդոտ շարժումը , այս շփոթութիւնը, յորմէ պիտի ծագի թերեւս նորը , վայելուչը եւ պիտանին ։

Երանի՜ թէ յաջողին մեր աշխարհիկ լեզուն չնաշխարհիկ ընել ։



## ԱՐԹՆՑԻ՛Ր

*Առաւօտ է պայծառ ու զով ,*
*Ծովը կ'երգէ վըսեմ շեշտով .*
*Լեռն է հագեր ոսկի շապիկ ,*
*Հարսնիք կ'ընեն երկինք երկիր .*
*Դեռ քընանա՞ս մըշիկ մըշիկ .*
*Այգն է ծագեր , ա՛լ արթնցիր ։*

*Արշալոյսն իր վարդէ փրփուր*
*Ցանէ վերայ ճակտիդ մաքուր ,*
*Ու զեփիւռին շունչն անդրանիկ*
*Շոյէ մազերըդ ցանուցիր .*
*Դեռ քընանա՞ս մըշիկ մըշիկ .*
*Ժամն է սիրոյ , ա՛լ արթնցիր ։*

*Արթուն նստիմ գլխուդ վերեւ .*
*Ի՜նչպէս շունչդ է հեզ ու թեթեւ ,*
*Ելեւէջն է ո՜րչափ յուշիկ*
*Ճերմակ կուրծքիդ չքնաղածիր .*
*Այդ քունիկըդ մըշիկ մըշիկ*
*Զիս վրդովէ , ա՛լ արթնցիր ։*

*Ո՜հ , կը վախնամ թէ մի գուցէ*
*Հոգիդ հրեշտակ մը թռցընէ ,*
*Ու դիտելով քունդ անուշիկ՝*
*Քովիկդ հսկեմ ես անձանձիր .*
*Այդպէս անհոդ մըշիկ մըշիկ*
*Մի՛ քընանար , ա՛լ արթնցիր ։*

Աչքերըդ պահ մը թանաս կէս ,
Ժպտիս ինձի , դարձեալ փակես .
Ո՜հ , այդ նայուածքը բաց խըփիկ
Շըփոթէ զիս հետաքրքիր .
Շատ քընացար մըշիկ մըշիկ .
Հոգիդ սիրես , ա՛լ արթնցիր ։

---

Բա՛ց աչքերըդ լուսածաւալ
Ուր կը սիրեմ բաղդ՛ըս կարդալ ,
Ուր պահուըտի սէր քնքուշիկ .
Երազներով հեշտապատիր
Հերիք այդպէս մըշիկ մըշիկ
Ծոյլ քընանաս , ա՛լ արթնցիր ։

---

Այդ ըրածըդ ինձի նազ է .
Անուշ անուշ դու երազէ ,
Մինչ ես գողնամ ջերմ համբուրիկ
Շրթունքներէդ վարդակարմիր .
Ա՛լ փոյթըս չէ , մըշիկ մըշիկ
Սուտ քընացիր կամ արթնցիր ։

---

## ԱՌ ԱՆՀԱՒԱՏՆ

---

*Երբ մանուկ էիր, ամեն առաւօտ,*
*Մայրըդ բարեպաշտ, ամեն երեկոյ,*
*Կրկնել տար քեզ մէկ սրտառուչ աղօթ,*
*Եւ վախն Աստուծոյ դրոշմէր ի սիրտ քոյ։*
*Երիտասարդ դու ցընորիւք գինով*
*Ի զուր պարծենաս թէ չունիս հաւատ.*
*Եւ այր կատարեալ՝ գիտութեանց յենլով՝*
*Ի զուր կ՚ուրանաս զԱրարչութեան մատ։*
*Յուսոյ թերթերն, ո՜հ, փետես մէկ առ մէկ.*
*Ափսո՜ս, մինչեւ իսկ հոգին կը ջնջես,*
*Բայց մօրդ աղօթքը սրտէդ ոչ երբեք։*
*Եւ մահն ահաւոր սեւ թեւեր բացած*
*Երբ կանգնի քո դէմ, դու անմիջապէս*
*Խաչ հանես երեսդ եւ գոչես Աստուա՜ծ։*



## ՔՈԼԵՐԱ



*Ծագումն քոլերայի. — Քոլերան յԵւրոպա. — Քոլերայի միքրոպն. — Քոխի աշխատութիւնները. — Պատուաստ քոլերայի դէմ. — Փոխանցումն քոլերայի՝ հողի օդի եւ ջրոյ միջոցաւ. — Մաքրութիւններու դրութիւնն. — Հականեխման դրութիւնը գիտութեան արդի պայմաններովն. — Ջուրը մաքրելու եղանակները. — Առողջապահիկ կանոններ անհատի մը համար։*



Դարուս մէջ, Եւրոպայի վրայ արշաւող առաջին համաճարակը քոլերան եղած է։ 1817ին, առաջին անգամ քոլերան Գանգեսի եզերքէն Հնդկական թերակղզւոյն մէջ կ'անցնէր, Պիրմանի կայսրութեան մէջ կը մտնէր. անտի Սէյլան, Մօրիս, Պուռպօն, Սումաթրա, Ճավա, Պօռնէօ կղզիներն այցելելէն յետոյ կ'անցնէր յԱրաբիա եւ ի Պարսկաստան. 1823ին բովանդակ Եւրոպայի մէջ իւր ահաւոր կոտորածներն ի գործ կը դնէր։

Այդ թուականէն առաջ, Հնդկական թերակղզւոյն մէջ տեղական համաճարակներ միայն գոյութիւն ունեցած են. չենք գիտեր ինչ պատճառներով այդ թուականին համաճարակը սաստկացած՝ Ասիայէն յաջողած է յԵւրոպա մտնել. այնուհետեւ Եւրոպական երկիրները միշտ համաճարակին ենթակայ եղան՝ անոր տարբեր ձեւոց եւ ազդեցութեանց ներքեւ։ 1823ին, Աժտէրխանի մէջ ծագեցաւ. անտի Քիէվ եւ Վարսօվիա այցելեց, Պալթիկէն անցաւ, Լոնտոն

եւ Էտիմպուրկ մտաւ. ամէնէն վերջ Իռլանտայէն Ֆրանսա եկաւ։ 1823, Մարտ 15ին, Քալէի մէջ ծագեցաւ. տասն եւ մէկ օր վերջ, Փարիզու մէջ. մայրաքաղաքին մէջ մէկ ամսուան զոհերուն թիւն էր 18,405։ Սպանիա, Բորթուգալ եւ Իտալիա նոյն համաճարակին բազմաթիւ զոհեր տուին. միայն Զուիցերիա եւ Յունաստան վտանգէն ազատ մնացին։ Տասը տարիներ չարունակ Եւրոպայի առողջապահական վիճակը բարւոքեալ մնաց։ Վտանգը բոլորովին հեռացած կը նկատուէր, երբ 1846 ի համաճարակն ամէն յոյս ի դերեւ հանեց. այդ համաճարակն 1842 էն ի վեր կ'աւերէր Պիրմանի երկիրն, Հնդկաստան եւ Պարսկաստան. 1847 ին, երրորդ անգամ լինելով Ածտէրխանի մէջ մտաւ. 1848 ին կայծակի արագութեամբ բովանդակ Եւրոպայի մէջ տարածուեցաւ. Փարիզ, Մարսիլիա, Թուլօն, Պոլիս բազմաթիւ զոհեր տուին։ 1853 ին նոր համաճարակ մ'եւս ծագեցաւ. պէտք չէ ենթադրել թէ այս անգամ Ասիայէն կամ Ամերիկայէն կուգար. Բոլոնիոյ եւ Սիլէզիոյ մէջ կը ծագէր. նախորդ համաճարակներու միքրոպներն էին որք իրենց երկար ժամանակեայ թմրութենէն ելնելով կը չարունակէին իրենց աւերումներն աւելի ահաւոր, աւելի քստմնելի։ Չորրորդ համաճարակը 1865 ին ծագեցաւ. ծովային ճանապարհաւ մտաւ յԵւրոպա. հնդիկ նաւեր Հիճազ բերին. Արաբիայէն անցաւ յԵգիպտոս. անտի այցելեց կարգաւ Պէյրութ, Պոլիս, Մարսիլիա, Ալճեր, Նիւ-Եորք։ 1883 ին, Եգիպտոս 50,000 զոհ տուաւ համաճարակին։ Նոյն այդ համաճարակ 1884 ին Թուլօնի, Մարսիլիայի մէջ մեծ կոտորածներ ըրաւ.

Անգղիա, Իտալիա, Սպանիա, Ալճերիա, Ադրիականի եզրերը վտանգին ենթարկուեցան ։ 1890ին, Սպանիոյ մէջ երեւցաւ . զոհերու թիւը 4000 եղաւ ։

Համաճարակն իւր այս տարբեր ձեւոց ներքեւ, տարբեր թուականներու մէջ, միշտ Հնդկաստանէն ծագում առած է ։ Հնդկական երկրին մէջ է հետեւաբար քոլերայի բոյնն . համաճարակը միշտ Հնդկաստանէն Եւրոպա եկած է ցամաքային կամ ծովային ճանապարհօք ։ Շատ անգամներ նոյն իսկ Եւրոպական ինչ ինչ մասանց մէջ ծագում առած է նախորդ համաճարակի միքրոպներէն որք հողին մէջ թաքուն կը մնան, կը զարգանան այդ միջավայրին մէջ, եւ օր մը օդին կամ ջրոյն միջոցաւ կը յաջողին իրենց գաղտնի բոյնէն դուրս ելնել եւ մտնել մեր գործարանային կենաց մէջ՝ վերսկսելու համար իրենց աւերիչ պաշտօնն ։

Հողն ամենէն մեծ ընդունարանն է ուր համաճարակին միքրոպները կ'ապրին ընդ երկար . տարիներ կ'անցնին եւ օր մը, անձրեւի եւ գետերու ջրոց միջոցաւ, երկրիս մակերեսին վրայ կ'երեւին ։ Այսպէս շատ անգամ Եւրոպիոյ հողին վրայ համաճարակը ծագում առած է . բայց ինչպէս դիտել կուտայ Միւնիխի հռչակաւոր առողջաբաններէն մին, Պ. Բէթէնքօֆէր, միքրոպին զարգացումն եւ բազմանալը միջավայրէն կախում ունի . որովհետեւ ինչ ինչ վայրերու մէջ միքրոպը կարող եղած է ապրելու, զարգանալու, եւ նոյն միքրոպը տարբեր վայրի մը մէջ չէ կրցած աճիլ, մեռած է, ջնջուած է . հաւանականաբար երկրաբանական եւ առողջապահիկ պայմաններ միայն այս տարբերութիւնը յառաջ բերած

են. եւ մենք մինչեւ ցարդ չենք կրցած գիտնալ՝ թէ ի՛նչ ազդեցութեանց ներքեւ է միքրոպներու աշխարհին երկրագնդիս զանազան մասանց վրայ։

Քոլերան տարափոխիկ հիւանդութիւն մ'է. իւր յատուկ միքրոպն ունի. 1883ին, Հնդկաստանի եւ Եգիպտոսի մէջ, Ռոպէր Քոխ գերմանացին գտաւ այդ միքրոպն. ստորակէտի մը ձեւն ունի. հետեւաբար նոյն անունն (bacille virgule) եւս ստացած է։ Այս մասին Քոխի աշխատութիւններն նշանաւոր եղած են. առարկութիւն մը միայն եղած է. քոլերայի միքրոպներն այլազան են, իբրեւ թէ Կալկաթայի, Սայկոնի, Փարիզու մէջ ծագող համաճարակներն տարբեր միքրոպներ ունեցած ըլլան. այս ենթադրութիւնը ճշմարիտ լինելէ շատ հեռի է. ուր որ ալ լինի քոլերան, ինչ միջավայրի մէջ ծագած, մի եւ նոյն միքրոպը պիտի գտնուի հիւանդութենէն վարակեալ անձի մը վրայ, այսինքն Քոխի գտած եւ նկարագրած միքրոպն։

Քոխ գեղեցիկ փորձերով կրցած է հաստատել՝ թէ թթուները կ'սպաննեն համաճարակին միքրոպն. մեր գործածած ջրոյն մէջ մի քանի կաթիլ կիտրոնական թթու (acide citrique) դնելով մարսողական խողովակէն միքրոպը ներս ընդունելու վտանգէն ազատ կը մնանք։ Տր. Քրիսթմաս Բասթէօռեան հաստատութեան մէջ հետաքրքրական փորձեր կատարելով՝ յանձնարարած է վարակեալներու թթու ջուր գործածել, իբրեւ լաւագոյն միջոց միքրոպն սպաննելու։

Բայց ամենէն գեղեցիկն քոլերայի դէմ պատուաստի աշխատութիւններն են։ 1885ին, Պ. Ֆէռան,

սպանիացի բժիշկն, բազմաթիւ հիւանդներ պատուաստեց իւր հնարած պատրաստութեամբն որոյ եղանակն ինք գիտէր։ 1888ին, Պ. Կամալէա պատուաստի փորձեր ըրաւ հնդիկ խոզերու վրայ՝ միքրոպի մասնաւոր բաղադրութեամբ մը զոր մինչեւ 120° տաքցուցած էր։ Եւ այժմ Բասթէօռեան հաստատութեան մէջ, Պ. Հաֆքին ամենէն գեղեցիկ փորձերը կը կատարէ. քոլերայի ժահրը կը մշակէ 29° ջերմութեամբ սնուցիչ արգանակի մը մէջ. այդ ժահրով կը պատուաստէ ճագարներ, հնդիկ խոզեր, աղաւնիներ. այդ անասունները իրենց պատուաստէն վերջ՝ քոլերայէ չեն վարակուած։ Պ. Հաֆքին եւ իւր երկու ընկերներն, Վիրպուշէֆ եւ Թամամշէֆ, իրենց անձին վրայ փորձած են այդ պատուաստը. չատ թեթեւ նեղութիւն մը զգացած են. եօթներորդ օրը քոլերայի միքրոպներով լի միջավայրի մը մէջ մտած են. համաճարակն թեթեւ ներգործութիւն մ'ըրած է անոնց վրայ։ Ռուսիացի բժիշկը կը շարունակէ իւր փորձերը պատուաստի գիւտը կատարելագործելու համար։

Քոլերային ուղղակի փոխանցումը երկար ժամանակէ ի վեր ընդունուած է. վարակեալի մը հանդերձներն եւ կղկղանքները միակ միջոց են հիւանդութիւնը տարածելու. ընտանեկան յարկերու եւ հիւանդանոցներու մէջ այս կերպով համաճարակը կը տարածուի։ 1865ին, Պ. Բրուստ դիտած է հիւանդութեան փոխանցումն անկողինէ յանկողին, Փարիզու Շառիթէի հիւանդանոցին մէջ։ Քոլերայէ վարակեալ մը Ս. Շառլի սրահը կը մտնէ. թիւ 5 մահիճը կը տրուի նմա. յաջորդ օրը թիւ 6. երրորդ

*օրը թիւ* 7 . *եւ այսպէս չարունակաբար մինչեւ թիւ* 16 *մահիճներուն մէջ եղող հիւանդները քոլերայէ կը վարակուէին , թէպէտ երկրորդ օրը համաճարակը բերող հիւանդը անկէ հեռացուած եւ քոլերայէ բըռ-նուողներու յատուկ սրահին մէջ տարուած էր ։*

*Հիւանդութեան* ջրոյ միջոցաւ *փոխանցումը հաստատուած է ։ Վարակեալ վայրերէ եկող նաւեր, քաղաքին կոյուղիները , անձրեւի ջուրերը գլխաւոր միջոցը կը կազմեն ջուրը ապականելու ։ Ջրոյ մէջ քոլերայի միքրոպը շատ լաւ կ՚ապրի . Պերլինի ա-ռողջապահական համաժողովը փորձեր կատարելով՝ եօթն ամիս կրցած է պահել ։ Քոխ իւր միքրոպը գտած է ի Կալկաթա , ընդունարանի մը մէջէն որոյ ջուրը խումբ մը հնդիկներ գործածելով՝ քոլէրայէ վարակուեցան ։ Հետեւաբար մեծահամբաւ Քոխ կը պաշտպանէ* ջրոյ միջոցաւ փոխանցման *դրու-թիւնը* (Trinkewasser theorie), *որ ընդհանրապէս ընդունուած է Ֆրանսայի եւ Անգղիոյ մէջ ։ Ըստ այս դրութեան , կարելի չէ՛ որ մթնոլորտին մէջ գտնուող բիւրաւոր փոշիները փոխանցեն հիւանդութիւնը . առաջին եւ միակ փոխանցիչը ջուրն է. Անգղիոյ մէջ թաղեր գետի մը կամ աղբիւրի մը ջուրը գործածե-լով՝ վարակուած են համաճարակէն , մինչդեռ նոյն քաղաքին մէջ ուրիշ թաղեր տարբեր աղբիւրներու ջրով սնած ըլլալնուն պատճառաւ՝ վտանգէն ազատ մնացած են ։ Ֆրանսայի եւ Գերմանիոյ մէջ հաստատ-ուած է թէ՝ քոլերայի ամենէն զօրաւոր միքրոպները կրնան ամբողջ տարի մը ըմպելի ջուրերուն մէջ ապրիլ* 15° *և* 20° *բարեխառնութեան ներքեւ ։*

*Պէտք է ընդունիլ նաեւ հիւանդութեան* օդի *եւ*

հողի միջոցաւ փոխանցումն . հողը չատ նպաստաւոր միջավայր մ'է միքրոպներու զարգացման . երկիրը մեծ ընդունարան մ'է ուր ամէն հիւանդութեանց միքրոպներն կրնան ծնունդ առնուլ, ապրիլ եւ աճիլ ։ Բասթէօռ ինքն ածխախտի սերմերը գըտած է այնպիսի փոսի մը մէջ՝ ուր տասն եւ երկուտարիներ առաջ նոյն հիւանդութեան ենթակայ անասուն մը թաղուած էր ։ Կրանչէր եւ Տէշան ժանտատենդի միքրոպը գտած են երկրի մը մէջ ուր հինգ ամիսներ ապրած է ։ Ֆրէօնքէլ եւ Կիտաքօ իրենց գեղեցիկ փորձերովն քոլերայի ստորակէտ-միքրոպը տեսած են երկրիս մակերեսը կազմող խաւերուն մէջ ։ Զարմանալի չէ՞ տեսնել քոլերայի միքրոպն որ մարդկային աղեաց մէջ այնքան լաւ կը մնանի՝ կը յաջողի նաեւ արագ զարգացում մը կրել հողին մէջ, ուր իրեն համար կը պակսին լաւ սննդեան մը տարրական նիւթերն ։

Քոլերայի միքրոպը հողէն երբ դուրս կ'ելնէ, աւելի առոյգ եւ զօրաւոր է քան մարդկային աղիքներէն դուրս ելնող միքրոպն . այս վերջինը բաղդատմամբ գրեթէ անվնաս է . հետեւաբար կղկղանքներն աւելի դիւրաւ հականեխման կ'ենթարկուին ։ Մինչդեռ նոյն միքրոպը, զարգանալու եւ իւր կատարելութեան հասնելու համար, հողի մէջ ապրելու պէտքն ունի . յայնժամ աւելի արագ իւր ազդեցութիւնն ի գործ կը դնէ մեր կենդանական գործարանաց վրայ . ստամոքսային հիւթին թթուն կարող չ'ըլլար սպաննել զայն ։ Այս է առաւել կամ նուազ խոնաւ հողին միջոցաւ փոխանցման դրութիւնն (Grundwasser Theorie) ։ Պ. Տիւքլօ, Սոռպոնի ամենէն

հմուտ դասախօսներէն մին, կը բացատրէ բնութեան այն հանճարեղ եղանակներէն մին որով երկրի ներքին խաւերէն միքրոպները կը յաջողին մակերեսին վրայ ելնել. ամէն միքրոպ որ կը գտնուի երկրի խորութեանց մէջ՝ գործարանային մարմինները կը տարբաղադրէ իւր ամենապարզ տարերաց, որոց մէջ պիտի գտնուի անհրաժեշտ ածխական թթու։ Բոլոր խաւերը այս կազով պիտի յագենան. եւ այն միքրոպներն որք կ՚ուզեն օդին մէջ ապրիլ՝ թթուածին կազին պէտք ունին. չպիտի գտնեն զայս իրենց միջավայրին մէջ եւ անտի պիտի ջանան դուրս ելնել, մակերեսին վրայ գալ։ Ցայնժամ շատ դիւրութեամբ մեր գործարանաց մէջ պիտի մտնեն սննդական խողովակին միջոցաւ, եթէ ոչ եփուն բանջարեղէններ առնունք. եւ կամ օդը փոշւոյ երեւոյթին ներքեւ զանոնք պիտի մտցնէ ի մեզ շնչառական ճանապարհաւ։ Թոքախտի եւ այլ հիւանդութեանց այս կերպ փոխանցումը դիտուած է։

Այսպէս քոլերան կրնայ ճարակիլ հողի եւ ջրոյ միջոցաւ։ Այս երկու ենթադրութեանց ո՞րն աւելի ճիշդ եւ ընդունելի կը նկատուի։ Երկուքն ալ կարեւոր փոխանցիչներ են։ Արդարեւ, հիւանդութեան միքրոպը մեր ըմպելի ջուրերուն միջոցաւ կը փոխանցուի մեր ներքին գործարանաց. բաց աստի, շատ անգամներ ո՞չ ապաքէն մեր քթէն եւ բերնէն այդ միքրոպները կը յաջողին ներս մտնել։ Փորձերը չե՞ն հաստատած թէ ըմպելի ջուրերուն մէջ քոլերայի միքրոպն այն ատեն աւելի զօրաւոր եւ առոյգ է, երբ արդէն ժամանակ մը հողին մէջ բնակած է եւ անձրեւի ջուրերուն միջոցաւ երկրէն դուրս յաջո-

ղած է ըլլալ ։ Հականեխական եղանակներն, ջերմութիւնը լաւագոյն միջոցներն են համաճարակին սաստկութիւնը մեղմացնելու, արգիլելու վերջապէս անոր արագ աճումն ։ Երբեմն այնպէս կ'ենթադրուէր թէ քոլերան միշտ Հնդկաստանէն կուգայ․ աղետին սերմը կը ջնջուի Եւրոպայի մէջ․ անոր յարատեւ աճման միակ նպաստաւոր միջավայրն Գանգեսի ժանտահոտ ճահիճներն են ։ Միքրոպներու վրայ այժմ նորանոր աշխատութիւններ կը կատարուին․ նոքա կը ցուցնեն թէ միքրոպը կարող է հողին մէջ մնալ թաքուն, հոն ապրիլ, զարգանալ, եւ օր մը անտի ելնելով՝ տարածուիլ մեր գործարանային կեանքին մէջ համաճարակի երեւոյթին ներքեւ ։ Կը կարծուէր թէ մարդկային մարմինն էր միակ բոյնը տարափոխիկ հիւանդութեանց սերմերուն․ եւ այդ սերմերը օդին միջոցաւ միայն մարդկանց մէջ կը փոխանցուէին ։ Այսօր ստուգուած է թէ հողը միքրոպներու ամենէն մեծ հայթայթիչն է․ նա է որ իւր ծոցին մէջ սնուցած միքրոպները մերթ օդին եւ մերթ ջրոյն կը հաղորդէ ։

Քաղաքները տարափոխիկ հիւանդութիւններէ, մանաւորաբար քոլերայէ ազատ պահելու համար, մաքրատուններ կը հաստատուին․ այս դրութիւնը շատ հին է․ երկար տարիներէ ի վեր կը գործադրուի ։ Ցամաքային մաքրատուններն, որոց առողջապահական չղթայ անունն եւս կը տրուի, ակնկալեալ արդիւնքը չեն երբեք ունեցած ։ 1873ի Վիէննայի համազգային Վեհաժողովին մէջ Ֆրանսա ցամաքային մաքրատուններու դրութիւնն ընդունեց․ 1885ի Հռովմայ Վեհաժողովին մէջ մերժեց․ որովհետեւ փորձերն ա-

պատուցին թէ ցամաքի վրայ հաստատուած առողջապահական շղթայներն այնքան կանոնաւորութեամբ չեն գործադրուիր ։ Եւրոպական երկրաց մէջ միայն Թուրքիա ամենէն գեղեցիկ օրինակը տուած է իբրեւ լաւագոյնս գործադրող այդ դրութիւնն ։ Ծովային մաքրատուններն անհամեմատ առաւելութիւններ ունին . տարակոյս չկայ որ այս վերջինը կանոնաւոր կերպիւ պէտք է որ գործադրուի . Նաւերն իրենց ճանապարհորդներով խիստ եւ լուրջ քննութիւն մը պարտին կրել . հաղորդակցութեան միջոցները գոյութիւն պէտք չէ որ ունենան պայմանաժամի մը համար ։ Պարագայներ կան երբեմն յորս ծովային մաքրատունը կը կորսնցնէ իւր կարեւորութիւնը . 1884 ին , Սպանիա հիւսիսէն դէպ ի հարաւ , արեւելքէն դէպ յարեւմուտս , համաճարակէն վարակուած էր . Ֆրանսայի եզերքէն եկող նաւերուն դէմ զգուշական միջոցներ ի գործ դնելն կը նմանէր ծխողի մ'արգիլել՝ որ իւր լուցկին հրդեհի մը մէջ նետելու համարձակութիւնը չունենայ ։

Երկրի մը սահմանագլխոյն վրայ եւ կամ քաղաքի մը մօտ մաքրատուն մը երբ հաստատուի , կրնա՞նք համոզուիլ թէ ամէն վտանգ հեռացած է մենէ ։ Վարակեալ վայրերէ եկող ճանապարհորդաց համար երկար շաբաթներ մաքրատան մէջ մնալն օգտակար չէ միայն . ամէն բան պէտք է որ մաքուր ըլլայ . ճամբորդին ձորձերը , զգեստները , բոլոր ծրարները հականեխական դեղերու ազդեցութեան ներքեւ եթէ մնան , այն ատեն մաքրատունն իւր դերը կատարած է . Նաւերը , շոգեկառքերն ամենախիստ քննութեան մը պարտին ենթարկուիլ . կառավարութեան կող-

մանէ կարգուած բժշկաց խումբ մը լուրջ քննութիւն մը պիտի կատարէ այն ամէն բանի վրայ որ վարակեալ կամ կասկածելի վայրէ մը կուգայ։ Եւ այժմ այս աշխատութիւնները շատ դիւրաւ կը գործադրուին. գիտութեան արդի փորձերը կարի դիւրացուցած են հականեխական եղանակները, եւ ամէն օր կ'ընծայեն մեզ հականեխական դեղերու մեծ մըթերք մը։

Այն օրուընէ ի վեր յորում Բասթէօռի աշխատութիւններն ամենէն մեծ յեղաշրջումը յառաջ բերին գիտութեանց մէջ, միքրոպներու խնդիրն մասամբ լուծուած կը նկատուի. տարրագիտական բազմաթիւ բաղադրութիւններ դիւրամատչելի գնով մը կրնանք մեր տրամադրութեան ներքեւ ունենալ՝ միքրոպներու դէմ պաշտպանելու համար մեր անձը. այդ օրուընէ ի վեր է որ մարմնոյ եւ բնակարանաց հականեխումն տարրագիտաց ձեռքին մէջ նոր գիտութիւն մ'եղած է։ Հիմա հականեխումը գլխաւորապէս ի գործ կը դրուի. երկու գլխաւոր հականեխականներ ունինք. սնդիկի աղն (sublimé corrosif) եւ փենական թթու (acide phénique). այս երկու նիւթերուն գինը քիչ մը բարձր է. ջրոյ մէջ դիւրաւ կը լուծուին. առաջինն որչափ աւելի խառնուած ըլլայ թթուի մը հետ, այնքան մեծ կը լինի իւր ազդեցութիւնը քոլերայի միքրոպին վրայ. այս միջոցներուն քով պէտք է դնել նաեւ ջերմութիւնը. ո՛չ թէ չոր ջերմութիւնն որոյ փորձերը չեն ունեցած բնաւ ակնկալեալ արդիւնքն, այլ խոնաւ ջերմութիւնը՝ որոյ կիրառման համար հռչակաւոր է Բոխի փուռը. այս գործին Թիլթեղէ գլանաձեւ ընդունարան մ'է,

թաղով ծածկուած, որպէս զի պաղութիւնը ներս չը-մտցնէ։ Վերի բերանին վրայ կափարիչ մը կը գըտնուի թաղով ծածկուած. ասոր վրայ ծակ մը կայ որմէ շոգին դուրս կ'ելնէ. գլանին մէկ քառորդ մասը ջրով կը լեցուի. Ջրոյ մակերեւէն մի քանի հարիւրերորդամէթր վեր հաստատուած է վանդակ մը որոյ վրայ կը դրուին կասկածելի նիւթերը։ Վառարանին ջուրը կազով կը տաքցուի. շոգւոյն բարեխառնութիւնը 100° է. երբեք չի փոխուիր։ Փորձերը յաջողութիւն գտած են։ Քառորդ ժամուան մը մէջ 100°ի բարեխառնութիւնը կրցած է փոխանցուիլ նիւթերուն եւ սպաննել համաճարակին միքրոպները։

Գիտութեան արդի պայմանաց համեմատ, հականեխական ամենէն գեղեցիկ կայարանները կը գըտնուին Միացեալ Նահանգաց եւ Քանատայի մէջ։ Ամենէն գեղեցիկն, ամենէն մեծը Միսիսիպիի բերանին մէջ կը գտնուի. ընդարձակ սենեակ մ'է 18 մէթր երկայնութեամբ, 3·15 մէթր լայնութեամբ եւ 2·15 մէթր բարձրութեամբ. հոն կը գտնուին ամենէն մեծ ընդունարաններն, որոց մէջ պատրաստուած կը մնայ հականեխականը. այդ ընդունարաններէն երեք խոշոր խողովակներ կը մեկնին եւ նաւուն մէջ կը մտնեն ամէն կողմէ՝ մինչեւ 13,000 լիտր բաղադրութիւն տալով նմա երկու ժամուան միջոցի մէջ։ Շատ մեծ խնամօք պէտք է հականեխել նաւերու, շոգեկառաց ատաղձներն. միքրոպն իւր բոյնը այդ ատաղձներու նրբագոյն անջրպետներուն մէջ իսկ կը դնէ. Պ. Պապէս, Պուքրէշի մէջ, քոլերայի ստորակէտ միքրոպը գտած է զօրանոցի մը ատաղձներուն մէջէն. եւ որովհետեւ շատ անգամ-

ներ փոշիներն իրենց հետ ընդ քարշ կ'ածեն միքրոպ-ներու լեգէոններ, հետեւաբար անհրաժեշտ նկատուած է առարկաներն, օրինակի համար կահերը, հայելի-ները, այս ամէնը մաքրել հացի փշուրներով. այդ փշուրները ամէն փոշի իւր միքրոպին հետ կը ջնջեն. իւր գերը կատարելէն յետոյ, հացի նոյն կտորը պէտք է որ այրուի։ Այս պայմանաց ներքեւ՝ մա-քրատան մէջ երկար օրեր սպասելն իւր կարեւորու-թիւնը կը կորսնցնէ։ Աւելորդ չի լինիր, եթէ ըսենք թէ այս ամէն միջոցները միշտ ապարդիւն պիտի մնան, եթէ առողջապահական պաշտօնեայք խստիւ չկատարեն իրենց պաշտօնը. 1865ի համաճարակէն ի վեր Պոլիս միշտ ազատ մնացած է վտանգէն. քա-նի անգամներ քոլերան Թուրքիոյ շուրջ դեգերած է Վեհափառ Կայսեր վերին հսկողութեան եւ առող-ջապահական պաշտօնէից աշալուրջ գործունէութեան շնորհիւ է՝ որ Թուրքիոյ հողին վրայ չէ համարձա-կած մտնել համաճարակն։

Եւ որովհետեւ քոլերայի ամենէն գլխաւոր փո-խանցիչներէն մին ջուրն է, կ'արժէ գիտնալ թէ ի՛նչ կերպով պէտք է մաքրել աղտեղի ջուրերը հա-մաճարակի միջոցին։ Երեք միջոցներով. զտմամբ, եռացմամբ, ջրոյն մէջ օտար նիւթերու յաւելմամբ, որք անվնաս ըլլալով մարդուն՝ միայն միքրոպը կը սպաննեն։

Աւաղաքարէ, ածուխէ պատրաստուած զտիչները բանի մը չեն ծառայեր, որովհետեւ միքրոպը չեն բռներ. եւ եթէ երբեք չմաքրուին այդ տեսակ զտիչները, նոքա եւս իրենց կարգին միքրոպներու բոյներ կը ներկայացնեն. յայնժամ զտել ջուրը շատ

աւելի վտանգաւոր պիտի լինի քան ոչ զտեալը: Լոնտոնի, Համպուրկի, Պերլինի, Ֆրանքֆորթի, Վարսովիոյ մէջ, գետերու ջուրը կը զտեն աւազի միջոցաւ. բայց չատ անկատար եղանակ մ'է այս, ո'րքան ալ նուրբ եղած լինի աւազը: Այս տեսակ զտիչներ եթէ անգամ մը գործել սկսին, աստիճանաբար աւազին վրայ միքրոպները խաւ մը պիտի կազմեն. եւ օր մը արուեստական զտիչը գործարանային զտիչ մը պիտի լինի. Ջուրը չպիտի կրնայ անցնիլ միքրոպներու այդ թանձր խաւէն: Ամենէն աւելի օգտակարն յախճապակիէ զտիչն է. եթէ երբեմն մաքրուի, անհամեմատ ծառայութիւն կը մատուցանէ համաճարակի ժամանակ: Այն եռացեալ ջուրն որով պիտի մաքրուի գործին, եթէ թթուներու հետ խառնուի, եւս աւելի ազդեցիկ կը լինի միքրոպին դէմ:

Եռացումն ամենէն կատարեալ եղանակն է ջուրը անվնաս ընելու: Երեք թերի կողմեր միայն ունի. սուղ է. ջրէն կը բառնայ այն կազերն որք ըմպելին հաճելի կ'ընեն. պղտոր երեւոյթ մը կուտայ հեղուկին: Եւ սակայն եթէ մտածուի թէ ահաւոր համաճարակի մը միքրոպներէն ազատ կը պահենք այդու մեր ամենօրեայ ըմպելին, այդ երեք թերութիւններն յայնժամ կը կորսնցնեն իրենց կարեւորութիւնը: Ջուրն եռացմանէն անմիջապէս վերջ պէտք է խմել, եթէ ոչ՝ գործարանաւոր էակներն կրկին կ'երեւին հեղուկին մէջ եւ քիչ ժամանակի մէջ արագ աճում մը կ'ունենան:

Ջուրը տարրագիտական եղանակներով մաքրելու առաջին փորձն արեւելից մէջ եղած է. պաղլեղը կրնայ

մաքրել ըմպելին. նաեւ համաճարակի միջոցին ջրոյ մէջ կիտրոնական թթու (acide citrique) կը դնեն. այսու հեղուկը կը մաքրուի իւր գործարանաւոր էակներէն եւ միանգամայն կը ներկայացնէ շատ հաճելի եւ ախորժահամ ըմպելի մը: Այս եղանակը կրնանք ի գործ դնել այն ամէն ջուրերուն համար որք կը գործածուին մեր տան մէջ. կերակուրի ջուրը, արդուզարդի ջուրը, լուացքի ջուրը, ամէնն առողջապահիկ պայմանաց ներքեւ պիտի դնենք, եթէ ջուրն այս միջոցներով մաքրելու հետամուտ ըլլանք, մանաւանդ քոլերայի ժամանակ՝ յորում ջուրերը մեծ մասամբ իրենց մէջ հիւրընկալած են անհարկու միքրոպն:

Անհատ մը ի՞նչ զգուշական միջոցներու պիտի դիմէ համաճարակին ժամանակ: Վատառողջ բնակարանի մը մէջ չպիտի բնակինք. աղբիւրի ջուր միայն պիտի խմենք. քոլերայէ բռնուողներու վերաբերեալ բոլոր նիւթերը պիտի հականեխենք. չըպիտի ուտենք կարագ, այն միակ սնունդն որոյ մէջ միքրոպը քառասուն օր չարունակ կ'ապրի. խակ պտուղներ, հում բանջարեղէններ ուտելէ պիտի զգուշանանք. սաստիկ յոգնութենէ, ցրտէ պիտի զգուշանանք. մեր սննդառութեան մէջ օրինակելի կանոնաւորութիւն մը պիտի դնենք, գիտնալով որ դժուարամարսութիւնք կրնան աղեաց մէջ միքրոպները բազմացնել. հեռու պիտի մնանք քոլերայէ բռնուողէն, առանց դպչելու կասկածելի առարկայից. աճառախառն կամ եռացած ջրով պիտի խոզանակենք մեր ակռաները. որովհետեւ բերանը լաւագոյն ընդունարան մ'է այն միքրոպներուն զորս ար-

*տաքին փոշւոյն հետ նէրս առնելու միշտ ենթակայ կը գտնուինք. ժանտահոտ, նեխեալ ջուրց եւ գետա-կաց եզրերը չպիտի թափառինք. մաքուր, ժուժ-կալ եւ աներկիւղ պէտք է գտնուինք աղետին դէմ։*

*Այս առողջապահիկ օրինաց եթէ հնազանդ գըտ-նուինք, յոյս մեծ պէտք է ունենանք թէ չպիտի վարակուինք հիւանդութենէն։ Ինչպէս անհատի մը, նոյնը կրնանք ըսել կառավարութեանց համար. ա-ռողջապահական լաւագոյն չղթայներն, պաշտօնէից ամենախիստ քննութիւններն, մեր Օգոստափառ Վե-հապետին հայրական աչալուրջ հսկողութիւնը կը պարգեւեն մեր երկրին ժողովրդեան անդորր կեանք մը, երկիրն ազատ պահելով համաճարակի վտանգէն։*



## ԼԵԶՈՒԻ ՀԵՂԻՆԱԿՆ ՈՒ ԳՐԱԳԷՏՆ

*Լեզուաց առաջին հեղինակն է Բաբելոնի աշտարակն։ Անոր խառնակեցաւ մարդոց լեզուն, կ'ըսէ Ս. Գիրքն, եւ այն խառնակութիւն՝ հետզհետէ տարածուելով եւ ամէն կողմ ճիւղեր արձակելով՝ հարիւրաւոր թերեւս իսկ հազարաւոր լեզուներու եւ բիւրաւոր բարբառներու ծնունդ տուաւ։*

*Ըստ կարծեաց մեր նոր գրագէտներէ ոմանց,
«Լեզուի հեղինակը ժողովուրդն է միայն, որ կենաց
«ամենօրեայ սալին վրայ կը դարբնէ զայն իւր կա-
«մաց, պիտոյից, զգացմանց եւ հաճոյից համեմատ։»
Բայց թէ ի՞նչ սկզբամբ, ի՞նչ օրէնքով կամ ի՞նչ կանոնով ժողովուրդը կը դարբնէ լեզուն. հաւաքաբա՞ր, ժողովո՞վ, խորհրդակցութեամբ թէ ամէն ոք առանձնաբար ըստ իւր բնազդման, ըստ իւր պիտոյից, ըստ իւր հաճոյից, — այս կէտերը չեն բացատրուած։*

*Արդ, բազմադարեայ փորձերով հաստատեալ իրողութիւնն այս է՝ թէ ժողովուրդ մ'ինքնին, մանաւանդ մտաւորական մշակութենէ զուրկ եւ անառաջնորդ ժողովուրդ մը, ո՛չ թէ լեզու, այլ պարզապէս աշտարակ կը չինէ. վասն զի ամէն ոք հեղինակ է յայնժամ. ամէն անհատ, ամէն ընտանիք կրնայ իրեն համար լեզու մը դարբնել՝ ըստ իւր հաճոյից՝ իւր կենաց ամենօրեայ սալին վրայ։ Ո՞վ կրնայ արգելուլ։*

Աւասիկ աշտարակաշինութիւն՝ բովանդակ իմաստով բառին, եւ անվրէպ արդիւնք՝ Բաբելոնական խառնակութիւն։ Այս է պատճառն որ դպրութիւն չունեցող կամ անուսումն եւ եթ ունեցող ազգեր ժողովրդոց լեզուն, ո՛չ միայն աղաւաղման, այլ եւ յարաժամ փոփոխման ենթակայ է, եւ կը տարբերի մինչեւ գաւառէ գաւառ, քաղաքէ քաղաք, գիւղէ գիւղ եւ մինչեւ իսկ թաղէ թաղ։

Այսպէս եղած էր մեր մէջ ալ մեր դպրութեան անկեալ միջոցին։ Պոլսոյ ռամկօրէնը թաղէ թաղ կը տարբերէր ասկէ 40-50 տարի առաջ։ Երբ անծանօթ պոլսեցւոյ մը խօսակցութիւնը լսէինք, իսկոյն կը գուշակէինք ո՛ր թաղի բնակիչ լինելը. Սամաթիացի՞, Գումգաբուցի՞, Պալատցի՞, Խասգիւղցի՞, Օրթագեղցի՞, Իւսկիւտարցի՞։ Այնչափ մեծ էր աշտարակին ազդեցութիւնը։

Կը փոխուի սակայն խնդիրն՝ երբ ժողովուրդ մը դպրութիւն, գրականութիւն եւ գրագէտներ կ՚ունենայ։ Ցայնժամ վերջ կը գտնէ լեզուին անկայուն ու յարափոփոխ վիճակը։ Ժողովուրդը կը դադրի իւր կենաց ամենօրեայ սալին վրայ լեզու դարբնելէ, այսինքն աշտարակ շինելէ, զի գործը կ՚անցնի գրագիտաց ձեռք, որք կը մշակեն զայն, կը կանոնաւորեն, կը գեղազարդեն, կը ճոխացնեն, եւ նորա քերականութիւնն ու բառգիրքն ալ յօրինելով՝ մնայուն վիճակի մը մէջ կը դնեն։ Ցայնժամ ժողովուրդն ալ բնականաբար գրագիտաց առաջնորդութեան կամ՝ որ նոյն է՝ գրական լեզուին սատարած ուղղութեան հետեւելով, լեզուն ոչ եւս ռամկին քմահաճոյից խաղալիկ կը լինի, ինչպէս որ մեր մէջ ալ փորձով

տեսնուեցաւ։ Ժողովուրդն (1), ի բաց թողլով հին ռամկական խառնափնդոր լեզուն, գրական աշխարհաբարին հետեւեցաւ, եւ այսօր Պոլսոյ Հայոց տիրող լեզուն եղած է այդ մշակեալ եւ փոքր ի շատէ կանոնաւորեալ աշխարհաբարն։

Արդարեւ ժողովրդեան բերնին մէջ լեզուն կրնայ դարձեալ արտասանական արտուղութիւններ կամ խոտորումներ ստանալ. բայց այն արտուղմունք կամ խոտորմունք չեն կրնար ազդել գրականին. գրագէտք չեն հետեւիր երբէք այն արտուղմանց, թէ եւ ժողովրդէն մեծ մաս մ'իսկ ընդունած լինի, այլ անստերիւր ուղղութեամբ կը շարունակեն իրենց կանոնաւոր ընթացքն։ Օրինակի համար, Ֆրանսացիք, ինչպէս գիտեն շատեր, ai երկբարբառը փոխանակ աի արտասանելու՝ է կ'արտասանեն. oi երկբարբառն օա կամ ուա կ'արտասանեն. im, in, em, en տառերը փոխանակ իմ, ին, էմ, էն արտասանելու՝ էն, ան կ'արտասանեն ուրիշ բաղաձայններէ առաջ(2). բայց գրինչք միշտ գրականին կը հետեւին եւ ոչ արտասանականին, այսինքն անփո-

---

(1) Խօսքերնիս ժողովրդին ուսեալ կամ կրթեալ մասին վրայ է, որ այսօր պատկառելի թիւ մը կը կազմէ։

(2) Մեր մէջ ալ այ երկբարբառը սովորաբար է կ'արտասանեն Փոքր-Ասիոյ վերնագաւառաց ազգայինք, ինչպէս նաեւ բովանդակ Ռուսահայք եւ Պարսկահայք։ Այսպէս այլ՝ էլ, այս՝ էս, այդ՝ էդ, այն՝ էն, գայլ՝ գէլ, եղբայր՝ աղբէր. հայր՝ հէր, մայր՝ մէր, ձայն՝ ձէն կամ ծէն. սայլ՝ սէլ, փայտ՝ փէտ եւ այլք։ Քանի մը բառերու սկիզբն ալ է կ'արտասանեն. այգի՝ էգի, այրել՝ էրել, այրիկ՝ էրիկ։

փոխ կը պահեն գրականն : Ա.յնպէս է նաեւ ուրիշ ամէն լեզուաց մէջ, գրականն արտասանականէն չի հպատակիր : Միայն մեր լեզուն բացառիկ հակապատկեր մը կ'ընծայէ այս մասին: Գրագէտք կամ գրիչք, թէ եւ ոչ ամենեքին, ներեն մեզ ըսել, սորկաբար կը հպատակին ռամկական խեղաթիւրմանց եւ աղաւաղմանց, զորս տգիտութիւնը կամ՝ որ նոյն է՝ աշտարակաշինութիւնն արտադրած է :

Ա.յդ պատուական գրչաց միակ փաստը կամ մանաւանդ պատրուակն այս է. քանի որ ժողովուրդն այնպէս կ'արտասանէ, իրենք ալ պարտին հպատակիլ եւ այնպէս գրել, այսինքն՝ ուղիղը մէկ կողմ թողուլ եւ սխալին հետեւիլ, թէ եւ ուղիղն ալ նոյնչափ հասկնալի լինի ժողովրդեան : Այսպէս այդ գրիչք, փոխանակ իրենք ժողովրդեան առաջնորդելու, կ'ըսպասեն որ ղեզուաղարբին կամ աշտարակաշէն ժողովուրդն իրենց առաջնորդէ. հետեւաբար ուրիշ բան չեն ըներ իրենք, բայց եթէ, դարձեալ ներեն մեզ ըսել, աշտարակաշինութեան ստորին գործաւորներու (հող, քար, շաղախ կրողներու) պաշտօն կը կատարեն, առանց բնաւ մասն ունենալու լեզուին մշակման եւ կանոնաւորման գործին մէջ, որ՝ ըստ մեր խոնարհ կարծեաց՝ ճշմարիտ գրագէտի մ'առաջին պարտականութիւնն է :

Յ. Ա. [illegible]

## ՄԿՐՏԻՉ ԱՃԷՄԵԱՆ



Օրթագիւղ 1838ին համեստ բանաստեղծ մը ծնած է, ամրան տօթակէզ օրերուն, գունագեղ ծաղկանց խնկաբոյր ամսուն։

Մեր Սուրբ Թարգմանչաց վարժարանը նախակրթարան եղած է բոլոր Միջագիւղցւոց, ինչպէս նա եւ բանաստեղծիդ։

Ծերացած վարժարան մըն էր անի մեր օրով, եւ ընդարձակ սրահ մ'ունէր վերի յարկը, որ Ուսումնարան կը կոչուէր այն ատեն։

Շարք մը պատկերներ երեւելի արանց, ու շարք մը նկարներ հոգեցունց դիպաց, իսկ ճօճանակաւոր ժամացոյց մըն ալ եւրոպական դրութեամբ՝ երկու ահագին գրադարաններու մէջ տեղը զետեղուած՝ հոյատեսիլ վեհութիւն մը կուտային Ուսումնարանին։

Մենք ալ 71ի սկիզբը դեռ «Ծաղկոց»ին մէջ՝ անձկանօք կը սպասէինք ընդհանուր քննութեան, Ուսումնարան ելնելու համար։

Մանկական աչաց շատ մեծ կը թուէր այդ Ուսումնարանը, կամ ճիշդը խօսելով՝ «Ուսումնարանականը», որք կերակուրի ժամանակ յոխորտանօք կ'անցնէին մեր մէջէն՝ Ծաղկոցէն, յաղթական նայուածք մը ձգելով մեր վրայ։

Ծաղկոցի մանկունք ամօթահար կ'երեւէին. գէթ իմ վրաս այդ տպաւորութիւնը գործած էր. չգիտեմ միայն թէ յետոյ ես ալ առա՞ծ էի այն յաղ-

թական ձեւերը, ամբարտաւան շարժումները։

Դեռատին Աճէմեան, 48ի միջոցներն, հոն կը յաճախէր. Թարգմանչաց վարժարանի Ծաղկոցի ծաղիկն էր նա, դեռափթիթ, գեղածիծաղ։

Իր տասնեւչորս տարեկան եղած ժամանակ կը ղրկուի ի Վենետիկ, Ռափայէլեան վարժարանը, դասընկեր ունենալով գեղանիւս քերթողն Թովմաս Թէրզեան, Սրապիոն Թղլեան, Գէորգ Ապտուլլահ եւ այլք։

Դպրոցական վեցամեայ շրջանին աւարտելէ յետոյ, Պոլիս կը վերադառնայ, ուսուցիչ ունեցած լինելով զԱլիշան, այս՝ հայկաբանութեան, գրագիտութեան ու պատմութեան բազմարեղուն նահապետը։

Երիտասարդ Աճէմեան խուզարկու պատկերահանութեան մէջ քաջավարժ, մրցանակներով պճնուած, միով բանիւ գեղարուեստի պատուական աշակերտ մը դարձած, կուգայ առ մեզ կուրծք տալու գործնական կենաց, եւ իր ապերասան դառնութեանց։

Նա հեռագրատան պաշտօնէութեան մէջ կը մտնէ, ուր քիչ յետոյ իր բարձր կարողութիւններն ի հանգէս բերելով՝ կը գնահատուի մեծաւորներէ, ու կը ղրկուի ի Վալոնա, Շքոտրա, եւ անտի փոխադրուելով ի Վառնա՝ հոն բնակութիւն կը հաստատէ մի քանի տարիներ։

Աճէմեան իր պարապոյ ժամերուն չի դադարիր երբեք գրաւորական զբաղումներէ. գեղանկարչական հաճոյից տալով զանձն՝ կը շինէ պատկերներ, արուեստո՛վ, զգացումո՛վ, միշտ դիտող բնութեան, ու հետեւող բնականին գեղեցկութեան։

1866ին Պոլիս դարձած կ'ամուսնանայ իւր քան-

ութ տարեկան ։ Անոր ի վեր անդադրում արժանեօք եւ աշխատասիրութեամբ կը յարատեւէ մինչեւ ցայսօր նոյն վարչութեան մէջ՝ վարելով Բերայի կայսրական Տեսչութեան պաշտօնը 1872էն մինչեւ 75, ապա փոխադրուելով երկրաչափական սենեակը, որոյ Տը-նօրէնն է այժմ ։

Ազգային շրջանակի մէջ Մկրտիչ Աճէմեան խիստ փոքր դեր վարած է, իբրեւ հոգաբարձու եւ իբրեւ Թաղային խորհրդոյ եւ Ընդհ. Ժողովոյ անդամ ։

Ի սկզբանէ անոր աւելի կ'ախորժի առանձնա-ցեալ կեանքէն ու կը պարապի, ինչպէս ըսինք ի վեր անդր, ուսումնական, արուեստական աշխատու-թեամբ, եւ երբեմն ալ պատկերհանութեամբ ։

Հին դպրոցին կը վերաբերի նա, այն դպրոցին որ աւագ գործեր արտադրեց, որ Հայ ազգին աւագ գը-րականութեան լայն, լայն հորիզոններ բացաւ, ու անցաւ . . . ։

Աճէմեանի ոճը ռահուն է, գրիչն ալ ճապուկ ։

Նա ստէպ չ'երեւիր հրապարակին վրայ (եւ առ մեզ ո՞յք կ'երեւին). բայց երբ կ'երեւի, գոհարա-զարդ մատանիկ մը ունի իր թեւոց տակ. «Ժպիտ» մըն է այն՝ որ յերեսս ի վեր կը ցոլանայ, «Արտա-սուք» մըն է այն՝ որ յաչկունս ի վար կը կաթկը-թէ . . . ։

Երբ կ'երեւի Աճէմեան, «Լոյս» մըն է այն՝ որ կը փայլի ու կը պլպլայ եւ կամ, «Ստուեր» մը որ կու-գայ խաւարին աշխարհէն, ու կ'երթայ դէպ ի խա-ւարակո՛ւռ աշխարհը ։

Աճէմեանն ընթերցողը այնպէս կը զգայ՝ թէ զՊէ-շիկթաշլեան կը կարդայ. երկոքին Մկրտիչք կար-

ծես նոյն յուզումն ու նոյն յղացումն ունին, նոյն կորո՛վն ու նոյն գորո՛վը։ Սակայն ո՛չ այն փափուկ երանգը կը տեսնես, որով Պէշիկթաշլեան «Զեփիւռ»ն ու «Գարուն»ը նուագեց, ոչ ալ այն խորազգաց միտքը, ներքոյժ ու թափանցկոտ ոգին, որով «Օրհասական»ն ու «Մերձ ի մահ»ն ոգեգրեց։

Չես գտներ դարձեալ այն երկնաալաց երեւակայութիւնը, այն հանճարալիր խանդը, ոչ ալ բոցաթռիչ խոյանքը, որով ճարտարեց Պէշիկթաշլեան իր «Թատրերն» ու հրաշագործեց քերթուածներն։

Մին՝ բանաստեղծ լինելու համար ծնած, միւսը՝ բանահիւսութեան սիրող մ'է եղած. մին՝ Պառնասեան աղու դաշնակը կը յօրինէ, միւսն՝ անոր հեշտընկալ եղանակները կ'ածէ. սա ստեղծող մըն է, նա յարդարող մը։

Սակայն չմոռնամք յաւելուլ թէ մեծն Մկրտիչ, իր կոչման, իր արուեստին յարմար է, մինչ կըրտսերն՝ իր բազմազբաղ պաշտօնէն ժամեր ու վայրկեաններ չորթելով քնարը գրկած է։

Հետեւաբար սա արուեստագէտն է, նա՝ արուեստասէրը. մին՝ փառք կը սպասէ, միւսը պարծանք. զայս կը պաշտես, զայն կը սիրես։

Եւ յիրաւի չի սիրուի՞ր այն բանաստեղծն որ հեծեծեալ հոգեխանդ մրմունջներով իր սրտին սուգը կը յայտնէ բանաստեղծ Թէրզեանին, որոյ մեղմօրօր քընարին թրթռուն ձայնն արձագանգ կուտայ մինչեւ մեր մթազգած հոգւոյն խոր յատակը.

«Զեփիւռք ղողղոջունք Պոսփոր՝ ափերէն,
Բարեկամ, անոյշ երգերդ ինձ բերեն.
Ներդաշնակ ձայնէդ առնեմ զիմ կարօտ,

Ծագէ սեւ սըրտիս մէջ քո առաւօտ .
Վէրքերուս վերայ աստղունք կը շարես ,
Մատներուդ ծայրէն վարդ շուշան պէս պէս
Բարդ ու բարդ տեղան , շրթունքէդ ալ գութ ,
Բայց կայծակն ունիս պահած աչքիդ մութ .
Ծաղկունք վեր կանգնին ծըծել քոյին շունչ
Հրեշտակք ալ ուզեն սորվիլ քո մրմունջ ։

Ես ալ երգեցի երբեմն եռանդուն ,
Ձիս ալ գըրգուեցին յոյս , ծաղկունք , գարուն .
Բայց , աւա՜ղ , հիմա սեւ ամպ , սեւ գիշեր
Ծածկեց զառաւօտն իմ , ծածկեց զաստղեր .
Բնութիւն ինձ համար փոխել է շիրիմ ,
Պաշտած փառքերուս վերայ արդ շրջիմ . . . ։

Երգք հրճուանք անցնին , լոկ մընան վշտեր ,
Արեւ խնդրելով՝ չօշափեմ ըստուեր ,
Սէր նշմարելով՝ սիրտ իմ առնու թունդ ,
Ձեռքըս կարկառեմ բայց գտնեմ անդունդ .
Օտար հողու մէջ սիրտըս կտրած սառ՝
Երթամ լեռնէ լեռ , անտառէ անտառ .
Կախուած վըհերուն եզերքէն անվախ՝
Խորերը կ'ուզեմ ընկղմիլ ուրախ ։
Մթին մէջ միայն վառի սիրտ հոգիս ,
Միայն սուգի մէջ քեզ խնդայ հոգիս . . . ։»

Այս գեղեցիկ որքան մելամաղձիկ շեշտերն , բանաստեղծի հոգեկան ներշնչումներն , ո՛րքան խոր կ'ազդեն ի մարդն՝ որ ի լուր այս թխպոտ ու դառնագղորդ խորհրդածութեանց , սեւ գծից ու սեւաթոյր մտածութեանց , յորս քերթողին միտքը կը թափառի , հսկայ անդունդներու վրայ կը շրջի . —

ըսէ՛, Եղիա, Նիրվանայի՞ն կը փարի. — ի լուր այս հեծութեանց, կ'ըսեմ, մարգս բանաստեղծին հետ կը վերանայ, անծայրածիր սահմաններ կը սաւառնի եւ այդ անեզրութեան ու գծծութե՛ան վրայ պահ մը քամահրանաց բաժակը կը պարպէ. պահիկ մըն ալ յետոյ, այս ցաւոց հովտին տարաբաղդիկ զոհերուն վրայ դառնութեանց արտօսրը կը թափէ։

Է՛հ, մարդն իր վրայ ի՞նչպէս չարտասուէ...։

Տխուր չէ՞ այս. եւ սակայն միտքը ո՞ւր պիտի ապաստանի, մահուան նպատակն ո՞ւր պիտի հասնի. ճակատագի՛ր, ճակատագի՛ր, ո՞ւր պիտի տանիս մարդկային այս նախիր։

«Երգք, հրճուանք անցնին, լոկ մընան վշտեր.
Արեւ խնդրելով՝ չօշափե՛մ ըստուեր...։»

Վա՜հ, պիտի ջնջուի՞ մեր սրտին սէրը, պիտի կոտըրտի՞ յոյսերնուս սլաքը. եւ սակայն կարող չենք կապտել մեր զգացումը, հեշտին անրջոց վայելումը. այսու հանդերձ պիտի երթանք սուզիլ ի խորս մահահանգոյն նիրհմանց, ի ծոց բացարձակ անէութեանց, ուր կենաց հորիզոնը կը սպառի եւ դատարկութեան ահաւորութիւնը կը սկսի։

Աճէմեան կը սիրէ գաղափարաց աշխարհը, կը սիրէ հոգւոյ խորախորհուրդ թատրը, անդ ի հանդէս բերելու աղեգորով ողբերգութեանց գաղտնիքը, կենաց հակապատկերներու դժխեմ նկարագիրը։

Այո՛, կեանքը իր անյատակ վիհերն ունի. կեանքը դարձեալ իր գոյութի՛ւնն, իր ոչնչութի՛ւնն ալ ունի. երկու եզրեր, երկո՛ւքն ալ անհունութիւններ...։

Մեր Աճէմեան միոյն վրայ կը դնէ իր զմայլման ու հիացման կնիքը, միւսին վրայ կ'ոգեգրէ դիւրանուագ

չեչտերով տրեզե՛րական ունայնութեան տխուր մահերգը . . . ։

Աճէմեան, սակայն, միշտ յոռետես մատենագիր մը չի սեպուիր. Աճէմեան լաւատես գրիչ մ'ալ չի համարուիր. «Ժպտին» ծայուց մէջ «Արտասուքը» պահած չէ՞ մի. «Լուսոյ» ետեւ՝ թանձր «Ստուերը» շօշափած չէ՞ մի . . . ։

Այն ինչ հանդիսատես կը լինիս իր ժպիտներուն, որոց փթթումը կը զգաս դիմացդ վրայ, եւ ահա խաւարի վարագոյրը կ'իջնայ իսկոյն՝ արտասուաց կաթիլներով ողողուն։ Այն ինչ լուսոյ ցոլմանց ու ճառագայթից որքանուէր նշուլից ներքեւ հոգիդ կը խայտայ, եւ ահա ստուեր մը, դանդաղկոտ եւ ահարկու, յեղակարծուստ կը կանգնի առջեւդ, դժոխածին խուճապներով զինեալ, ուրուականաց սառնութեամբ առլցեալ. կուգան ողջա կենացդ առաւօտն ամպոտելու եւ գոյութեանդ միջօրէն նսեմացընելու . . . ։ Վա՜հ, չէ՞ դա մահուան այն յամր ու պաղ զօղանջն, որ զանգակին խուլ թրթռանքին թեւերով թափ կուտայ ականջիդ, մինչ կեանք մը, ա՜հ, պատանով մը կը լուծուի՜, կը քայքայուի՜ ։

Քերթողը գերեզմաններու առջեւ ի՞նչ չէ ։ Հո՛ն ուր այնքան երազներ կան մթերուած, կեանքեր զրաւուած, յոյսեր ցիրուցան եղած. հո՛ն, յաւիտենականին ծոցը, հողին խորոցը մէջ, ուր գանկաց եւ ուղեղաց հսկայ խորհուրդներ զեռնոց կեր եղած եւ կամ թերեւս ստորերկրեայ հրաբուխներ յարուցած են . ի՞նչ է անդ քերթողն ։

Այլ երեքեան ուրուականք ըստ գաղիացի հեղինակին կանգուն կեցած են քերթողին առջեւ . Ա-

Ճէմեան կը նայի Ցաւստին, Տօնժուանին, որոց մին կը ներկայացնէ գիտութեան ընդունայնութիւնը, միւսը կը մարմնացնէ սիրոյ ընդունայնութիւնը. առնեցմէ չծնա՞ւ «Ժպիտն ու Արտասուքը», «Լոյսն ու ստուերքը»։

Այսպէս ահա իր սրտի ովկէանու մէջ ալեծածան կ'իջնէ, նաւաբեկող միտքը՝ անդնդոց անհելի ընդերքը ու անոր ահարկու ոչնչութիւնը կը չափէ։ Անհունի դատարկութեան խորխորատն է այն, ուր ո՜րքան մարդիկ ընկղմած են, ո՜րքան ուղեղներ սպառած։

Մկրտիչ Աճէմեան լաւագոյնս կը յաջողի իր այս կարգի տողերուն մէջ, ամփոփելու սրտին կսկիծն ու մորմոքն, որք իր հոգւոյն մէջ կը կաթկթեն այն սեաւ մաղձն որ թոյն է, եւ այն դառն հեգնութիւնն որ կարծես զբաղդն կ'արհամարհէ կամ զմահն կը ծաղրէ։

Աճէմեան, բանաստեղծական երկերէ զատ, թարգմանած է թատերգութիւններ, Լամընէի հատուածներ, Լաֆոնթենի ու Պէրանժէի քերթուածներ։

Ստուգիւ չի սիրե՞ր մարդ այն բանահիւսն որ անզուգական բարեկամին անդարձ մեկնումին առթիւ, չնաշխարհիկ նուագով, սրտագին ալ մրմունջով կը հարցնէ. «Ո՞ւր կ'երթան մեր հոգիք»։

Օտեանի մը գագաղին առջեւ, այս հարցումը միայն կրնար ըլլալ, Անոր՝ որ ոչ միայն մտաց այլ եւ հոգւոյ մեծ մարդն էր։ Ա՜հ, ո՞ւր կ'երթան մեր հոգիք. արդեօք հո՞ն ուր կերթան մեր իղձերը, մեր մտաց տխրութիւնները, ուր որ կը դիմէ գետակն, խոխոջուն առուակն։

Ա՜հ, ո՞ւր կ'երթան մեր հոգիք. — արդեօք հո՞ն

ուր մեր հաւատքը կը վերանայ ու խունկը կը բարձրանայ ։

Ո՞ւր կ'երթան մեր հոգիք, Ազնիւ Աճէմեան. — ուր որ վերջ ու վախճան չկայ, ուր դառնութիւն ու տառապանք չկայ. չկայ միշտ, յուսախաբո՛ւթիւն ալ չկայ, եւ ուր թերեւս բազում երանութիւն, երջանկութիւն կայ, Յաւիտենական մը, Աստո՛ւած մը կայ։

Ո՞ւր կ'երթան մեր հոգիք. — Յանհունութիւն ու յանմահութիւն կ'երթա՞ն. յոչնչութիւն ալ չե՞ն երթար արդեօք։ Ո՛վ գիտէ իրօք....։

Բայց թողում որ դու խօսիս, թողում որ դու լսելի՛ լինիս.

«Ո՞ւր երթան հոգիք, միթէ հո՛ն ուր շունչ
Հողմոց թափառիկ երթայ անտրտունջ.
Կամ հո՛ն ուր անդարձ թաւալին ալիք,
Միթէ հո՛ն երթան եւ մարդոց հոգիք....։
Դու ոչ խորշէիր ննջել մահու քուն,
Զի ոչ վախնայիր զարթնուլ յետ մահուն.
Պատմէ՛ թէ գո՞հ ես, թէ լցա՞ն փափագ,
Եւ կարօտ սրտիդ անեզր եւ անյագ։
Պատմէ՛ թէ մեր կեանք՝ մի տգեղ երազ՝
Հանդերձեալ կենաց է յառաջավագ,
Եւ թէ հոն միայն մեզ հեշտ անպղտոր
Երազներ անվերջ՝ միշտ չքնաղ եւ նոր....։
Մեր հորիզոնէն այսպէս մեկնեցար,
Եւ երկբայութեան զիս պատեց խաւար.
Թէ քո հետ տանիս դու մահուան գաղտնիք,
Ո՞վ ինձ մեկնէ թէ ո՞ւր երթան հոգիք....։

*
* *

*Ո՞ւր երթան հոգիք . . . իբրեւ ծաղկանց բոյր*
*Միթէ կը ցրուի՞ն . . . իբրեւ մեղմ համբոյր,*
*Իբրեւ երգ թռուցիկ կը մարի՞ն միթէ .*
*Հապա ո՞ւր երթան հոգիք . . . —*
*. Ո՞վ գիտէ »։*

*Այս վերջի տունը մանաւանդ ամենագեղեցիկն է . նո՛ւրբ, զգայնիկ բանաստեղծութիւնը իր շքեղութեամբն ու փափկութեամբը, իր ուժգնութեամբն ու վսեմութեամբը կ'երեւի՛, կը փայլի՛ ։*

*Սակայն վերջաբանը մեծին Լամարթինեայ յատագայ պարբերութիւնը կը յիշեցնէ ինձ, ուր քերթողն իրաւամբ կ'ըսէ .* «L'esprit humain veut donner un visage aux idées , un nom, un cœur, une âme, uue individualité aux choses .»

*Մարդս այսպէս է . մտաց յագուրդ տալու , զանտեսանելի՛ն , զանիմանալի՛ն ըմբռնելու եւ լուծելու համար ի՛նչեր կը հարցափրէ, ի՛նչ բաներ կ'ոչնչացնէ։*

*Արդ , քո մտերիմդ ալ , Աճէմեա՛ն , պատասխան չի տար հարցմանդ . Օտեան ալ ցրտասարսուռ չիրմին պէս կը մնայ լո՛ւռ , յաւիտեան լո՛ւռ . իսկ քո հարցմանդ արձագանգն ալ ի զո՛ւր պիտի կրկնեն համայն դարերն ու խոլ մարդերն՝ թէ ո՞ւր կ'երթան մեր հոգիներն ։*

*Այո՛, յաւիտեան չպիտի պատասխանեն այն հոգելո՛յս ոգիք , եւ ցոյց չպիտի տան տեղն . . . ուր կ'երթան մեր հոգիք։*

*Ա՜հ , թանձր է , չա՛տ թանձր , մտերմիդ հողեղէն անկողինը , ուստի անթափանց պիտի մնայ ձայնդ ։ Բաքէ՛ , խոր է անոր քունը, յաւիտենակա՛ն է անոր*

նինջը, ալ չունի առաւօտ զարթնլոյ, ա՛լ չունի տիւ գործելոյ։ Մշտնջենական գիշեր մըն է այն հողակերտ բնակարանը, ուր կը մտնէ մարդ, թերեւս իսպառ չելնելու համար . . . ։

Ե՞րբ արդեօք, Աղնի՛ւ Աճէմեան, լոյսը պիտի թափանցէ ու ձայնը պիտի զօրէ հասնիլ այդ դամբաններուն, այդ գերեզմաններուն մէջ։

Կա՞յ արդեօք այդ մեծ լոյսն, այդ հզօր ձայնն, որ օր մը փողփողի ու որոտայ այդ անդրաշխարհեան անյարիր ու անօդ մթնոլորտին մէջ, ինչպէս կը շողշողայ ու կ'որոտայ աստ, փայլեցնելով իր կենսատու ճառագայթներն ու հասցնելով փրկարար արձագանգը մինչեւ ի դրունս աստեղաճեմ երկնից, օթեւան հոգւոցն անմահից . . . ։



## ՄԻ ՔԱՆԻ ԽՕՍՔ
## ԱԽՏԱՅԻՆ ԺԱՌԱՆԳՄԱՆ(1) ՎՐԱՅ

*Բժշկական գիտութեան թէեւ ամենէն մթին, այլ կարի շահաւէտ խնդիրներէն մին է հիւանդութեանց պատճառներու քննութիւնը. վասն զի անոնց ծանօթութեամբ կարելի է ոչ միայն, անհատական եւ հանրային առողջապահութիւն մը հաստատելով, այդ ախտերու ծագումն արգելուլ, այլ նաեւ յաճախ բժշկել իսկ զանոնք։*

*Թէպէտ երկայն դարեր բժիշկք եւ գիտունք հետամուտ եղած են գտնելու այդ պատճառներն, այլ այն ատենուան սահմանափակ ծանօթութիւնք եւ անբաւական միջոցք չթոյլատրելով հասնիլ ճըշմարտութեան, ինչպէս որ բժշկութեան ամէն ճիւղերու մէջ յոյժ սակաւաթիւ իրական ճշմարտութիւններ միայն կրցած էին երեւան գալ, բժշկութեան այս մասին մէջ եւս յաճախ անորոշ, վերացական եւ մինչեւ իսկ ենթադրական եւ սխալ ծանօթութիւններ իբր կատարեալ ճշմարտութիւններ ընդունուած էին։*

---

(1) Hérédité․ — *Թէպէտ ժառանգականութիւն բառը սովորաբար կը գործածուի այս իմաստով, բայց մենք նախամեծար համարեցինք ժառանգումն բառը, առաջինն աւելի համապատասխան նկատելով* héréditarité *բառին, այսինքն համանշանակ ժառանգելիութեան։*

Այս վիճակ երկայն դարեր տեւելէ յետոյ, Ներկայ դարուս, մանաւանդ նորա վերջին քառորդին վերապահուած էր բժշկութեան այս մասին վրայ եւս ճըշգրիտ ծանօթութիւններ ստանալ։

Վերջին տարիներս, մանաւանդ, բժշկական գիտութիւնն ի բաց թողած է, արդարեւ, ամեն ինչ որ դարերէ ի վեր, սերունդէ սերունդ, հաղորդուած էր իբր աւանդութիւն, եւ սկսած է վերստին փնտռել, քննել, փորձել, ստուգել ինչ խնդիր որ իյնայ իւր խուզարկութեանց տակ, եւ ընդունիլ այն ծանօթութիւնները միայն որք այդ բովէն անցնելով երեւան կուգան իբր ճշգրիտ եւ անվիճելի.

Այս եղանակը, սակայն, շատ դժուարութեանց դուռ կը բանայ, այնպէս որ ամենապարզ երեւոյթ մը, որ դարերէ ի վեր իբր որոշ ճշմարտութիւն ընդունուած էր, այսօր շատ բժշկաց եւ գիտնոց մէջ մեծ վիճաբանութեանց եւ դժուարին փորձարկութեանց ենթարկուած է, եւ տակաւին չէ կրցած իւր վերջնական բացատրութիւնն ստանալ։

Պարզ օրինակ մը կը բաւէ զայս ապացուցանելու։ Պաղը, ցրտառութիւնը, որ հազարաւոր տարիներէ ի վեր իբր ամենազօրաւոր եւ ամենահասարակ պատճառ մը նկատուած էր, այժմ մեծապէս իւր կարեւորութիւնը կորուսած է, այնպէս որ շատ բժիշկք յոյժ երկրորդական ազդեցութիւն մը կը վերագրեն նմա, եւ կան բժիշկներ իսկ որք բոլորովին կը մերժեն նմա որ եւ է ազդեցիկ դեր՝ իբր որոշ պատճառ հիւանդութեանց։

Մեր նպատակէն դուրս լինելով խօսիլ աստ ախտային ընդհանուր պատճառաբանութեան վրայ,

կ'ուզեմք մի քանի ծանօթութիւններ տալ այն գըլխաւոր երեւոյթին վրայ, որ հիւանդութեանց ծագման մասին այնչափ մեծ ազդեցութիւն ունի, եւ որոյ վերայ բժշկական գիտութիւնը վերջին տարւոյ մէջ ընդարձակ խուզարկութիւններ եւ մեծ յեղաշրջումներ կատարած է, որոցմէ, եթէ ոչ այժմէն, գոնէ մօտաւոր ապագայի մը մէջ, մարդկութիւնը մեծամեծս պիտի օգտի։ Այդ երեւոյթն է ժառանգումն։

Ինչպէս որ դեղաբանական, անդամազննական, բնախօսական, հոգեբանական այնչափ յատկութիւնք սերունդէ սերունդ կ'անցնին, նոյնպէս եւ հիւանդութիւններէ ոմանք ծնողներէ կ'անցնին զաւակաց։ Եւ ինչպէս որ վերոյիշեալ յատկութիւնք երբեմն ծննդեան ժամանակէն կ'որոշուին եւ երբեմն ետքէն, կենաց այս կամ այն շրջանին, այս կամ այն պարագային մէջ, նոյնպէս ալ ժառանգեալ հիւանդութիւնք իրենց յատուկ ժամանակներուն եւ պայմաններուն կ'սպասեն երեւան գալու համար։

Ժառանգելի հիւանդութիւնք երկու մեծ կարգերու կրնան բաժնուիլ. անոնք որք սերունդէ սերունդ կ'անցնին ուղղակի, այսինքն միեւնոյն հիւանդութեան ձեւով, եւ անոնք որք ուրոյն հիւանդութիւն մը չեն համարուիր եւ յաջորդ սերունդին կ'անցնին կազմային վիճակի մը ձեւով, որ՝ իրաւամբ՝ պարտէր աւելի անդամազննութեան վերաբերիլ քան ախտաբանութեան։

Այս վերջին կարգին կը վերաբերին, օրինակի համար, մորթին, մազերուն, աչքերուն գոյնը, գիրութիւնն ու նիհարութիւնը, երկայնահասակ կամ

Այս վիճակ երկայն դարեր տեւելէ յետոյ, ներկայ դարուս, մանաւանդ նորա վերջին քառորդին վերապահուած էր բժշկութեան այս մասին վրայ եւս ճըշգրիտ ծանօթութիւններ ստանալ։

Վերջին տարիներս, մանաւանդ, բժշկական գիտութիւնն ի բաց թողած է, արդարեւ, ամեն ինչ որ դարերէ ի վեր, սերունդէ սերունդ, հաղորդուած էր իբր աւանդութիւն, եւ սկսած է վերստին փնտռել, քննել, փորձել, ստուգել ինչ խնդիր որ իյնայ իւր խուզարկութեանց տակ, եւ ընդունիլ այն ծանօթութիւնները միայն որք այդ բովէն անցնելով երեւան կուգան իբր ճշգրիտ եւ անվիճելի.

Այս եղանակը, սակայն, շատ դժուարութեանց դուռ կը բանայ, այնպէս որ ամենապարզ երեւոյթ մը, որ դարերէ ի վեր իբր որոշ ճշմարտութիւն ընդունուած էր, այսօր շատ բժշկաց եւ գիտնոց մէջ մեծ վիճաբանութեանց եւ դժուարին փորձարկութեանց ենթարկուած է, եւ տակաւին չէ կրցած իւր վերջնական բացատրութիւնն ստանալ։

Պարզ օրինակ մը կը բաւէ զայս ապացուցանելու։ Պաղը, ցրտառութիւնը, որ հազարաւոր տարիներէ ի վեր իբր ամենազօրաւոր եւ ամենահասարակ պատճառ մը նկատուած էր, այժմ մեծապէս իւր կարեւորութիւնը կորուսած է, այնպէս որ շատ բժիշկք յոյժ երկրորդական ազդեցութիւն մը կը վերագրեն նմա, եւ կան բժիշկներ իսկ որք բոլորովին կը մերժեն նմա որ եւ է ազդեցիկ դեր՝ իբր որոշ պատճառ հիւանդութեանց։

Մեր նպատակէն դուրս լինելով խօսիլ աստ ախտային ընդհանուր պատճառաբանութեան վրայ,

կ'ուզեմք մի քանի ծանօթութիւններ տալ այն գըլ-
խաւոր երեւոյթին վրայ, որ հիւանդութեանց ծագ-
ման մասին այնչափ մեծ ազդեցութիւն ունի, եւ
որոյ վերայ բժշկական գիտութիւնը վերջին տարւոյ
մէջ ընդարձակ խուզարկութիւններ եւ մեծ յեղա-
շրջումներ կատարած է, որոցմէ, եթէ ոչ այժմէն,
գոնէ մօտաւոր ապագայի մը մէջ, մարդկութիւնը
մեծամեծս պիտի օգտի։ Այդ երեւոյթն է ժառան-
գումն։

Ինչպէս որ դեղաբանական, անդամազննական,
բնախօսական, հոգեբանական այնչափ յատկութիւնք
սերունդէ սերունդ կ'անցնին, նոյնպէս եւ հիւան-
դութիւններէ ոմանք ծնողներէ կ'անցնին զաւակաց։
Եւ ինչպէս որ վերոյիշեալ յատկութիւնք երբեմն
ծննդեան ժամանակէն կ'որոշուին եւ երբեմն ետքէն,
կենաց այս կամ այն շրջանին, այս կամ այն պա-
րագային մէջ, նոյնպէս ալ ժառանգեալ հիւան-
դութիւնք իրենց յատուկ ժամանակներուն եւ պայ-
մաններուն կ'սպասեն երեւան գալու համար։

Ժառանգելի հիւանդութիւնք երկու մեծ կարգե-
րու կրնան բաժնուիլ. անոնք որք սերունդէ սերունդ
կ'անցնին ուղղակի, այսինքն միեւնոյն հիւանդու-
թեան ձեւով, եւ անոնք որք ուրոյն հիւանդու-
թիւն մը չեն համարուիր եւ յաջորդ սերունդին
կ'անցնին կազմային վիճակի մը ձեւով, որ՝ իրաւամբ՝
պարտէր աւելի անդամազննութեան վերաբերիլ քան
ախտաբանութեան։

Այս վերջին կարգին կը վերաբերին, օրինակի
համար, մորթին, մազերուն, աչքերուն գոյնը, գի-
րութիւնն ու նիհարութիւնը, երկայնահասակ կամ

կարճահասակ լինելը, մորթին եւ լորձամաշկերուն[1] նրբութիւնն կամ պնդութիւնը, ականջներուն բարեկազմ կամ յոռեկազմ լինելը, եւլն։ Ուրիշներ ալ կան, որք բնածին չեն, այլ յետոյ երեւան կուգան։ Այսպէս են մազերու սպիտակցումը, ճաղատութիւնը, սրատեսութիւնը, կարճատեսութիւնն եւ հեռատեսութիւնը, եւլն։ Որչափ որ ալ սոյն հանգամանք պարտին հիւանդութիւն չնկատուիլ, այլ լոկ կազմային վիճակ, սակայն մեծապէս կը ներգործեն մարդուս առողջութեան վրայ իբր տրամադրիչ պատճառ, եւ այս կամ այն հիւանդութիւնն ընդունելու տրամադրութիւն մը, մասնաւոր դիւրութիւն մը կուտան մեզ։

Այս խնդիրը բաւական չահեկան լինելով, կ'արժէ որ մի քանի ծանօթութիւններ տամք անոր մասին, ցուցընելով ի ստորեւ մի քանի օրինակներ այն զանազան երեւութից որք անկէ կը բղխին։

Ընդհանուր շնչերակային դրութեան յատուկ հիւանդութիւն մը կայ աթէրօմ[1] կոչուած, որոյ պատճառաւ շնչերակաց ներքին թաղանթը, փոխանակ լերկ եւ ողորկ լինելու, տեսակ մը կազմալուծութեան կ'ենթարկուի, զոր կարելի է նմանցընել երկաթի ժանգին։ Այս հիւանդութիւնը, որ միջինէն վեր, ծերութեան սկզբնաւորութեան մէջ կ'սկսի յաճախ, իրարմէ ըստ երեւութին բոլորովին տարբեր հիւանդութիւններ յառաջ կը բերէ՝ ըստ այն շնչերակին որ անկէ վարակեալ է։ Այսպէս, օրինա-

(1) Muqueuse.
(2) Athéromasie.

կի համար, եթէ սիրտն, որոյ անդամազննական կազմութիւնը չնչերակաց ընդհանուր կազմութեան նման է, վարակեալ լինի այդ ախտէն(1), սրտի հիւանդութեանց բազմազան տեսակներն յառաջ կուգան, որք իրարմէ կը տարբերին սրտին այն մասին, ծակին կամ կափարիչին համեմատ որ անկէ վարակեալ է։ Այսպէս է նաև իջուածք(2) կոչուած հիւանդութիւնն ևս, որ յառաջ կուգայ ուղեղին այս կամ այն չնչերակին խցումէն կամ պայթումէն, և որ ուղեղին այս կամ այն մասին համեմատ տարբեր ձևեր և տարբեր սաստկութիւններ կ'ունենայ. զգայազրկութիւն(3), անդամալուծութիւն(4), ջղաձգութիւն(5), կիսահարութիւն(6), խելայեղութիւն(7) ևլն։ Նոյնպէս է նաև ծերական կամ չոր փտախտ(8) կոչուած հիւանդութիւնն, որ յաճախ ոտներուն մատներէն սկսելով դէպ ի վեր յառաջ կը քալէ, և որ յառաջ կուգայ սրունքին չնչերակաց խցումէն։ Չնչերակաց այս թերութենէն կը ծագի նաև չնչերակաց անգայտացումն(9), որ յառաջ կու-

---

(1) Իսկ այն սրտի հիւանդութիւնք, որք ուրիշ պատճառներէ․ մանաւանդ յօդացաւէ յառաջ կուգան և սովորաբար երիտասարդ կամ չափահաս անձանց յատուկ են, ժառանգելի չեն։

(2) Apoplexie·

(3) Perte de connaissance.

(4) Paralysie.

(5) Convulsion.

(6) Hémiplégie·

(7) Démence.

(8) Gangrène sénile կամ sèche.

(9) Anévrisme.

գայ նոյն ախտէն վարակեալ շնչերակին առաձգութեան պակասութենէն ։ Կը հետեւի ուրեմն որ, եթէ ծնողաց միոյն սիրտը կամ այս կամ այն շնչերակը կանուխէն վարակեալ ըլլայ այդ ախտէն, իւր զաւակն ալ, այն տարիքներուն մէջ, կամ աւելի շուտ՝ եթէ երկու ծնողք եւս ունենան զայն, պիտի կրնայ հաւասարապէս ունենալ նոյն հիւանդութիւնը կամ նորա մի տարբեր ձեւը տարբեր գործարանի մը մէջ։ Եթէ, զոր օրինակ, հայրը կամ մայրն իջուածք ունեցաւ, զաւակը տրամադիր է ունենալ նաեւ, բաց իջուածքէ, սրտի այս կամ այն հիւանդութիւն, փտախտ, շնչերակի անգայտացում, եւլն. եւ փոխադարձաբար ։

Յօդախտ(1) կոչուած հիւանդութիւնն ալ մարմնոյն կազմուածքին մէկ թերութիւնն է, որու պատճառաւ, մեզին միջոցաւ մարմնէն դուրս արտաքսուելիք բնամէզ(2) կոչուած նիւթին տեղ, որ ջրոյ մէջ լուծելի է, մեծ քանակութեամբ կը կազմուի մի այլ նիւթ եւս միզային թթու(3) կոչուած, որ նուազ թթուածին կը պարունակէ քան բնամէզն, եւ որ՝ անլուծելի լինելով՝ չի կրնար ամբողջովին մարմնէն դուրս արտաքսուիլ մեզին միջոցաւ, եւ այս կամ այն գործարանին, մանաւանդ երիկամանց եւ յօդուա-

---

(1) Arthritis. – Պէտք չէ շփոթել սոյն բառը rhumatisme բառին հետ, որ բոլորովին տարբեր նշանակութիւն ունի ։ Չունենալով և չգտնելով յարմարագոյն բառեր, Arthritisը յօդախտ անուանեցինք, յօդացաւը պահելով՝ ըստ ընկալեալ սովորութեան՝ rhumatisme բառին ։

(2) Urée.

(3) Acide uriqe.

ծոց (ձեռքի եւ ոտքի մատներուն, մանաւանդ ոտքի բթամատին) վրայ քարացեալ ձեւով կը խտանայ։ Ահա այս կերպով է որ երիկամանց քար ունեցող մարդու մը զաւակը կրնայ նաեւ ունենալ կաթուած(1) եւ փոխադարձաբար։

Ջղախտ(2) կոչուած շատ հիւանդութիւնք եւս այսպէս են։ Օրինակի համար, լուսնոտի(3) մը զաւակը կրնայ ըլլալ նաեւ խելագար, խուլ-համր, ջղագար(4) անդամալոյծ, եւլն, եւ փոխադարձաբար։ Նոյնպէս կը թուին ըլլալ նաեւ յօդացաւը(5), մորթի քանի մը հիւանդութիւնք, աւշային(6) եւ արենային(7) խառնուածք, եւլն. եւլն։

Չկարծուի սակայն թէ այսպիսի պարագայից մէջ զաւակն անպատճառ ունենալու է իւր ծնողաց հի-

---

(1) Goutte· — Թէպէտ ժողովրդեան մէջ իջուածք եւ կաթուած բառերն իբր հոմանիշ կը գործածուին, բայց առաջինն այնչափ լաւ կը համապատասխանէ apoplexie բառին, և երկրորդը՝ goutteին, որ հարկ է զանոնք նուիրագործել՝ շփոթութեան տեղի չտալու համար։

(2) Névrose.

(3) Épileptique, épilepsie.

(4) Hystérique (hystérie) — ջղախտութիւն բառն՝ ըստ մեզ՝ լաւագոյնս համապատասխանող կը թուի այս ախտին քան արգանդամոլութիւն բառն, որ hystérie բառին վրայ յոռի թուած անճոռնի և սխալ բառ մ՚է։ Հապա ինչպէս անուանելու էինք այն hystérieն, որ՝ ըստ արդի գիտութեան՝ տեղի կ՚ունենայ նաեւ այր մարդուն վրայ։

(5) Rhumatisme.

(6) Lymphatique.

(7) Pléthorique.

ւանդութեան այս կամ այն ձեւը։ Եթէ այսպէս ըլլար, կարելի չպիտի լինէր առողջ անձեր գտնել։ Բժշկութիւնը կրցած չէ տակաւին որոշ բացատրութիւն մը տալ, թէ ինչպէս զաւակ մը լիապէս եւ սաստկագոյնս իսկ կը ժառանգէ իւր ծնողաց միոյն ունեցած հիւանդութիւնն, մինչդեռ ուրիշ մը զերծ կը մնայ այնպիսի հիւանդութենէ մը, ուսկից վարակեալ էին՝ իւր յղացման ժամանակ՝ ծնողներէն մին կամ երկուքն իսկ։ Ասոնք բացառութիւններ են լոկ, եւ այնպիսի պարագաներ՝ որք տակաւին շատ հեռու են լուծուելէ. զի բնութեան ամենէն խորին, անթափանցելի խորհրդոց կը վերաբերին եւ չեն կարող ենթարկուիլ մեր խուզարկութեանց ընթիւ՝ այլ դեռ անբաւական միջոցներուն։

Այս նկատմամբ է ահա որ համարիւն ամուսնութիւնք վնասակար են ընդհանրապէս, նոյն իսկ եթէ երկու ամոլք զերծ լինին որ եւ է ախտէ։ Վասն զի, եթէ իրենց մի մօտաւոր նախահայրը կամ նախամայրն ունէր մի հիւանդութիւն, որ՝ նպաստաւոր պայմաններ չգտնելով՝ երեւան եկած չէր իրենց որդւոց վրայ, այլ թաքուն վիճակի մէջ անցած էր նոցա որդւոց, այժմ, նպաստաւոր պայմանաց մէջ գըտնուելով, որպէս է երկու միեւնոյն տրամադրութիւնն ունեցող անձանց միացումն, մեծ հաւանականութիւն կը ցուցնէ երեւան գալու իւր բոլոր սաստկութեամբ։ Այսպէս է որ կը տեսնուի երբեմն առ երեւոյթս առողջ թուող ծնողաց զաւակաց այսպիսի համացեղ հիւանդութիւններէ վարակեալ լինելն։ Ամէն ոք իւր ծանօթներուն մէջ կը յիշէ սոյն երեւոյթին բազմաթիւ տխուր օրինակներ։

Գանք այժմ այն հիւանդութեանց որք , փոխանակ պարզ տրամադրութեան մը ձեւով երեւան գալու , ինչպէս են նախապէս յիշուած հիւանդութիւնք , ուղղակի կ՚անցնին ծնողներէն իրենց զաւակին ։

Հոս է ահա որ երեւան կուգայ տրամադրութենէն տարբեր տարր մ՚եւս, որ, արդի գիտութեան աքանչելի գիւտերէն մին է, եւ որոյ շնորհիւ կարելի եղաւ մեկնել ախտաբանական այնչափ խնդիրներ որք երկայն ատեն անլոյծ մնացած էին ։

Այս տարրն է միգրոբը(1) ։ Ուղղակի ժառանգման եւ փոխանցման ճշգրիտ բացատրութիւնն այն ատեն տրուեցաւ արդարեւ , երբ՝ մանրադիտին օժանդակութեամբ՝ կարելի եղաւ երեւան հանել այն անհունապէս փոքրիկ էակներն , որոց ուսումն այսօր բժշկութեան ամենօգտակար մի ճիւղը կը կազմէ , եւ հետզհետէ կատարելագործուելով հսկայական յառաջդիմութիւններ կ՚ընէ, եւ կը խոստանայ ապագային մէջ բազմաթիւ գաղտնիքներ երեւան հանել եւ լոյս սփռել գիտութեան ամենէն խաւարին խորշերուն մէջ , որք՝ առանց նորա օգնութեան՝ յաւէտ անծանօթ պիտի մնային ։

Միգրոբաբանութեան կատարած այս մեծ գիւտին շնորհիւ կարելի է արդ ըսել՝ թէ սոյնպիսի հիւանդութիւնք ծնողներէն իրենց որդւոց կ՚անցնին միգրոբներու միջոցաւ , որք , հօրն համար յղացման վայրկեանէն , իսկ մօր համար ամբողջ յղութեան միջոցին , կը հաղորդուին մանկան , եւ նորա մէջ

(1) Microbe.

ժամանակ մը լուռ եւ անվնաս մնալէ յետոյ(1), յանկարծ կը զարգանան, կը բազմապատկին եւ իրենց յատուկ նշաններով երեւան կուգան։ Հետեւաբար կարելի է ըսել թէ այն հիւանդութիւնք, որոց միգրոբները կը թափանցեն ամբողջ կազմուածքին մէջ, կրնան ժառանգելի լինիլ։ Իսկ նոքա որոց միգրոբները տեղական են միայն, այսինքն չեն թափանցեր ամբողջ կազմուածքին մէջ, չեն անցնիր ժառանգմամբ։

Միգրոբներու միջոցաւ այսպէս ընդհանուր կազմուածքին մէջ թափանցող հիւանդութիւններէ ոմանք, վաղանցիկ կերպով ներգործելով մեր մարմնոյն վրայ եւ ժամանակ մը յետոյ անհետանալով, ուրիշ հետք չեն թողուր հոն, այլ միայն այն հանգամանքը(1), որով այլ եւս զերծ կը համարուինք նոյն ախտէն։ Ասոնք են նեխական (2) սրընթաց (3) կոչուած հիւանդութիւնք, որոց գլխաւորներն են, ծաղիկը, կարմրախտը, հարսանիթը, ժանտատենդը, ժանտախտը, եւլն։ Որչափ որ ալ դատողութիւնն ենթադրել կուտայ որ, եթէ յղացման միջոցին ծընողաց մին այսպիսի հիւանդութենէ մը վարակեալ ըլլայ, զաւակն ալ պարտի նոյն հիւանդութիւնն ունենալ, բայց այս հիւանդութիւնք տեւական չըլինելով եւ բուժուելէ յետոյ որ եւէ հետք չթող-

(1) Ինչպէս որ հունտը կրնայ երկայն ատեն, տարիներ իսկ անգործ մնալ, եւ յետոյ՝ նպաստաւոր պարագայից օգնութեամբ՝ աճիլ եւ զարգանալ։

(2) Այս հանգամանքն immunité կը կոչուի, զոր կարող եմք թարգմանել ախտազերծութիւն։

(2) Infectieux.

(3) Aigu.

լով, անկարելի կ'ըլլայ հաստատել թէ սաղմն եւս արգանդին մէջ ունեցած էր այն հիւանդութիւնն, որ յետոյ՝ մինչեւ ծննդեան պահուն՝ անհետացած լինի։ Գիտութեան մէջ մի քանի օրինակներ կան, սակայն, այս տեսութիւնն ապացուցանող։ Ցղութեան վերջին ամսոց մէջ ծաղիկէ վարակեալ կիներ տեսնուած են, որոց զաւակունք ծննդեան կամ վիժման պահուն կը կրէին ծաղիկի որոշ նշաններ։ Արդ կարելի է ենթադրել թէ այսպիսի տղայք իրենց կենաց մէջ այլ եւս չպիտի ունենան մի եւ նոյն ախտն, զի իրենց սաղմնական վիճակին մէջ՝ իրենց մօրը միջոցաւ՝ այդ ախտին համար ախտազերծութիւն ունեցած են։ Կարելի է ուրեմն հետեւցնել ասկից՝ թէ բոլոր վերոյիշեալ սրընթաց հիւանդութիւնք եւս, եթէ պատահին մօրն՝ յղութեան միջոցին, ախտազերծութիւն յառաջ բերելու են մանկան վրայ, որ վարակուելու չէ այլ եւս նոյն ախտէն։ Բայց գիտութիւնը տակաւին իւր փորձարկութեանց եւ հակափորձերու բովէն անցուցած չլինելով սոյն խնդիրը, պէտք է զայն տակաւին վերապահութեամբ ընդունիլ։

Գալով այն ախտերուն որոց միգրոբները չեն անհետանար շուտով եւ երկայն ատեն՝ անգործ կամ գործունէութեամբ՝ կը մնան մեր մարմնոյն մէջ, եւ որք Նեխական յամրընթաց [1] հիւանդութիւնք կը կոչուին, սոցա գլխաւորն է ծիւրախտն [2] իւր բազմաթիւ ձեւերով։

---

(1) Chronique.
(2) Tuberculose·

Շատոնց դիտուած է որ ծիւրախտը ժառանգելի հիւանդութիւն մ'է։ Բայց ամէն ծիւրախտաւորի համար մօտէն կամ հեռուէն ժառանգման աղբիւր մ'որոնել եւ նմա վերագրել նոյն դէպքին պատճառն, առանց բազմակողմանի հետազօտութեամբք հաստատած լինելու թէ ծիւրախտը չէ կարող այլ եղանակաւ եւս յառաջ գալ, շատ անտեղի եւ վնասակար դրութիւն մ'է, որ երկար ատեն տիրած է բժշկաց մէջ։ Մինչդեռ նախնի բժիշկք կ'ընդունէին՝ թէ ամէն ծիւրախտաւորի ծնողաց կամ նախածնողաց մէջ անպատճառ ծիւրախտաւոր մ'եղած լինելու է, (եւ յայտնի է թէ ասկից աւելի դիւրին բան չկայ՝ ի նկատ առնելով այդ հիւանդութենէն վարակելոց ահագին թիւն,) այժմեան լուրջ բժշկաց ամենամեծ մասն, ընդունելով հանդերձ թէ երբեմն ծիւրախտը ժառանգման օրինօք կ'անցնի ուղղակի ծնողներէն զաւակաց, մի ուրիշ աղբիւր եւս կ'ընդունին ծիւրախտի, այն է փոխանցումն(1), որ ժառանգումէն աւելի յաճախ տեղի կ'ունենայ։

Բայց այս տեսութիւնը չլինելով այնչափ պարզ եւ դիւրամեկին՝ որչափ լինել կը թուի, արժան է որ մի քանի բացատրութեամբք լուսաբանեմք զայն։

Ամէն ոք դիտած է անշուշտ թէ ծիւրախտաւոր մ'ունեցած է զաւակներ, որք՝ կատարելապէս առողջ՝ չափահասութեան հասած, առողջ զաւակաց տէր եղած եւ մինչեւ իսկ ծերացած են։ Միւս կողմանէ, կան առողջ ծնողքներ ալ, որոց որդիք

(1) Contagion.

հետզհետէ զոհ գացած են ծիւրախտի, մինչդեռ ծնողք կը հասնին ծերութեան կամ մեռած են բոլորովին տարբեր հիւանդութենէ ։

Առաջին պարագային կը բացատրուէր ստենօք սա ենթադրութեամբ որ, եթէ վարակեալ ամուսնոյն ընկերն կը գերակշռէ զաւակին կազմուածքին վրայ, սա զերծ կը մնայ անկից. ապա թէ ոչ ինքն ալ կը վարակի ։ Երկրորդ պարագային համար կ՚ընդունէին թէ հիւանդութիւնը պատեհ առիթ չգտնելով՝ ծածուկ պահուած կը մնար ծնողաց միոյն մէջ, բայց նոցա զաւակաց մէջ որ եւ է պատճառով ծիւրախտն երեւան ելնելով՝ նոքա կը վարակին ։ Եւ ի հաստատութիւն սոյն տեսութեան, ի մէջ կը բերէին սա պարագայն եւս՝ թէ երբեմն իրենց զաւակներէն յետոյ ծնողք եւս կը ծիւրախտաւորուին ։

Փոխանակ զանազան առարկութեամբ մի առ մի հերքելու սոյն ենթադրութիւններն, ինչ որ չահեկանութենէ զուրկ է բոլորովին ընթերցող հասարակ ժողովրդեան համար, նախամեծար կը համարիմք պարզել աստ այն տեսութիւնն որ այժմու լուրջ գիտնոց մեծագոյն մասէն ընդունուած է, եւ որ լաւագոյնս կը բացատրէ վերոգրեալ պարագայններն եւ ուրիշներ եւս, որք կարի դժուարին անհեթեթ եղանակաւ պիտի մեկնուէին ըստ առաջին տեսութեան ։

Ծիւրախտին սկզբնական եւ միակ պատճառն է մանրադիտային ամենափոքր էակ մը, զոր յաջորդաբար ենթադրած, կասկածած եւ նշմարած էին բազում գիտունք, այլ զոր՝ զառաջինն՝ Գօխ, նշանաւոր միգրոբաբանը, գտեց, ճանչցաւ եւ ուսումնասիրեց ։

Այս գիւտով ոչ միայն գիտցուեցաւ հնտախտին ուրոյն, որոշ սերմէ մը յառաջ եկած մասնաւոր հիւանդութիւն մը լինելն, այլ նաեւ թէ ուրիշ մի քանի հիւանդութիւնք եւս, որք բոլորովին տարբեր կը թուին, ուրիշ բան չեն եթէ ոչ ծիւրախտներ: Այսպէս են խոյլը (1), (որ այժմ կը նկատուի իբր ծիւրախտային գեղձատապ (2), յօդատապ (3), ոսկրատապ (4), եւլն.), ուղեղի մաշկերուն յամրընթաց բորբոքումը, որ է ծիւրախտային մզնատապը (5), ծիւրախտային աղետապն (6) ու աղեմաշկատապը (7), լուբուսը (8), որու վրայ երկու տարի յառաջ այնչափ խօսուեցաւ Գօխի հակածիւրախտային հաչակաւոր ներարկմանց առթիւ, եւլն: Այլ, որչափ որ ալ այս բոլոր հիւանդութիւնք մի եւ նոյն սերմէն յառաջ կուգան, բայց եւ այնպէս այնչափ իրարմէ կը տարբերին ըստ տեւողութեան, ըստ սաստկութեան եւ ըստ այլ հանգամանաց, որ նոցա իրարմէ ունեցած տարբերութիւնները մեկնել կարենալու համար, հարկ է գէթ ընդունիլ զօրաւոր ազդեցութիւնն երկրորդական պարագայներու, որոց վրայ կարելի չէ խօսիլ այսչափ սեղմ յօդուածի մը մէջ:

---

(1) Scrofules, scrofulose.
(2) Adénite.
(3) Arthrite.
(4) Carie.
(5) Méningite.
(6) Entérite.
(7) Péritonite.
(8) Lupus, (Ծերբեւս՝ ուռուկ):

Արդ, եթէ յղութիւն տեղի ունենայ առաջին պարագային մէջ, որ ատեն միգրոբները տակաւին թափանցած չեն ընդհանուր կազմուածքին մէջ, զաւակն առողջ է ընդհանրապէս. իսկ երկրորդ պարագային մէջ՝ վարակեալ։ Բայց երբ վարակեալ կ'ըսենք, ի՞նչ կը հասկընանք։ Եթէ զաւակը 15-20-30-40 տարեկան եղած ատեն ծիւրախտէ վարակուի, պիտի ենթադրե՞նք թէ նա ունէր արդէն ծիւրախտի միգրոբներն, որք, այնչափ ատեն անգործ մնալէ յետոյ, յանկարծ բազմացան եւ սկսան գործել։ Այս ենթադրութիւնը, զոր դեռ բժշկաց ոմանք կ'ընդունին, տեղի կուտայ հետզհետէ սա միւս ենթադրութեան, որ լաւ եւս կը պատշաճի բազմաթիւ դէպքերու եւ աւելի ընդունելի է դատողութեան։

Եթէ միգրոբները թափանցած են սաղմին մէջ հօրը կամ մօրը միջոցաւ, զաւակը կամ կը վիժէ եւ կամ կենաց առաջին տարիներուն մէջ կը վարակուի ծիւրախտէ։ Բայց ինչպէս քիչ մ'առաջ ըսինք, երբ ծիւրախտ կ'ըսենք, չըմբռնենք միայն թոքային ծիւրախտը, որ հազուադէպ է տղայոց մէջ, այլ անոր ենթակայ եղող ուրիշ գործարաններու ծիւրախտն ալ, որ յաճախադէպ է մանկանց վրայ։ Այսպէս են մանաւանդ խոյլը, աղիքի ծիւրախտը եւ մզնային ծիւրախտը։ Եթէ մանուկն այդ շրջանէն անցաւ անվտանգ, եւ եթէ բարեկազմ է եւ առողջ, հարկ է այլ եւս ընդունիլ թէ ծիւրախտ ժառանգած չէ իր ծնողքէն։ Իսկ եթէ այդ տղան ապագային մէջ ծիւրախտաւորի, պէտք է ընդունիլ թէ ուրիշ եղանակաւ հաղորդուած է իրեն այդ ախտը. այն է փոխանցումը։

*Արդարեւ փորձուած եւ բժշկաց գրեթէ ընդհանրութենէն ընդունուած է այժմ՝ թէ ծիւրախտը փոխանցիկ եւս է իւր միքրոբներուն միջոցաւ, որոնք այլ եւ այլ կերպով կուգան հաստատուիլ մարմնոյն այս կամ այն մասին մէջ եւ ժամանակ մը յետոյ կը ներգործեն ընդհանուր կազմուածքին վրայ։ Այս գործարաններուն գլխաւորը բայց ոչ միակն է թոքը, որուն մէջ գտնուող ցնցուղներուն մակերեւոյթը, որոյ ամբողջութիւնը քառակուսի մեդրի մը չափ տարածութիւն ունի, ընդարձակ եւ յարմար վայր մ'է միքրոբներուն զետեղուելու եւ բազմանալու։ Ուրեմն եթէ ընդունինք որ ծիւրախտին միքրոբները տարափոխիկ են, պէտք է զարմանալ չէ թէ անոր համար որ այսչափ շատ է ծիւրախտաւորաց թիւն, այլ անոր համար որ բոլոր մարդիկ, մանաւանդ մեծ քաղաքաց մէջ, ամէն ոք չի վարակուիր հիւանդութենէ մը, ուսկից բռնուողք, երկայն ատեններ կէս-հիւանդ եւ կէս-առողջ, կը թափառին եւ կը տարածեն ամենուրեք իրենց ախտին թունաւոր սերմերը (մաղաս, պաղղամ)։ Ասոր պատճառը սա է թէ շնչառական եւ մարսողական գործարանք պաշտպան թաղանթ մ'ունին իրենց վրայ, որ մեծ պատուար մ'է միքրոբներու աճման դէմ եւ կը վարէ ներսէն այն պաշտօնը զոր դրսէն կը վարէ մորթը՝ արտաքին յարձակմանց դէմ։ Այլ եթէ այդ թաղանթը, պատուարը, որ եւ է պատճառաւ վնասուելով, չկարենայ իւր արգելիչ պաշտօնն ի գործ դնել, այն ատեն միքրոբներն, որք կը գտնուին ամենուրեք, այլ մանաւանդ ներշնչելի օդին մէջ՝ ամենանուրբ անտեսանելի փոշիի ձեւով, հաստատուելով*

այդ մնասեալ կէտերուն վրայ, կ՚աճին, կը զարգանան, կը բազմանան եւ յառաջ կը բերեն ծիւրախտը։

Բայց թէ ի՞նչու համար ամէն անձինք հաւասար դիւրութեամբ չեն վարակուիր ծիւրախտէ, այս երեւոյթն եւս կը մեկնուի այն ժառանգման օրէնօք որոյ վրայ խօսեցանք նախապէս։

Ամէն մարդոց կազմուածք մի եւ նոյն պնդութիւնն ու դիմացկունութիւնը չունենալով, կան անձեր որոց վերնակեղեւը (1)՝ մանաւանդ՝ չատ նուրբ է եւ ամենաթեթեւ կերպով մնասուելով տեղի կուտայ միգրոբներուն։ Արդ, վերնակեղեւին այս յատկութիւնը՝ նման այլ կազմածային յատկութեանց՝ ժառանգական է. եւ եթէ մի եւ նոյն ծնողաց զաւակունք ծնողներէն ժառանգած են սոյն յատկութիւնը. մեծապէս տրամադիր են ծիւրախտը դրսէն ընդունելու, ուսկից կրնան զերծ մնացած լինիլ իրենց ծնողներն։ Ուստի, այսպիսի պարագայից մէջ, ընդունելու է որ չէ թէ ծիւրախտը ծնողաց վրայ երեւնալէ յառաջ իրենց զաւակաց վրայ երեւցած է, այլ թէ զաւակներն իրենց ծնողներէն ժառանգած են միայն ընդունակութիւն մը, տրամադրութիւն մը այդ ախտէն վարակուելու։ Սոյն պարզ տրամադրութիւնը կը բաւէ ընդունելու ետքէն ծիւրախտին միգրոբներն, որք դրսէն կը հաղորդուին։ Եւ ի՞նչ կայ աւելի դիւրին քան փոխանցումը մի եւ նոյն սերնդէ անձերու մէջ, որք միասին կ՚ապրին, եւ որոցմէ մին վարակեալ է ծիւրախտէ։ Ամէնք–

(1) Épithelium.

նին ալ մի եւ նոյն կազմուածքն ու տրամադրութիւնն ունենալով՝ կ՚ապրին միեւնոյն մթնոլորտին, միջավայրին մէջ, եւ միգրոբներն ամէն դիւրութիւն ունին բազմութեամբ թափանցելու նոցա թոքերուն, աղեաց եւ մինչեւ իսկ արտաքին վէրքերուն մէջ ։

Այս տեսութեան ապացոյց կրնան նկատուիլ ի մէջ այլոց՝ հետեւեալ երեւոյթք, որք կարի յաճախադէպ են, եւ որք խիստ բռնազբօսիկ եղանակաւ պիտի կրնային մեկնուիլ լոկ ուղղակի ժառանգման տեսութեամբ ։

Երբ երկու առողջ ծնողաց զաւակունք հետզհետէ զոհ երթան ծիւրախտի, դիտուած է որ յաճախ նոցա վարակման մէջ երկայն ժամանակ չ՚անցնիր, այլ մի քանի ամիսէն մէկ երկու տարի միայն ։ Եթէ մնացեալք այդ միջոցներուն մէջ չվարակուեցան, այլ եւս չեն վարակուիր ընդհանրապէս ։

Վարակեալին եղբայրը կամ քոյրը, որ նորա բնակակից չէ, չի վարակուիր սովորաբար ։

Ծնողներէն մին կամ երկուքն, որք բաւական տարիքոտ լինելով կրնային զերծ նկատուիլ ծիւրախտէ, իրենց զաւակէն քիչ յետոյ կը վարակուին։ Նոյնպէս, եթէ մարդ մը ծիւրախտաւոր ըլլայ, շատ տարիներ յառաջ իւր ունեցած զաւակները պէտք չէ վարակեալ նկատել, որք ծնած էին իրենց ծնողաց առողջ եղած ժամանակ ։

Միեւնոյն սերնդէ չեղող այլ միասին ապրող անձանց մէջ եւս կը տեսնուի նաեւ որ ծիւրախտաւորի մը կը յաջորդէ ուրիշ մը եւ յաջորդաբար ։ Այսպէս կ՚ըլլան երբեմն երկու ամուսինք՝ իրարմէ վարակուելով, կամ սպասուհիէ մը յետոյ՝ ընտանիքէն մին

եւ փոխադարձաբար, կամ տան մը մէջ իրարմէ ետք բնակող անձինք, եւլն: Այս կարգի երեւոյթք կը տեսնուին նաեւ մարդոց եւ այն կենդանեաց միջեւ իսկ, որք իրենց հետ սերտ յարաբերութեան մէջ են:

Ուղղապէս ժառանգեալ ծիւրախտը, որ կը պատահի առաջին եւ երկրորդ մանկութեան մէջ, յոյժ քիչ անգամ երեւան կուգայ թոքերուն մէջ, այլ գրեթէ միշտ ներքին գործարանաց մէջ, յորս չէ կարող միգրոբը դրսէն թափանցել. այսպէս են ուղեղին թաղանթները, աղեմաշկը, ոսկորները, յօդուածները, եւլն: Եթէ ընդունինք թէ չափահաս անձանց վրայ ալ ետքէն կրնայ երեւան գալ ժառանգեալ ծիւրախտ մը, որ երկայն ատեն թաքուն մնացած լինէր մարմնոյն մէջ, ինչո՞ւ համար չափահասներու վրայ չի տեսնուիր որ ծիւրախտն յանկարծ ուղեղին մաշկերուն կամ ուրիշ ներքին գործարանի մը վրայ երեւան գայ, առանց նախապէս ուրիշ գործարաններ վարակած լինելու, որք արտաքին աշխարհին հետ սերտ յարաբերութիւն ունին եւ հետեւաբար ենթակայ են փոխանցման, որպէս են թոքը, աղիքները, միզային գործարանները, եւլն:

Գալով այն խնդրոյն թէ ի՛նչպէս ծիւրախտաւորի մը մէկ կամ մի քանի զաւակներն երբեմն զերծ կը մնան այդ ախտէն, զայդ կարելի է բացատրել ընդունելով թէ այդ տղան, թէպէտ ծիւրախտաւորէ սերած, այլ իւր սաղմնական վիճակին մէջ չէ պարունակած այդ ախտին միգրոբներն. վասն զի սոքա չէին գտնուած այն սերմի մասին մէջ, որ նորա յղ-

ղացումն արտադրած է ։ Այս պատճառաւ է նաեւ որ աւելի մեծ թուով առողջ տղաքներ կրնան ծնիլ ծիւրախտաւոր հայրերէ՝ քան ծիւրախտաւոր մայրերէ. վասն զի հօրը դերն անցողական, վայրկենական է լոկ. մինչդեռ մայրն, ամբողջ յղութեան տեւողութեան միջոցին արեամբը սնուցանելով զաւակը, աւելի մեծ հաւանականութիւն կը ցուցնէ իւր զաւակը վարակելու ։

Կը հասկցուի ուրեմն թէ գիտութեան մէջ կատարուած սոյն յեղաշրջումը լոկ վարդապետական տեսութիւն մը չէ, այլ թէ գործնական ամենամեծ օգտակարութիւն ունի. վասն զի կարելի է փոխանցումէ զերծ պահել այն անձերն որք ընդունակութիւն ունին այդ ախտին, մինչդեռ՝ լոկ ժառանգման տեսութեամբ՝ հարկ պիտի լինէր խել մը դեղեր եւ առողջապահական պատուէրներ տնօրինել, որոց մաս չպիտի կազմէր, սակայն, փոխանցումէ զգուշանալը ։ Մեր նպատակէն եւ սահմանէն դուրս է յայտնել աստ այդ ամենօգտակար պատուէրներն, զորս ընթերցողը կրնայ գտնել այլուր ։

Բաց աստի, ո՞րչափ անձինք, որք քիչ շատ իրենց առողջական վիճակին հոգածու են եւ տեղեակ ժառանգման անողոք օրինաց, պիտի յուսահատէին գիտնալով թէ որ մ'իրենք եւս, իրենց ծընողաց կամ եղբարց պէս, պիտի ծիւրախտաւորէին, եւ այս պատճառաւ եթէ ծիւրախտաւոր ալ չլինէին, պիտի կրնային ենթարկուիլ մի քանի ջղային հիւանդութեանց, ինչպէս են մելամաղձութիւն(1), տխրա-

(1) Hypochondrie.

մոլութիւն(1), մինչեւ իսկ յիմարութիւն, եւլն։

Գաղղիական ախտն եւս կրնայ մինչեւ աստիճան մը նմանցուիլ ծիւրախտին հետ, սա տարբերութեամբ միայն որ նորա միգրոբներն այնչափ դիւրաւ չեն փոխանցուիր այլոց։ Գալով ժառանգման խնդրոյն, սա եւս բազում օրէնքներ եւ բացառութիւններ ունի, որք միեւնոյն տեսութեամբ կրնան մեկնուիլ, բայց որոց մանրամասնութեանց վրայ խօսիլ շատ հեռուները պիտի տանէր զմեզ։

Մորթի մի քանի հիւանդութեանց մասին եւս, արդի նշանաւոր մորթաբաններէն բազումք կ'ընդունին՝ թէ ժառանգելի թուող մորթի հիւանդութիւնք մեծ մասամբ փոխանցմամբ կ'անցնին, որում ենթակայ են ընտանեաց զանազան անդամք՝ իրենց առօրեայ բնակակցութեան պատճառաւ։

Վերջապէս, վերջերս կատարուելու վրայ եղող մի քանի փորձեր, ինչպէս նաեւ անկողմնակալ եւ լուրջ դիտողութիւնք եւ խորհրդածութիւնք կ'սկսին բըժըշկաց կասկած տալ թէ կարկինոսն(2) եւս գուցէ փոխանցիկ հիւանդութիւն մ'է։

---

(1) Lypémanie.
(2) Cancer.

## ԾԱՂԿԵՓՆՋԻՆ ՄԷՋ ՕՁԸ

*Ինչ որ է խորշակը ծառատնկին, նոյնն է քաղաքակրթութիւնը մարդկութեան. նա կը գօսացնէ արմատին մէջ կենսատու հիւթը, սա կը ցամքեցնէ արիւնը մարդուն երակաց մէջ. քաղաքակրթութիւնն սպաննիչ տարրն է մարդկութեան։ Այլանդակ պիտի երեւի անշուշտ ի սկզբան այս կարծիքը, եւ սակայն պէտք չէ յախուռն կերպիւ դատապարտել զայն. ո՞չ ապաքէն խնդիր մը ուսումնասիրուած ատեն պարտաւոր եմք, լաւագոյն կողմերը ցոյց տալէ յետոյ, յոռի եւ մնասակար կէտերն ալ թուել։ Գեղեցիկ փնջի մը մէջ օձը կը թաքչի. ծաղկին բոյրը կ'արբեցնէ զմեզ, ինչ որ արգելք մը չի կրնար ըլլալ թունաւոր սողունը նշմարելու։*

*Մեր ազգային սահմանափակ շրջանակին մէջ միայն տեսութիւն մ'ընելով զննեմք՝ թէ ի՛նչ օգուտ ունեցաւ Պոլսեցի հայ աղջիկը քաղաքակրթուելով։*

*Պոլսեցի հայուհին վարժարան գնաց, ուսաւ, շըրջանաւարտ ելաւ. եւ ի՞նչ քաղեց. — յուսախաբութիւն եւ պատրանք. Նոր բարձր մթնոլորտի մը մէջ մտաւ, եւ չահեցաւ ինչ որ կը չահի գեղեցիկ տեսարան մը դիտելու համար սեպաձեւ ժայռէն վեր մագլցողը, այսինքն գլխու պտոյտ մ'անտանելի, բարձրութե* vertige*ը։ Ուսաւ Ֆրանսերէն, ինչ որ չար չարժառ մ'եղաւ իրեն վերծանելու Ֆրանսական այն գարշ. վէպերն որք հեշտութեամբ թոյն կը կաթեցնեն.*

մինչեւ ամբիծ հոգիներու մէջ․ մնաւ վիպական գաղափարներով․ խոճականի մ'ետեւէ վազեց, ցուրտ իրականութեան բաղխեցաւ․ եթէ տաղանդ մ'ունէր, չըմբռնեցին զինքն, էութիւնը քայքայեցին, ապագայն խորտակեցին․ եթէ խոճալ ամուսին մ'երազեց, չուկայի մարդուն հանդիպեցաւ, որոյ հետ յաւիտենական պայքար մը մղեց ու եղաւ դժբախտ։ Իսկ եթէ այնքան հզօր էր իւր բարոյականը որ պարտաճանաչ մ'եղաւ, սոսկ աւելի տառապեցաւ, քանզի յար զոհողութիւն ըրաւ։ Այլ պիտի առարկուի թէ այդ զոհողութեանց մէջ իւր անձնասիրութեան գոհացումն ու խղճի հանդարտութիւնը գտաւ․ ո՞չ ապաքէն այդ զոհողութեանց մէջ գերագոյն տառապանաց բաժակն ալ քամեց լիուլի։

Պոլսեցի հայուհին ազէտ, երջանիկ, առողջ, գեղեցիկ, զուարթ ու կայտառ էր․ զարգացեալ մտօք եղաւ իսդէռիք մը, յուսախաբ մը։

Մրցանակաբաշխութեան հանդէսի մ'առթիւ իրաւամբ չբողոքե՞ց գրագէտն՝ խրատելով աւել մը տալ հայուհւոյն ձեռք քան գրիչ ու մատեան։

Մի՛, մի պղծէք նաեւ կոյս մտքերն գաւառացւոյն. ձեր քնքոյշ ձեռքերով հարուստին լումայն կորզեցէք ո՛չ թէ լոյս սփռելու համար ի գաւառս, լոյս մը որոյ ետին սեւ խաւարը կը թաքչի, այլ բողիցածին պարտքերէն ազատելու համար գաւառացի կնոջ ամուսինն, որ իւր կարգին կը դեգերի ի Պոլիս ցեխին մէջ անկնելով ի վերջոյ։

Գաւառացի աղջիկը մաքրութեան գաղափարը չունի, կ'ըսէք․ թող հոգին մաքուր ըլլայ․ ի՞նչ փոյթ, դէ ոջիլներ կը պտտին գլխուն վրայ, գանկին ներքեւ

փոթորիկներ թող չունենայ. ինչ փոյթ, եթէ ձեւ չստանայ. երանի՜ անոնց որք կոյր են մտօք։

Եւ սակայն մարդկութեան ճակատագիրն է յառաջ երթալ. ո՞ւր. — անդնդին խորն հուսկ. բայց պէտք է, բնութեան օրէնքն է այն. պէտք է, այո՛, պէտք է.

Il faut que l'herbe tombe au tranchant des faucilles,
Il faut que dans le bal les folâtres quadrilles
Foulent des roses sous leurs pas.

## ՍԵՒ ԱՄՊԵՐ

Սեւ ամպեր երկինքն են պատեր. թխպայորդ ամպեր պաշարեր են, երկնից կապոյտն են ծածկեր. մթին են, կուգան, կը դիզուին, կը կուտակին գունդագունդ, անհետացնելով իրենց ետին լուսին եւ բոյլ աստեղաց փալփլուն։ Գիշերուան ահարկու լռութեան մէջ բուերը միայն կուլան սրտաճմլիկ վայերով. հեռուն գետնադէզ դիականց վերայ խոյացած գիշակեր անգեղք իրենց խաւարչտին մռունդը կը լափլփեն. սեւաթոյր ջղջիկներ զերդ մահահոտ եւ մահաբեր ոգիներ կը սաւառնին օդին մէջ, լսելի ընելով իրենց դիւային թեւոց ճողփիւնը. լուսոյ թեթեւ նշոյլը չկայ. ո՛հ, սեւ ամենուրեք։

Բաբէ՜, երկնից կապուտին չափ հանդարտ էր սիրտ ու վճիտ. աստեղց բոյլն իմ անհամար յոյսերս էի

մէկ մէկ աշխարհ լուսաւոր, զորս ապագային անհունութեան մէջ կ'երազէի հրճուանօք։ Սեւ սեւ ամպեր, դառնակսկիծ հոգեկան վշտաց ամպերու լեգէոն մը պատեցին էութիւնս, եւ պատրանաց բուիճակներ կուլան սրտիս աւերակաց մէջ. անգըղներ են այն բիւրաւոր իղձերս մարած ոյք, կը կրծեն լեարդս անխնայ. եւ ջղջիկները մթութեան մէջ այն ահռելի տարտամութիւններն են, այն երկիւղն վաղուան անողոքին, որք սոսկումն եւ արհաւիր կը կաթեցնեն հոգւոյս մէջ կայլակ առ կայլակ։

Ո՜հ, սեւ սեւ ամպեր երկինքն են պատեր, սրտիս երկինքն, որ ա՜յնքան վճիտ էր ու կապոյտ։

---

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ
## ՖԻՄԻԻ ՎՐԱՅ

---

Հայ գրագիտուհեաց փոքրաթիւ դասուն մէջ ունեցանք հատ մ'ալ որոյ անուան շուրջ չկար աղմուկ, եւ որ միայն իւր մտերմաց շրջանակին մէջ իբրեւ ասուպ փայլեցաւ եւ հուպ շիջաւ։ Հէ՛ք Մաքրուհի Զալեանն է դա, հրապարակին վրայ Ֆիմի ծածկանուամբ ծանօթ, որոյ կեանքն, թէ եւ փոթորկայոյզ եւ կարճատեւ, այլ խիստ գործօն եղաւ։

Այդ կինն, այլանդակ խառնուրդ բուռն զգայնութեանց, հակամէտ ծայրայեղութեանց, կանուխէն կենաց դառնագոյն ցաւոց ու պատրանաց պատահեցաւ. փորձեց սփոփ գտնել գրականութեան մէջ,

եւ իւր արիւնած սրտին բեկորներն էին. զորս երբեմն ի տես կը դնէր հասարակութեան «Կնոջ մ'օրագիրը» վերտառութեամբ։ Ֆիմիի մէջ կարողութիւն մը կար, տաղանդ մը զոր վաղ սպաննեց այն դժնդակ ջղային ախտն։

Նորա սիրելագոյն բարեկամուհիներէն մին ըլլալու գերազանց հաճոյքն ունենալովս՝ սրտին զեղումներն ալ փոփոխակի թղթակցութեան մը մէջ կ'ընդունէի յար, եւ ախորժանօք կ'ընթեռնուի ոճն որ սահուն էր, եւ գրիչը՝ սիրուն իւր տարօրինակութեան մէջ։

Տաղանդաւոր բարեկամուհիս իւր զգացմամբ սըրտին տենդայոյզ բաբախումներն կը տքնէր գիտութեան լուրջ եւ գրական ասպարիզին ցրտութեան մէջ մարել. զայդ կը բացատրէ յետագայ գրութեամբ, յորում ապագային մէջ գիտուն կին մ'ըլլալու երազը կը նկարագրէ առ իս ուղղած մէկ նամակին մէջ։

## ՄԵՐ ԱՊԱԳԱՆ

(Հատուած մը Ֆիմիի օրագրէն)

85 Նոյ. 23 Օրթաքէօյ.

«Ամէն օր խղճ մը կը վերածնի յիս, եւ տենչ մը կը մարի ընդ հուպ սրտիս մէջ... եւ ծրագրի մը աշխատակից բարեկամուհիս ալ կը մտածէ թերեւս՝ թէ օր մը պիտի մրցիմ իրեն հետ գիտութեան եւ ուսման կրկէսին մէջ. բաբէ՜...։

«Սակայն վայրապար կը հառաչեմ վերացական մարդու մը պէս. լաւ եւս է ներկայէն օգտիլ միշտ

ապագայ վշտին դէմ դնելու համար եւ եթ ։

«Ընդմիջեցի օրագիրս. եղբայրս ներս մտաւ սենեակէն, ուր գլխիկոր կը գրէի, գրքերով ծանրաբեռնուած գրասեղանիս հանդէպ.— ասեղի խնդիր մը առաջարկեց ինձ եղբայրս ... քանի մ'ասեղներ անցուցի շտապաւ իւր վերարկուին վրայէն եւ ընդհուպ վերադարձայ գրասեղանիս քով ։ Այս պահուս ընթրեաց զանգակը կը հնչեցնեն ։

«Ներկան ինձ վերապահել իմ սկզբունքս եղած է. բայց ներկային ժամ-անցը սահմանափակ է. անցեալ իղձերդ իրագործուած են. պահ մը յետոյ ընելիք որոշումներդ այնքան իրականալի չեն թուիր միշտ. առ այս մութին մէջ կամուրջ մը կը ձգեմ ներկայէս ապագայիս կապուած. թող որ յամրաքայլ ընթանամ այդ կամուրջին վրայէն ։

«Այժմու վիճակիս վրայ նախ դրամական ոյժս կը ծանրաբեռնեմ. դժբաղդօրէն այդ ոյժը, լաւ եւս է ըսեմ բեռը, շատ թեթեւ է ։ Մտիկ ըրէ ։

«Երկու անշարժ կալուածներ ունիմ եւ եթ այսօր, յորոց գոյացած հասոյթը հազիւ կը համապատասխանէ տարեկան ծախուցս. եւ եթէ քիչ մը խնայողութիւն ընեմ, այն ատեն միայն կրնամ գնել քանի մը փոքր հատորներէ կազմուած գրեան եւ մէկ երկու լրագրաց բաժանորդագրուիլ ։ Եթէ քսան երկու տարեկան հասակս յանկարծ ապստամբի ինձ դէմ, եւ մտաբերեմ լաւ հագուիլ առաջիկայ տարւոյն մէջ, այն ատեն տարի մը փոխ առնուած գրոց ընթերցումը պիտի համբարեմ մտացս մէջ ...։ Երեւակայելու է պահ մը՝ թէ ի՞նչ շահ կայ փոխ առնուած գրոց ընթերցումէն, երբ չես կարող գիշերն անկողին

մը կազմել քեզ անոնցմով, ընկղմել անոնց մէջ ու զքեզ մոռնալ . . . ։

«Սենեակ մը կը կահաւորեմ, ճիշդ այն սենեկին նման զոր Մորֆինը երբեմն ուրուագրած է աչացս հանդէպ, միայն այդ սենեկին անկեանը մի խորշն ալ անասնոց դիակներու յօշոտմանց եւ տարրալուծական փորձերու յատկացնելով. որովհետեւ մորֆինամոլ կնոջ երազը երկնից կապոյտին մէջ թաթխուած էր, ես այդ կապոյտը երկրի խաւերուն հետ պիտի խառնեմ. որովհետեւ աստեղագիտին համար գետին չկայ . ամէն տեղ զենիթ է ի հարկին ։

«Ամբողջ գիշերն հսկեցի. հազիւ ժամէ մ'ի վեր թիկնաթոռիս մէջէն յափշտակած էր զիս Մորփէոս, նիրհելու անզգալի տենչ մը զարթոյց զիս յանկարծ. գլուխս մազերուս տակ թաղուած էր. թմբիր մը կը ծանրանար վրաս. գիշերաշրջիկի մը պէս դէպ այն աղմուկը վազեցի առ խարխափ. ակնթարթի մը մէջ դիտակիս կը բաղխէի. արձանացայ անոր՝ ուշս ամփոփելու համար քիչ եւքը. ձեռքս գործիք մ'առած էի անզգալապէս ու կը դարձնէի. ուշադրութեամբ զննեցի զայն. մեծ ժամացոյց մ'էր որ կը ճռնչէր. չէ, չէ, այն շռինդը կը լսեմ որ պահ մ'առաջ թիկնաթոռէս ոստնուլ տուաւ ինձ . . . խենդի պէս սենեկիս չուրջը դիտել սկսայ. անկողինը քակուած չէր տակաւին. հետեւաբար այն գիշերը պառկած չէի երբէք. բայց ժամը առաւօտեան 6ը կը նշանակէ այս գործին, եւ այն շռինդն որ զիս զարթոյց՝ դիտարանիս մօտ կը կոչէր զիս. — 50 մանրերկրորդ կորուսած էի հովուին աստեղ (Արուսեկի) նուիրելու ժամէս ։ Ո՜հ, այս մազերն տանջանք են ինձ. զայնս

գլխուս վրայ ամփոփելու համար ծամակալ մը կ'առնեմ եւ դէմքս ու մանաւորապէս աչքս կ'ազատեմ այդ վերարկուէն. կը խոստովանիմ քիչ մ'անիծելով այն անձը որ երբեմն մազերուս գերին եղած էր, եւ թէ սորվուած էի իր յիշատակը յարգելու համար չկտրել զանոնք երբէք։

«Կապարեայ մ'ունիմ ի ձեռին, եւ թերթ մ'ալ թուղթ, Արուեստի վրայ եղած հաշիւներ ամփոփելու համար այդ թերթի վրայ. կը բանամ դիտակս եւ նորա սկաւառակն առաւօտեան աստեղ կը դարձընեմ... ա՜հ, երկինք ամպոտ են եղեր, եւ անհնար է փորձ մ'իսկ ընել ամպոց մէջէն նորա հետքն իսկ նշմարելու.—մէն մի իղձ վիհ մ'ունի ընկղմելու համար։

«Տրտմելու եւ յուսահատելու տկարութիւնն աքսորած եմ արդէն հինգ տարիներէ ի վեր. առ այս անտարբեր կը վերադառնամ կրակարանիս մօտ, խարոյկը կ'արծարծեմ, կաղնւոյ մը կոճղ կ'առնում ձեռքս եւ կը խոկամ։

«Սղոցով մը լայնքին կը կտրեմ այդ կոճղը. կաղնւոյն այդ արմատին շրջանաձեւ գծերը կ'ապացուցանեն թէ 25-30 տարեկան ծառի մը կոճղն է դա, տարակոյս չկայ նախորդ կաղնւոյ մ'արմատէն սերած, նախորդն իր նախորդէն, եւ մինչ յաջորդաբար... դայեակս յանկարծ բաղխեց դրան. քիչ մը ռամիկ է նա, հետեւաբար պէտք չէ մեր կոճղին հետ ունեցած ընկերութեան ականատես ըլլայ. շտապաւ կըրակը կը նետեմ զայն որ ակնթարթի մը մէջ կը ճարճատի... ա՜, դայեակս սամօվար մը դրաւ սեղանիս վրայ եւ թէյի փոքրիկ ափսէն. տղու մը պէս որ իւր խաղալիկներուն վրայ կ'զմայլի, կը հիանամ

ես ալ սանօվարիս վրայ. այդ հինգ տարու բարեկամս ալ ամենէն թանկագին սանօվարին չեմ փոխեր։ Ցիմի, — դայեակիս անունն է, — այլ եւս վարժ է իմ սովորութեանց. իւր պաշտօնը լրանալուն դուռս կ'եղէ. խեղճ Ցիմիս, թերեւս քիչ մը կը սիրեմ զինքն. — ի՞նչ, սի՞րել . . . ա՛, խենդի պէս ես ալ յափշտակած կարծեցի զիս մազերուս, կաղնւոյն, սանօվարիս եւ Ցիմիին հետ. չէ՛, չէ՛, կ'անարգեմ զհամայն. պէտք է։

«Հինգ տարի է որ առաւօտը սուրճ առնլու սովորութիւնը մոռցած եմ. սուրճը երազողին սահմանեալ է, թէյը գինոյն. սակայն թէյի ամենօրեայ գործածութիւնն այլ եւս չի ներգործեր մտաց վրայ. դա պարզապէս նախաճաշ մ'է ինձ այսօր։

«Երեք գաւաթ թէյ առի խորհրդածելով եւ չատ մը պաքսիմաթ կերայ կարծեմ. քանզի պնակին մէջ բուրգի մը նման բարձրացած պաքսիմաթներէն հազիւ կարգ մը մնացած է. մարսողութեան դժուարութիւն մը կ'զգամ ստամոքսիս մէջ. ի՞նչ մտազբաղութիւն Աստուած իմ։ Աստուծոյ իսկ նեցուկը չունիմ մտազբաղ վայրկեաններուս մէջ սթափելու համար. միայն» . . . . . . . . . . . . . ։

(ընդհատեալ)

*Անոնք որ մօտէն ճանչցան համակրելի Ցիմին, մեծ հաճոյքով ընթերցան անշուշտ նորա բազմերեւոյթ սրտին այս մէկ խօլ տենչն, եւ ես կը հաւատամ թէ տարաբաղդ բարեկամուհւոյս անուշակ հոգին պիտի խայտայ՝ զգալով իւր երազներն ու վշտերը բաժնուած ընթերցող հասարակութեան հետ ։*



## ԶՈՒԹՈՒՐԼՈՄԻԼՈՍ (1)

## ԲԼՐՈՅՆ ԿԱՏԱՐԸ



Կ'ողջունեմ խորհրդակոծ սրտիւ խաւարն . ⁝ . հերետիկոս աչերս կը վկայեն գոյութիւնը, անհաւատ սիրտս ջերմեռանդութեամբ կ'զգայ գոյութիւնը, սկեպտիկ միտքս այլ եւս համոզուած է. գոյութիւն մ'է խաւարն, կ'աղաղակէ բարձրագոչ. գոյութիւն մ'է մռայլն աղջամղջային, գիշերն սեւադէմ։

Խաւարն գերիշխան, վանելով իւր առջեւ պարտուած արեւն, որ վերջին բեկբեկումներն արձակելով Գատըգիւղի ապակեաց վրայ, կ'երթայ մխըրճիլ խորերը, տալով ազատ ասպարէզ անհեղակուռ աղջամղջին, տիրելու ծով ու ցամաքի, լեռ ու ծործորի, բառնալու մեր աչերէ տեսնելու աւաղելի կարողութիւնն աններդաշնակ ու աննպատակ հողակոյտի մը վրայ թաւալող արկած ու պատահար, վիշտ ու աղէտ։

Լոյս է խաւարն, արեգական ոսկեշող ճառագայթքն՝ խաբուսիկ, . . չլացած են բիբերն լուսաբորբ տարափէն, հպատակ բնական օրինաց, տեսնել ուղիղ ինչ որ խոտոր է, թիւրն՝ ճշմարիտ, չարն՝ բարի, վիշտն՝ հաճոյք, աղէտն՝ բաղդ, երջանկութիւն։

Ցաղթ իրանն սփռած է խոնաւ ու նամէտ անյատակ ովկիանու վրայ, որոյ խուլ մռնչիւնը կոհակներու

---

(1) Հալքի կղզին։

սեւ մթութեան մէջէն կ'անցնի եւ կուգայ սոսկմամբ մեր լսելեաց ։ Խաւարն, իւր անծիր ծոցոյն մէջ, կը թողու սուրալ եւ չառաչել մռնչող հողմին, բաղխելով ցրտաքիրտն ճակատիս, որպէս փրփրերախ ալիքներ փշրին լերկ ու կոշկոճեալ ժայռից դէմ ։

Պատսպարեալ հինաւուրց բոլորչի աղօրիքի որմին տակ, աչերս դէպ ի ծովն ալէխռով, դիտեմ յոգնատխուր հոգւով աղօտ լոյսն պլպլացող, հեռուն, ձըկնորսին նաւակին մէջ, ընկոյզի կեղեւ մը, փայտի կտորիկ մը ալեաց գիրկը խաղալիկ, վտանգեալ վայրկենէ վայրկեան, ըմբոստ թիերու հարուածոց տակ, զոր վարէ կոշտացած կորովի ձեռքն, ի խընդիր պատառ մը հացին ։

Ծո՜վամոյն, ... ո՜հ, նաւավար, մի՛ այդպէս. հէք մանկիկներն հայրիկ կ'աղաղակեն, նօթի են, հացի կարօտ. հացի՛ր, ու՛ր պատառն. կուշտըլկէս լի, սակաւիկ մի կազդուրած, սրբեն ճակտիդ կայլակն. մեղմէ՝ խոնջանքդ մանկամարդ սիրուն աղջիկդ, որ վշտաբաբախ սրտով նստած առկայծեալ կանթեղին մօտ կարէ անշուք զգեստ մը, ... հարսնութեան օժիտն, եւ ի մօրէ որբ, իբր մայր, տակաւին կարօտ մօր, մօր գուրգուրանօք օժտեալ, աղապատանօք քովիկն առած փոքր եղբայրիկներն, հայրիկին վրայ խօսի, նկանակ մը թեւին տակ, այդ օրուան հացիկը ։

Յո՜յսը ... ո՛վ անուշիկ սարսուռ, հրաբոց սառոյց, մխիթարութիւն դառնակսկիծ ։ Յո՜յսը, ... անմեկնելի պատրանք. մեծատունն ու աղքատն, ծերն ու դեռատին, իմաստունն եւ երանելին, փարած անգոյ իրանիդ, լուսովդ կուրացած աչերն, մոլեալ ու

մոլորեալ, թափառաշրջիկ կենաց փշալից ու տատասկաշատ բաւղին մէջ, շաւղին վրայ, կ'ըսպառէ ու կ'ըսպառէ....։

Ժամանակն, իրականութեամբ լի, կը հասնի, կը փշրէ յոյսը, ջարդակոտոր ըրած ակնախտիղ պատրանքդ, թաւալում սին հաճոյից գագաթէն վշտաց ու տառապանաց անդունդը։ Ցիմարացած, մեծատան թեւերն վեր ի վայր շրջած, մեծամիտին թեւերն ջախջախած, երիզակապ աչօքն տակուբին, կենացը թշուառութեան մէջ, այդ մռայլամած, ցեցակեր մատենին մէջ, առ խարխափ, չօշափէ, չոյէ հին հաճոյքներն.... ո՜հ, վէրքեր թարախալից, չարաւոտ,... խոցեր ահռելի։

Ինչո՞ւ խնդանք հնդիկին վրայ, որ իւր սպիտակ ատամները մեզ ցոյց կուտայ խօլական ծիծաղի մը մէջ, հաշիշի գինովութեան ներքեւ զուարթութեամբ թմրած մտօք։ Ցոյցը չէ՞ ոչ-հնդիկին հաշիշն, երանելի բերկրութեամբ մոռցած ներկայն, չլացեալ աչօք, խոլոր հայեացքով, անստոյգ ապագայի մը կեղծաղէմ երեսին նուիրած ժպիտ ու ժմիտ, անգիտակից կուրծքի ետին ցաւերու գոյութեան, անտեղեակ սիրտը պատռելով խռչակէն դուրս ժայթքող հառաչանաց պատճառին,... մատնեալ անզգայ թմրութեան, ոխերիմ թշնամի այս օրուան, վաղուան երկրպագուն, անցելոյն ողբացողն, յուսոյ կալանաւորն, խոհականութեան դատալիքն, երանելի լաւատեսութեան անմիտ ցանցին ողորմելի որսը։

Հնդիկին քրքիջը, ներհուն հայեացք մ'է Նիրվանայի դուռը, յաւերժավայել անդորրութեան անյատակ ովկիանն։ Ահռելի ծաղրն՝ իւր խորին հաւատքն

է հողակոյտի մէկ խորշն, հողակոյտի վրայ։

Փախի՛ր, փախի՛ր վշտէն. հոն է երջանկութիւնն. երջանկութիւնը վշտին բացակայութիւնն է, երջանկութիւնը սրտի մէջ, անդորր կուրծքի ետին, սրտին մէջ ազատ բաբախի գծուած կրքերէ, սիրտ մը զերծ դժոխային թոհ ու բոհէ, հեռի սողուն ու երկրաքարշ ըղձերէ. անապակ սիրտ մը երջանկութիւն է, սիրազգած սիրտն երջանիկ է։

Դարձո՛ւր աչերդ խրճիթին վրայ. տե՛ս երանութիւնն մանկտւոյն. կը կրծէ սիրտը նօթութիւնը, երջանիկ է եւ զուարթ։ Միտքը խաղաղ, հոգին անբիծ, հեռի խառնաղանճ ժխորէն, մօտը քուրիկին, ձկնորսին հէք դուստրն, աղօտ ճրագին տակ, ձեռքը աշխատութեան վրայ, սիրտը փոքրիկներուն վրայ, խօսեցելոյն հետ, կը սպասէ փիլիսոփայի մը տրտմութեամբ, ականջը դուռը, հայրիկին ողջամբ դարձին։

Դարձո՛ւր, ո՛հ, դարձո՛ւր աչերդ քարուկիր շքեղ տունը, հարուստ ու գեղեցիկ օրիորդին վրայ, մութ խաւարին մէջ, առանձինն իւր սենեակը, ձեռքը խուփ խուփ մազերուն մէջ, աչերը մոլեգին, սիրտն ի տրոփ, ջղերն պրկուած, ահռելի խղճի խայթին ներքեւ ընկճած, չնչահատ, մեռելատիպ դժգունութեամբ. վագրային ճանկերով կ'ուզէ փորել, բանալ հողը, մտնել մէջը, թաղուիլ, աներեւակայելի խորերն իջնել, հեռի դիտող թափանցող աչերէ. մտքին մէջ բնաջինջ հայր ու մայր, ընտանիք, կորուսած սէր եւ ամէն ինչ, կատաղօրէն բաղձայ անհետանալ անյայտանալ ինք իւր հոգւոյն, խղճին խա՛յթը։

Ո՛հ, ահռելի եւ փարելի գիշեր, խորհրդոց դիտա-

կին անզոյգ միջոց, մեծ ու փոքր աշխարհաց վրայ ճառագայթող արեւ, թանձր ու խոնաւ քողոյդ մէջ կը տեսնեմ, ա՛յո, ճշմարտութիւնը ... քամահրելով չար եղելութիւնը, խլացած սոճեաց սոյլէն, ահաբեկած ալեաց գոչիւնէն, աներեւութացած այլ եւս մակոյկն ու իր պլպլուն լուսիկն, տաք ճակատով, պաղ քրտինքով, փախչիմ, խոյս տամ առանձնութենէս, հոգետանջ սրտէս, աղէխարշ խորհուրդներէս, չաւառ անձնէս. խեղաւ քայլերով կ'իջնեմ գայթ ի գայթ, արհամարհելով խոչ եւ խութ, կ'իջնեմ բլրոյն գագաթէն, սոսկմանցս կատարէն, պակուցիչ գայթակղութենէս ... կը չչեն ետեւէս, կը ճչեն աջէս, կը սուլեն ձախէս, ձայն մը, հունչ մը ... ոչ ոք. քունը տիրած է ընդհանուր, խաղաղութիւն ամենուրեք, լոյսերն շիջած, լռութիւն կղզեակին մէջ։ Ստուերներ յարաճօճ, ուրուականներ, կը յառաջանան անձայն, անխօս. ձայնս կոկորդիս մէջ կը խեղդուի. չորս հինգ հոգի գլխիկոր կուգան կ'անցնին քովէս, հաւասար քայլերով, հորիզոնաձեւ բեռ մը ուսոց վրայ։ Ձկնորսին լոյսը իւր խրճիթին մէջ կը պլպլայ այժմ մարելու մօտ. ձայն մը չկայ. հոն կը մտնէ փոքրիկ խումբը, բեռն ուսերուն վրայ. ահռելի ճիչ մը ներսէն ...։ Թշո՛ւառ արարած։

Սարսափած կը փախչիմ։

———

## ԳԻՇԵՐ ԲԱՐԻ·

*Փակուեցէք այլ եւս, այրող ճակտիս տակ*
*Խոնջած հէք աչեր, վրկայք անգիտակ*
*Զարեաց անըսկիզբ ւ՚անվերջ աշխարհի,*
*Եւ արդ ըսէք. Գիշեր բարի։*

---

*Ո՛հ, չէ բարի, ո՛չ. մռայլ խաւարն համբուն*
*Մերկանայ սրտի վշտերը թաքուն,*
*Անռեալի երազ մ՚իսկոյն քեզ փարի*
*Այն ինչ կ՚ըսես. Գիշեր բարի։*

---

*Գիշերն է բարի, հեռուն, անդ հեռուն,*
*Ուր չի ծագիր լոյս բնաւ, ծոցը մահուն,*
*Ուր ոչընչութիւնն եւեթ բարբառի....*
*Յայնժամ ըսէք. Գիշե՛ր բարի։*

## ԿՈՅՐՆ

Ծընայ ու մեծցայ, որ քան զօր մեծնամ,
Չըգիտեմ թէ ո՞ւր եկի, ո՞ւր գընամ.
Չըգիտեմ, այո, թէ ի՛նչ կայ իմ չուրջ,
Որոց կը լըսեմ աղմուկ խառնաչունչ.
Կ'իմանամ ձայնիկ ալեաց լըճակին,
Որ կ'երթայ խաղալ հետ իւր եզերքին.
Անդ ձըկունք մանունք ըզնոյն գործեն խաղ,
Չըկունք խատուտիկ յօրինեն նոր տաղ։

Կ'իմանամ. սրտիս կարծես թէ ի մէջ
Նորանոր ըղձանք կուտան ելուէջ.
Անդ խօսին գիլ գիլ վըտակաց լեզուք,
Մեղեդիս ճնչեն ծառոցըն չըչուկք.
Ձայն կուտայ անտառ, պատասխան տայ հով,
Ի բան կը փութայ ծաղիկն անվըրդով։
Այլ թէ այնոքիկ ո՞յք են եւ կամ զի՞նչ,
Չըգիտեմ թէ ի՞նչ իւյեն թէ ոչինչ։

Ամպոց որոտմունք լըսեմ գոռ ի գոռ,
Շանթից՝ կայծականց չառաչս ահաւոր.
Ջիւնից՝ անձրեւաց հոսումըն վէտ վէտ,
Գըտոր հեղեղաց յորձանք հետ ի հետ
Կուգան կ'ողողեն, ու կ'անցնին կ'երթան.
Թըւի թէ կային, թըւի թէ չըկան.
Մարդ, երկինք, երկիր, բոլորն ինձ անտես,
Տեսնելու փափաք չըգընաց սրտէս.
Այսպէս խաւարին գերեալ կամ անյոյս՝
Որպէս ի չիրմի, ուր չի հասնիր լոյս.
Խարխափեմ ի քայլ, վարանիմ յերեր,
Աշխարհ օր ունի, իսկ իմս է գիշեր։

Բաբէ՛, իմ ծընած օրէս մինչ այսօր
Ջեկն արշալուսոյն չըտեսի բոսոր.
Չըտեսի լերանց գըլուխ ոսկեզօծ,
Որ ի չող կարմիր ծըփան հոծ ի հոծ.
Երբ հարցի, ըսին — Ունի վարդագեղ
Դէմք, ում կան ի սպաս Թռչնեկաց գեղգեղ. —
Բայց ես ո՛չ մի օր, ոչ ժամ, ոչ վայրկեան
Չըտեսի Նորա երես պատուական։

---

Այգուն ծիծաղկոտ չըտեսի պատկեր,
Ոյր համար կ'ըսեն ջինջ Ներկէ զեթեր.
Մի վըսեմ մատեան կը բանայ կենաց,
Ցորում կ'ընթեռնու զանսահմանն Աստուած.
Կ'ընթեռնու հրճուանք ու սէր անտըխեղծ,
Զոր անդ յաւիտեանք կը պահեն անեղծ։

---

Դեռ չեմ ճանաչեր գոյն արեգական,
Ոչ մարդ ու ծաղիկ, ոչ օրեր գարնան,
Ոչ զերկնից կապոյտ դաշտն անծայրածիր,
Ուր չողան անհուն փառքեր լուսալիր.
Փառքեր՝ զոր Աստուած չարեց մի առ մի
Ի վայել մարդոյ ի կամար երկնի.
Անծանօթ են ինձ այնք առ հասարակ,
Զայնցանէ երբէք դեռ չեղէ գիտակ.
Թէ ի՛նչ ձեւ ու գոյն, չըքե՞ղ կամ տըգեղ,
Զայն ըղձանայի տեսանել չատ հեղ.
Ըսին — Անուքիկ Տեառն են պատկեր. —
Այլ որպիսի՛ ինչ, լաւ չէի գիտեր։

---

Կ'ըսէին Թէ հով եւ ծով, հող ու բոյս
Զանուն Արարչին կարդան յամէն կոյս.
Թէ առ այն ծնկով կան միշտ երկիւղած
Մարդ, լուսին, աստեղք, ու՛ արեւ լուսապանծ.
Մուսա՛յք Անեղին, քընա՛րք Ներդաշնակ,

Որ եղնեն լընուն զհոգւոցն աշխարհք ․
Լընուն առ ոտիւք Հաստչին համայնից
Զաղօթ եւ ըզխունկ ի բուրվառ սրտից ․
Լըսէի, համայնք կը պատմէին զայն ․
Այ՛լ զի չըտեսի , չունիմ ասել բան ։

Գեղեցկին անուն լըսեցի Թէպէտ ,
Որ ըսին — Վարէ ըղմարդն ի յաղէտ — ․
Ըսին Թէ — Առ այն շատ ինչք ու շատ կեանք
Ի ձեռաց մահու չունեցան փրկանք — ․
Ըսին — Շատ քաղաք, շատ ու շատ շէնքեր
Գեղեցկին ի զոհ փոխեցան յաւեր — ։
Այլ սիրտըս հըզգաց բընաւ իղձ մ'առ այն ,
Սրտիս ժամք եկան , անվրդով անցան ․
Ինչպէս որ ծովու ջուրքըն հանդարտիկ
Մանրագիլ խօսին երգօք գեղեցիկ ,
Անդորր ու խաղաղ նըմանօրինակ
Կ'երգէի տենչիւ հոգեձայն նըւագ ․
Իրա՛ւ , չըտեսի , այլ լըւայ միայն ,
Սակայն տիեզերքըն յիս գըտի համայն ․
Ցիս անպարագիր մեծութիւն էին
Տեսի , եւ մի խանդ զեղաւ յիմ հոգին ։

Թողի զաշխարհի նիւթըն, ձեւն ու գոյն ,
Որք էին զաչօքս Թուխ ամպոյ հանգոյն ․
Եւ ես ըզգացման սուր Թեւով յերկինք
Վերացայ , անդ ուր կենացն հայրենիք ․
Անդ առի ապա երգել այն որէն
Ի յաւիտենից յաւիտեանս՝ Որ էն ։

Արսէն Ղ. Մ. Բագրատունի

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ


| | | ԷՋ |
|---|---|---|
| Յ. ԳՈՒՐԳԷՆ | ԱԶԳ | 7 |
| Ա. Մ. Գարագաշեան | Թարգմանութիւն Հինգերորդ դարու | 11 |
| Դ. Յ. Խաչկեան | Միջին դարու աշխարհ | 22 |
| Զապէլ Կ. Տօնէլեան | Քաղաքակրթութիւնը գաւառացի աղջկանց համար | 27 |
| Ե. Տէմիրճիպաշեան | Պատմութիւն | 33 |
| | Միա՞կ | 36 |
| Գ. Վարդանեան | Պատանեկութեան յիշատակներ | 38 |
| Գար. Եպ. Սրուանձտեանց | Ս. Հռիփսիմեանց տօն ի Ս. Էջմիածին | 44 |
| Տօք. Գ. Սեւեան | Կարեւորութիւն լեզուի | 48 |
| Պատրիարք Կ. Պոլսոյ Խորէն Արքեպիս. | Համբերէ չարախօսութեան | 78 |
| | Ո՞ւր կ'ըլլան անկրօն | 81 |
| Նուրիկ Սիմոնեան | Գութը կանանց մէջ | 86 |
| Ռէթէոս Պէրպէրեան | Հին Յունաստանի դերը | 91 |
| | Խաղաղութիւն | 96 |
| Մկրտիչ Կ. Շահնազար | Կինը անկախ | 104 |
| Եզ. Վր. Գայփաճեան | Կուսութիւն | 113 |
| Յովհ. Քհ. Մկրեան | Լեզու եւ Կրօն | 117 |
| Ա. Գ. Փանոսեան | Բաղձանք | 120 |
| Սաթինիկ Մալէզեան | Հայ աղջիկը | 122 |
| Յովհ. Վ. Միսքճեան | Ուղեւորութիւն Անքոնայէ ի Բիւզանդիոն | 128 |
| Մելքիսեդեկ Արքեպ. Մուրատեանց | Ճշմարտութիւն | 133 |
| | Ծովու վրայ | 136 |
| Վհ. Վր. Տ. Մինասեան | Յայտնութիւն | 139 |
| Վահան Գ. Մալէզեան | Փոքր մեծին քով | 145 |
| | Ա՜յս է | 146 |
| | Անճէյիւր | 147 |
| Մարի Գ. Պէյլէրեան | Դպրոցական կեանքէ | 154 |

*Մարիամ Սեմերճեան* Բամբասանք . . . . . . . –
*Ենովք Թէյեան* Անհունապէս փոքրերը . . . . 1
*Մկրտիչ Ճանըրմեան* Տնտեսագիտական . . . . . 1
*Տօք. Յ. Թիրեաքեան* Լեզուաքննական . . . . . 1
*Եւփիմէ Աւետիսեան* Երաժշտութիւն . . . . . . 21
*Եւփիմէ Օտեան*
Կնոջ սիրտը . . . . . . . 21
Ընթերցումը մեր վարժարանաց մէջ 21
*Տօք. Տ. Փէշտիմալճեան* Սփոփանք գիտութեան . . . . 21
*Զարուհի Ա. Սէֆէրեան*
Առ նուազն երջանիկ . . . 22
Առ շոգենաւն . . . . . . . 22
*Յակոբ Ոսկեան*
Աջ ու ձախը . . . . . . . 22
Ուղերձք . . . . . . . . 23
Նկարագիրք . . . . . . . 23
*Խորիկ Ֆրէնկեան* Ժպիտը . . . . . . . . 23
*Մաղ. Վ. Տէրունեան* Սփոփանք կրօնի . . . . . 23
*Մկրտիչ Աճէմեան*
Նոր սերնդեան աշխարհաբարը . 24
Արթնցի՛ր . . . . . . . . 24
Առ անհաւատն . . . . . . 24
*Միհրան Մօզեան* Քոյերս . . . . . . . . 24
*Կ. Մ. Իւթիւճեան* Լեզուի հեղինակն ու գրագէտն . 26
*Գասպար Նեմցէ* Մ. Անէմեան . . . . . . . 26
*Ս. Յակոբեան* Մի քանի խօսք ախտային ժառանգման վրայ . . . . . . . 279
*Մաքրուհի Ֆրէնկեան*
Տաղկեփնջին մէջ օձը . . . . 300
Սեւ ամպեր . . . . . . . 302
Երկու խօսք Ֆիմիի վրայ . . . 303
*Ա. Համբարձումեան* Հութուրլումիլոս բլրոյն կատարը . 310
*Ծ. Ֆէլէկեան* Կոյրն . . . . . . . . . 316



# ՎՐԻՊԱԿՔ

| Էջ. | Տող. | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 12. | 9 | արդարեւ չեն խոտելիըստ | արդարեւ չեն խոտելի ըստ |
| 22. | 17 | Տերինտիանոս | Տերենտիանոս |
| 41. | 15 | երեւայական | երեւակայական |
| 45. | 3 | բուրեցան | բուրեցաւ |
| 64. | 9 | Պճրուհի | Պչրուհի |
| 96. | 17 | արդի | որտի |
| 140. | 2 | զիտեր | գիտէր |
| 159. | 23 | աղջիկը | աղջիկ |
| 244. | 10 | զորգեան | վորդեան |
| 267. | 10 | շապոխ | շապախ |
| 281. | 10 | դեղաբանական | ցեղաբանական |
| 285. | 22 | չղախտութիւն | չղագարութիւն |
| 285. | 23 | համապատխանող | համապատասխանել |
| 285. | 24 | Թուած | ձեւուած |
| 291. | 22 | անհեթեթ եւ | եւ անհեթեթ |
| 299. | 3 | ծիւրախտին հետ | ծիւրախտին |